ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 11 1973

ԼԵՎՈՆ ԽԱՉԻԿՅԱՆ

# ԱՐՏԱԶԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԾՈՐԾՈՐԻ ԴՊՐՈՑԸ

*Պատմական Հայաստանի Վասպուրական նահանգի Արտազ գավառը, որ հնում կոչվել է Շավարշավան գավառ, իսկ միջնադարում՝ Մակու կամ Առաքելոց երկիր, կարևոր դեր է կատարել հայոց տնտեսական, քաղաքական և եկեղեցական պատմության մեջ։ Հնագույն ժամանակներից ի վեր այդ շրջանով է անցել Փոքր Ասիան Հայաստանի, Ատրպատականի և Իրանի հետ շաղկապող մայրուղին. Արշակ Բ արքան այստեղ է կառուցել Արշակավան քաղաքը, փորձելով այն դարձնել թագավորական իշխանության հենարանը՝ կենտրոնախույս ուժերի դեմ մղած իր պայքարում. այստեղ է գտնվում Ավարայրի դաշտն ու Տղմուտ գետը, տեղանուններ, որ հավետ կենդանի են հայ ժողովրդի հիշողության մեջ՝ շաղկապված լինելով 451 թվականին Պարսից գերազանց ուժերի դեմ հայրենիքի ազատության համար մարտնչած հերոսների փառքին։ Նույն այս բնաշխարհի հետ են աղերսվում նաև հայ եկեղեցու առաքելական սկզբնավորության մասին հյուսված հնագույն ավանդությունները և այլն։*

*Չնայած վերոհիշյալ հանգամանքներին, Արտազի պատմությունը հատուկ ուսումնասիրության նյութ չի դարձել, առաջին հերթին պատմական սկզբնաղբյուրների աղքատիկ լինելու հետևանքով։*

*XIII դարի կեսերին ճոխացված ու ամբողջացված վկայաբանական երկերի մեջ Արտազի մասին առկա տվյալներից կարելի է հետևցնել, որ այդ գավառը մեր թվարկության առաջին դարերին պատկանել է Արշակունիներին, մաս կազմելով արքունի տան՝ Ոստանի։ Մի այլ վարկածով այն եղել է Ամատունյաց նախարարների բնօրրանը[1]։ Թերևս ի նպաստ այս կարծիքի Թովմա Արծրունի պատմիչը վկայում է, որ IX դարի վերջերին Ամատունյաց տան եպիսկոպոս Գրիգորը իր աթոռը փոխադրել է Արտազ գավառի այն վայրը, ուր Թադեոս առաքյալի գերեզմանն է նշվել. «Նստէր ի հանգստի սրբոյն Թադէոսի առաքելոյ յԱրտազական գաւառի»[2]։*

*Այլ տեղեկություններ չկան, ուստի սկզբնաղբյուրները հնարավորություն չեն ընձեռում հետևելու Հայոց հնամենի այս բնաշխարհի կապակցված պատմությանը. ի՞նչ անցուդարձեր են տեղի ունեցել այստեղ, ո՞վ է իշխել, ո՞ւմ ենթարկվել և այլն։*

---

1 *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПб. 1908, էջ 304, 321։

2 Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 259։

*Այսպես՝ մինչև 1247 թվականը, երբ Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի (1221—1267) հատուկ կոնդակով Թադեոս առաքյալի անվամբ սրբագործված այս վայրը դառնում է Հայոց եկեղեցու նորաստեղծ մի թեմի կենտրոն, Առաքելոց աթոռի առաջնորդությունը ժառանգած գերդաստանի հոգևոր և աշխարհիկ գործիչներին հաջողվում է Արտազի շրջանը դարձնել իրենց տիրույթը. այսպիսով, դարավոր ընդմիջումից հետո, այստեղ վերահաստատվում է հայկական իշխանությունը, որ գոյատևում է շուրջ մեկուկես հարյուրամյակ (մինչև 1426 թվականը), զգալի դեր կատարելով օտար լծի տակ կեղեքվող ժողովրդի քաղաքական ու մշակութային կյանքում:*

*Մեր այս հոդվածով փորձելու ենք համախմբել մեզ մատչելի ցաքուցրիվ տվյալները, որոնք նպաստում են մոնղոլական տիրապետության ծանր տարիներին ստեղծված հայկական այս իշխանության պատմությունն ուսումնասիրելու գործին: Մեր նպատակի իրագործման ճանապարհին հաղթահարվելու են դժվարություններ, կապված ինչպես անհրաժեշտ նյութի պակասի, այնպես էլ ժամանակաշրջանի քաղաքական պայմաններին առնչվող մի շարք հարցերի ոչ բավարար մշակված լինելու հետ: Ըստ այդմ հարկադրված ենք եղել երբեմն բուն նյութից զգալի շեղումներ կատարել՝ քննարկվող ժամանակաշրջանի պատմության կնճռոտ հարցերը լուսաբանելու նպատակով:*

*Շարադրանքը բաժանել ենք երկու մասի՝ առաջինը նվիրելով Արտազի հայկական իշխանության պատմությանը, երկրորդը՝ նրա մշակութային կենտրոն Ծործորի վանքին:*

## I

## ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐՏԱԶԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱԿՆԱՐԿ
## (XIII—XV դարեր)

*1.* **Հայ-մոնղոլական հարաբերությունները XIII դարի կեսերին.**—*Երբ մոնղոլներն սկսեցին իրենց աշխարհավեր արշավանքները և քայլ առ քայլ առաջ շարժվելով նվաճեցին Միջին Ասիայի, Ռուսաստանի ու Մերձավոր Արևելքի բարեբեր երկրամասերը, նրանց զավթումների և առաջխաղացման քաղաքական դրդապատճառների մասին ծայր առան ու սփռվեցին անհեթեթ, մտացածին լուրեր: Ասում էին, որ իբր այս նոր աշխարհակալները «մոգք են և քրիստոնեայք հաւատով, և նշանագործք. և եկեալ են ի վրէժխնդրութիւն քրիստոնէից, որ ի բռնութենէն տաճկաց: Եւ ասէին, թէ ունին եկեղեցի վրանեայ և խաչ սքանչելագործ» և այլն*[3]*:*

*Մահմեդական իշխողների բռնություններին ենթակա քրիստոնյա ժողովուրդների լայն շրջաններում, ինչպես նաև արևմտաեվրոպական մի շարք երկրներում, ուր խաչակրաց նոր արշավանքների ծրագրեր էին մշակվում, մոնղոլների մասին այս «սուտ համբավը» (Կ. Գանձակեցի) պարարտ հող գտնելով՝ տարածվում էր անարգել: Մոնղոլներին համարում էին այն ժողովուրդը, որոնց թագավոր-մոգերը երկնառաք պատգամով Արևելքից Բեթղե-*

---

3 Կիրակոս Գանձակեցի, *Պատմություն Հայոց, աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 202:*

հեմ էին եկել նորածին աստվածորդուն՝ Հիսուս Քրիստոսին երկրպագելու[4]: Կրկին շրջանառության մեջ էր դրվել մեկդարյա հնություն ունեցող լեգենդը Հեռավոր արևելքում Հովհաննես երեցի կողմից հիմնադրված քրիստոնյա հզոր պետության մասին: Ինչպես իրավացիորեն նշել են ուսումնասիրողները, այս լեգենդի հիմքում ընկած էր այն իրողությունը, որ սարքի նեստորականների ծավալուն միսիոներական գործունեությունը շոշափելի արդյունք էր տվել կենտրոնական Ասիայում ստեղծված Կարակիտայների պետության (Բալասագուն մայրաքաղաքով) սահմաններում: Այս նորելուկ պետության հիմնադիր Ելույ Դաշին (մհ. 1143 թ.) հենվում էր նեստորականների վրա, իսկ նրա որդին, որ քրիստոնեական Իլյա անունն էր ստացել, թագավորելով 1151—1161 թթ., կարողացավ պահպանել իր հոր ստեղծած ընդարձակածավալ պետության քաղաքական կշիռն ու հեղինակությունը. հայր և որդի այս գուրխանների գործունեության շուրջ արևմտյան երկրներում տարածված լուրերի հիման վրա հյուսվեցին Հեռավոր արևելքում գոյություն ունեցող քրիստոնեական մեծ մի պետության մասին շրջանառության մեջ դրված առասպելները[5]:

Անհրաժեշտ է այստեղ ավելացնել, որ հեռավոր արևելյան այդ երկրամասերում սիրիացի նեստորականների հետ միասին, մանավանդ XIII դարի կեսերին, եռանդուն գործունեություն էին ծավալել նաև հայոց եկեղեցու պաշտոնյաները, որոնց դերը ստվերի տակ է մնացել: Մոնղոլ տիրակալների արքունիքներում հայ միսիոներների և քաղաքական գործիչների կատարած դերը բացահայտելու համար հատուկ ու մանրակրկիտ ուսումնասիրություն պետք է կատարել, որ դուրս է մեր նպատակներից: Հարկ է նշել, սակայն, որ XIII դարի 40—50-ական թվականներին, երբ մոնղոլական հորդաների հետագա արշավանքների ուղիներն էին կանխորոշվում, հատկապես աշխույժ գործունեություն ծավալեցին հայ դիվանագետներն ու քարոզիչները, անպարտելի համարվող նոր աշխարհակալների զորությունը հայ ժողովրդի, մասնավորապես Կիլիկյան հայկական թագավորության առջև ծառացած քաղաքական խնդիրներին ի նպաստ օգտագործելու հույսով:

Գույուկ խանի (1240—1248) մահվանից հետո բովանդակ կայսրության փաստական տիրակալ դարձած Բաթու խանի մերձավոր խորհրդականների շարքում կային փորձառու հայ գործիչներ. թարգմանի պաշտոն վարող և այլ ծառայություններ կատարող այդ հայերը առիթ չէին կորցնում սրելու մոն-

---

[4] Մեծահամբավ հայ մանրանկարիչ Թորոս Ռոսլինը, Կոստանդին կաթողիկոսի պատվերով 1260 թ. Հռոմկլայում նկարազարդած իր ավետարանի «Ծնունդ տեառն» տերունական նկարում, Քրիստոսին երկրպագող և նվերներ մատուցող երեք մոգերի կողքին նկարել է հինգ այլ կարմրագգեստ ու մոնղոլատիպ դեմքեր, օժտելով նրանց «թաթարն եկեկ այսաւր» (այսօր եկավ թաթարը) բացատրականով (Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի մատենադարան, ձեռ. № 251, էջ 14բ): Սրանով մեր մանրանկարիչը, խախտելով սուրբ գրքի պատկերագրության ավանդական ձևերը, քաղաքական երանգ է տվել կաթողիկոսի պատվերով նկարազարդվող փառաշուք այդ ավետարանին: Մոնղոլներին դասելով Քրիստոսի ավետարանով սրբագործված ժողովուրդների շարքը, նա ընդառաջել է նոր այդ աշխարհակալների հետ համագործակցության և բարեկամության դաշինք կնքած Կիլիկյան հայկական թագավորության իշխող շերտերի նկրտումներին:

[5] *Л. Н. Гумилев.* Поиски вымышленного царства (легенда о „государстве пресвитера Иоанна"), М., 1970, էջ 128 և հետ.:

ղոլների և մահմեդական աշխարհի հակամարտությունները[6]: Բաթուի ժառանգ Սարթախին նույնպես շրջապատում էին «հայ հոգևորականներ, որոնք գիտեին թյուրքերեն և արաբերեն»[7]: Սրանց մասին տեղեկություններ կան նաև հայկական աղբյուրներում. Կ. Գանձակեցին, օրինակ, հայտնում է, որ Բաթու խանի մոտ գտնվում էին բազմաթիվ հայ «վարդապետք և եպիսկոպոսունք և երիցունք», որոնցից Մարկոս վարդապետը, Գրիգոր եպիսկոպոսը, Մխիթարը և Բարսեղ քահանան (հատկապես վերջինս)՝ քաղաքական կարևոր դեր էին կատարում[8]:

Հեթում թագավորի՝ Մանգու խանի մոտ այցելելուց մի քանի ամիս առաջ Ղարաղորում էր եկել և մեծ խանի հորդայում բարձր դիրք գրավել Երուսաղեմի սուրբ Հակոբյանց վանքի կամ Պաղեստինի մի այլ վանական հաստատության միաբան Սարգիս ճգնավորը: Այս խորագետ ու ճարպիկ գործիչը աստվածաբանական գիտելիքներ չունեցող ու հազիվ գրագետ մեկը լինելով, խոսում էր արևելյան ու եվրոպական մի շարք լեզուներով: Մեծ խանի վրանից ոչ հեռու նա կանգնեցրել էր խաչակիր դրոշով մի վրան-մատուռ, զարդարել այն գեղեցիկ սպասներով և խանի ու նրա մերձավորների շրջանում անարգել քարոզում էր քրիստոնեություն: Եթե մեծ խանը քրիստոնեություն ընդունի, համոզում էր նա, ողջ աշխարհը, նաև ֆրանկները՝ պապի գլխավորությամբ, կենթարկվեն նրան, ընդունելով մոնղոլների գերիշխանությունը[9]:

Սարգիս ճգնավորը պարարտ հող նախապատրաստեց Կիլիկյան Հայաստանի դաշնակից Հեթում թագավորի համար, որը հրավիրված էր Ղարաղորում, բանակցելու մեծ խանի հետ:

Հեթումը բարեկամական կապերի մեջ էր Ֆրանսիայի թագավոր Լյուդովիկոս Թ-ի հետ, որն այդ ժամանակ գտնվում էր Սիրիայում, պատերազմելով էյուբյանների դեմ: Քրիստոնյա այս դաշնակիցները, անտարակույս, միասնական ծրագիր էին մշակել մոնղոլների հետ բանակցություններ վարելու նախօրեին: 1254 թ. գարնանը դուրս գալով Սիս մայրաքաղաքից ու ծպտյալ անցնելով Իկոնիայի սուլթանության պատկանող շրջաններով, Հեթումը հասավ Հայաստան և կանգ առավ Արագածոտնի տեր Քուրդ Վաչուտյանի իշխանանիստ Վարդենիս գյուղում: Այստեղ նա տեսակցություն ունեցավ մի շարք հայ իշխանների ու եկեղեցական բարձրաստիճան գործիչների հետ: Վարդենիս եկավ նաև Հակոբ վարդապետը, որ ուղարկվել էր Տրապիզոնի կայսեր մոտ,

---

6 „Путешествия в восточные страны Плано Карпини и Рубрука", редакция, вступительная статья и примечания Н. П. Шастиной, М., 1957, էջ 136:

7 Նույն տեղում, էջ 113:

8 Կ. Գանձակեցի, էջ 366:

9 „Путешествия в восточные страны", էջ 138: Այս գործչի մասին մանրամասն տեղեկություններ գրանցած Ռուբրուկը ամենուրեք նրան կոչում է «հայ կրոնավոր», մի քանի անգամ հայտնում, որ նա եկել է Երուսաղեմի սուրբ երկրից և վերադառնալու է իր եկած վայրը՝ «Սուրբ Հակոբ», այսինքն Երուսաղեմի Հայոց գլխավոր վանքը (և ո՛չ Իսպանիայի Հյուսիս-արևմտյան ծայրամասում գտնվող Ս. Հակոբ Կոմպոստելլա վանքի շրջանը, ինչպես ենթադրել է անգիտությամբ Ռուբրուկի ռուսերեն թարգմանչուհի-ծանոթագրողը): Չնայած այս բոլորին, որոշ ուսումնասիրողներ, հավատ ընծայելով Ռուբրուկի «Ուղեգրության» հրապարակողներից մեկի մտցրած գլխակարգությանը և խորագրերին (32-րդ գլուխն, օրինակ, խորագրված է այսպես. «Քրիստոնեական մատուռի և Սարգիս անունով նեստորական կեղծ վանականի հետ հանդիպելու մասին»), այս նշանավոր հայ գործչին նեստորական աղանդի են համարել, արհամարհելով Ռուբրուկի տասնյակ պարզ ու մեկին ցուցմունքները Սարգսի հայ լինելու մասին:

դավանաբանական և քաղաքական հարցերի շուրջ բանակցելու հանձնարարությամբ։ Անհրաժեշտ նախապատրաստությունները ավարտելով, թագավորն անցավ Բաթուի և Սարթախի մոտ, որոնք հաստատվել էին Կասպից ծովից հյուսիս՝ Վոլգա գետի ափերին։ Այստեղից մեկնեց Ղարաղորում՝ Մանգու մեծ խանի արքունիքը, ուր մնաց 50 օր և, հաջողությամբ ավարտելով իր առաքելությունը, վերադարձի ուղին բռնեց։ Հեթումին առաջնորդեցին այնպիսի ճանապարհով, որ նա տեսակցություն ունենա Մանգու խանի եղբայր Հուլաղուի հետ։ Իլխանության ապագա հիմնադիրը իր հորդայով շարժվում էր արևմուտք՝ ստանձնելու նվաճված Իրանի և Անդրկովկասի կառավարչությունը, նոր նվաճումներ կատարելու Մերձավոր արևելքում և Փոքր Ասիայում։

Հեթումի բանակցությունները պսակվեցին հաջողությամբ. այդ մասին մանրամասն տեղեկություններ է գրանցել նրա եղբորորդի Հեթում պատմիչը՝ 1307 թ. ֆրանսերեն լեզվով թելադրած իր «Պատմության» էջերում (պահպանվել է ֆրանսերեն ու լատիներեն խմբագրություններով ու բազմիցս հրատարակվել է Եվրոպայում)։ Ուսումնասիրողները իրավամբ նշել են, որ Հեթում պատմիչը իր երկը ստեղծելով 1254 թ. բանակցություններից կես դար հետո, ժամանակի պահանջներից ելնելով, կարող է չափազանցրած լինել հայ-մոնղոլական բանակցությունների արդյունքը, իր թագավոր հորեղբորը քրիստոնյա աշխարհին ներկայացնելով որպես մոնղոլների ահռելի ռազմական ուժը ի նպաստ խաչակիր պետությունների օգտագործելու վաղեմի ծրագրերի իրականացման գծով մեծ հաջողություններ արձանագրած քաղաքական գործիչ։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, քննաբար ու զգուշորեն պետք է օգտագործել Հեթումի «Պատմության» մեջ ամբարված արժեքավոր տվյալները։ Սակայն բավարար հիմքեր չկան մեր պատմիչին անարժանահավատ որակելու, ինչպես հակված են որոշ ուսումնասիրողներ[10]։ Պետք չէ մոռանալ մանավանդ այն հանգամանքը, որ արքայազարմ պատմիչն իր տեղեկությունները քաղել է իրադարձությունների գլխավոր դերակատար Հեթում թագավորից[11]։

Արդ, ի մի բերելով Հեթում պատմիչի և այլ սկզբնաղբյուրների տվյալները, կիլիկյան հայ թագավորի և Մանգու մեծ խանի բանակցությունների կարևոր արդյունքները կարելի է ամփոփել հետևյալ վեց կետերով.

1. Մոնղոլները համաձայն են քրիստոնյա դառնալ, սակայն այդ պետք է կատարվի յուրաքանչյուրի բարի կամքով, «քանի որ հավատքը բռնադատություն չի հանդուրժում»։

---

10 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք առաջին, Երևան, 1957, էջ 174—175։

11 Ա. Գալստյանը «Հեթումի «Պատմութիւն թաթարաց» գրքի բնութագրման հարցի շուրջ» հոդվածում (Տեղեկագիր, 1958, № 9, էջ 63—72) փորձում է հաստատել, որ Հեթում պատմիչի գրանցած տեղեկությունների սկզբնաղբյուրը Սմբատ սպարապետն է, որն, իբր, ընկերակցել է իր թագավոր եղբորը՝ նրա Ղարաղորում կատարած ճանապարհորդության ընթացքում և այլն։ Այս հայտարարությունները անհիմն են ու անընդունելի։ Տեղին է, սակայն, նշել, որ Ա. Գալստյանը հայ-մոնղոլական քաղաքական կապերի ուսումնասիրության գծով զգալի աշխատանք է կատարել, պարզել է շատ թյուրիմացություններ ու ճիշտ գնահատել 1254 թ. բանակցությունների արդյունքը։ Տե՛ս նրա «Մոնղոլական շրջանի հայ դիվանագիտության պատմությունից» աշխատությունը (Լենինական, 1945) և «Հայ-մոնղոլական առաջին բանակցությունները» հոդվածը («Պատմա-բանասիրական հանդես», 1964, № 1, էջ 91—106)։

2. Քրիստոնյաների և մոնղոլների միջև կայուն խաղաղություն և հարատև բարեկամություն կլինի, եթե քրիստոնյաները չխախտեն այն:

3. Քրիստոնեական բոլոր եկեղեցիներն ու եկեղեցու պաշտոնյաները ազատ են լինելու ամեն տեսակ հարկերից:

4. Մեծ խանի կամ նրա եղբայր Հուլաղուի գլխավորությամբ մոնղոլներն ազատագրելու են քրիստոնյաների սուրբ երկիրը՝ Պաղեստինը:

5. Բաղդադը պետք է գրավվի և խալիֆայությունը վերացվի:

6. Բոլոր այն շրջանները, որ բռնագրավել են Կիլիկյան թագավորությունից սելջուկները կամ այլ թշնամիներ՝ պետք է վերադարձվեն: Կիլիկիային են կցվելու նաև այն տարածությունները, որոնք կնվաճի Հայոց թագավորը մահմեդականների դեմ մղվելիք պատերազմների ընթացքում[12]:

Այս կետերի մեջ անհավատալի ոչինչ չկա: Մոնղոլ ավագանու ուժեղ մի խմբակցություն իրոք հակված էր քրիստոնեությունը պետական կրոն ընդունելու. մի շարք նշանավոր պետական գործիչներ, եթե չէին էլ դարձել քրիստոնյա, ոչ միայն չէին հերքում այդ մասին տարածվող լուրերը, այլ իրենք էին նպաստում դրանց շրջապտույտին[13]: Այդ հանգամանքը նպաստավոր դիրք էր ապահովում նրանց համար ինչպես Մերձավոր արևելքում, այնպես էլ եվրոպական մայր-ցամաքում նոր նվաճումներ ձեռնարկելու նախօրեին:

Քրիստոնեական վանքերի ու եկեղեցիների և, ընդհանրապես, բոլոր դավանանքների սրբատեղիների ու պաշտոնեության նկատմամբ մոնղոլները հովանավորող քաղաքականություն էին որդեգրել մինչև Մանգու խանի և Հեթումի բանակցությունները[14]: Ուստի ճշմարտացի ու ստույգ պետք է համարել Հեթում պատմիչի և ժամանակակից մյուս հեղինակների հավաստիացումն այն մասին, որ եկեղեցին ու կղերականությունը ապահարկ է ճանաչվել Մանգու խանի կողմից. «Ետ և գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս»,—գրել է Հեթում թագավորի վերադարձին Վարդենիս գյուղում նրա հետ տեսակցած ու նրա զրույցներին ունկնդիր դարձած Կիրակոս պատմագիրը[15]:

---

12 „Recueil des historiens des Croisades. Documents armeniens“, t. II, էջ 164—165: Հայ-մոնղոլական բանակցությունների արդյունքի մասին հատվածների ռուսերեն թարգմանությունը տե՛ս Г. Г. Микаелян, История киликийского армянского государства, Ереван, 1952, էջ 310—312:

13 1240-ական թվականների վերջերին, օրինակ, Կիպրոսում գտնվող Լյուդովիկոս IX թագավորի մոտ եկան մոնղոլ դեսպաններ՝ հայտնելով, թե մեծ խանը քրիստոնեություն է ընդունել ու մեծապես համակրում է քրիստոնյաներին (Г. Микаелян, նշվ. աշխ., էջ 314): Բաթու խանի Սարթախ որդու քրիստոնյա լինելու մասին լուրեր էին շրջում ամենուրեք. «Մնաւ քրիստոնեայ դայեկօք, և ի չափ հասեալ հաւատաց ի Քրիստոս և մկրտեցաւ յասորւոցն»—հայտնում է Կ. Գանձակեցին (էջ 358):

14 Ասորի մեծանուն վաճառական Ռաբան-Աթան, օրինակ, բազմաթիվ եկեղեցիներ էր կառուցել մոնղոլական տիրապետության տակ գտնվող այնպիսի վայրերում, ուր մինչ այդ «ոչ իշխէին անուանել զՔրիստոս»: Խիստ ուշագրավ են Կ. Գանձակեցու հաղորդած տեղեկությունները Ռուսի Հորդայի հիմնադիր Բաթու խանի և Սարթախի կրոնական հաստատությունների նկատմամբ որդեգրած քաղաքականության մասին. «Սա (Սարթախը),—գրում է Գանձակեցին,— բազում դիւրութիւն արար եկեղեցւոյ և քրիստոնէից, և կամաւ հօր իւրոյ գրեաց գիր ազատութեան քրիստոնէից և եկեղեցեաց, և տարեաց կողմանս սպառնալիս և մահ, եթէ որ հարկ առնու յեկեղեցւոյ, կամ ի նորին պաշտօնէից, զինչ ազգ և իցեն, այլ և ի տաճկաց մզկիթացն և ի նորին սպասաւորաց» (Կ. Գանձակեցի, էջ 358):

15 Կ. Գանձակեցի, էջ 367:

*Հայ-մոնղոլական համաձայնության մյուս նախատեսումները (նախկինում Կիլիկյան թագավորության պատկանող շրջանների վերադարձման, Բաղդադի գրավման, Պաղեստինի ազատագրման մասին) քայլ առ քայլ սկսեցին իրագործվել այն բանից հետո, երբ Հուլաղու խանը հաստատվեց Իրանում և Անդրկովկասում ու ծնկի բերեց հաշիշյաններին։ 1257 թ. Հեթում թագավորի զինական օժանդակությամբ մոնղոլները պարտության մատնեցին Իկոնիայի սուլթանությանը և հասան մինչև Միջերկրական ու Սև ծովերը։ Նույն թվականին սկսվեց նաև մեծ արշավանք դեպի Միջագետք՝ Բաղդադի խալիֆի դեմ. մոնղոլական բանակի կազմում կռվում էին նաև հայ ֆեոդալներ՝ Զաքարիայի, Պռոշ Խաղբակյանի, Սևադա Խաչենցու, Թաղիադին Կյուրիկյանի և այլոց զորախմբերը։ 1258 թ. փետրվարի 4-ին Բաղդադն ընկավ։ 1259 թ. Հուլաղուի հրամանատարությամբ գործող մոնղոլական բանակն արշավեց Ասորիք, ուր իշխում էր էյուբյան մելիք Սալլահեդդին Յուսուֆը։ Հեթում թագավորը միացավ մոնղոլներին։ Հալեպը գրավվեց այդ թվականի վերջերին, ապա հնազանդվեցին Դամասկոսն ու Սիրիական մյուս քաղաքները։*

*Հուլաղուն և Հեթումը պետք է այնուհետև արշավեին Պաղեստին և գրավեին Երուսաղեմը, բայց իր եղբայր Մանգու խանի մահվան լուրն ստանալով խանը ետ դարձավ, Ասորիքում թողնելով իր զորքի մի մասը Քիթբուղայի հրամանատարության ներքո։ Մոնղոլական ցրված ուժերն սկսեցին ծրագրված արշավանքը դեպի Պաղեստին, բայց այլևս անկարող եղան հաջող մարտեր մղել։ Եգիպտոսի սուլթան Կուտուզը (ալ-Մուզաֆֆար Սայֆ ադ-դին Կուտուզ, 1259—1260) պարտության մատնեց Քիթբուղային, վերստին նվաճելով Սիրիան։ Մեծ կորուստներ տվեցին նաև մոնղոլների դաշնակից հայ զորախմբերը[16]։*

*Ինչպես տեսնում ենք քաղաքական դեպքերի թռուցիկ այս թվարկումից, մոնղոլների և Կիլիկյան հայկական թագավորության միջև Հեթումի և Մանգու խանի բանակցություններից հետո, իրոք, մշակվել էր քաղաքական սերտ համագործակցություն։ Փոքր Ասիայում և Մերձավոր Արևելքում նոր նվաճումներ կատարելու իրենց ծրագրերի իրականացման համար մոնղոլները դաշնակիցների պետք ունեին, և մոնղոլական տիրապետության տակ ընկած կամ գերիշխանությունը ճանաչած հայ իշխանների մի մասը, ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ Կիլիկիայում, քաղաքական ու տնտեսական իրենց ակնկալությունները ունենալով, դաշնակցում էին մոնղոլներին։*

*XIII դարի կեսերի քաղաքական կացության համառոտ այս նկարագիրը, ինչպես կտեսնենք ստորև, նպաստելու է Արտազի հայկական իշխանության սկզբնավորման պայմանների ուսումնասիրությանը։ Բուն նյութին անցնելուց առաջ անհրաժեշտ է, սակայն, համառոտ մի ակնարկով անդրադառնալ նաև նույն այս տարիներին Հայոց եկեղեցու առջև ծառացած քաղաքական ու գաղափարական խնդիրներին։*

**2. Հայոց եկեղեցին XIII դարի կեսերին.**— *Կիլիկյան հայկական թագավորությունը ամենասերտ տնտեսական ու քաղաքական կապերի մեջ էր եվրոպական երկրների և Մերձավոր արևելքում ստեղծված խաչակիր իշխանու-*

16 *Այս դեպքերին, սկզբնաղբյուրների վկայակոչմամբ, մանրամասն անդրադարձել է ակադ. Հ. Մանանդյանը (Տե՛ս Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր III, Երևան, 1952, էջ 232—236)։*

թյունների հետ։ Այդ երկրի տնտեսական բարգավաճ վիճակն իսկ առաջին հերթին պայմանավորված էր միջազգային տարանցիկ առևտրով, որի կարևոր հանգուցակետերը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Կիլիկյան նավահանգիստներն էին։ Կիլիկիայի հայ ավատատերերն ու մեծահարուստ վաճառականները, տնտեսական սերտ համագործակցության մեջ լինելով «ֆռանկների» հետ, իրենց նիստուկացով և կենցաղով զգալապես հեռացել էին հայրենական ավանդներից, հագնվում ու պճնվում էին եվրոպացիների նման, խնամիական կապեր հաստատում խաչակիրների հետ՝ իրենց կյանքն ու կենցաղը հարմարեցնելով միջնադարյան Եվրոպայի չափանիշներին։

Կիլիկյան հայկական պետության շահերը եվրոպական երկրների հետ շաղկապած հասարակական շերտերը՝ ազգային դիմահեղման ընթացքի մեջ մտած խոշոր ավատատերերն ու մեծատուն վաճառականները, ընդառաջ գնալով կաթոլիկ եկեղեցու արևելք առաքվող պաշտոնյաների օրավուր ծավալվող քարոզչությանը, պատրաստ էին նաև դավանաբանական զիջումներ կատարելու գնով սերտ միություն ստեղծել հայ և կաթոլիկ եկեղեցիների միջև։ Հռոմկլայում հաստատված Ամենայն հայոց կաթողիկոսությունը XIII դարի կեսերին դեռևս ի զորու էր հակահարված տալու Վատիկանի գործակալներին և պաշտպանելու իր դիրքերը որպես ինքնագլուխ (ավտոկեֆալ) եկեղեցի։

1246 թվականին Հռոմի պապը, հատուկ պատվիրակի միջոցով, մի գրություն էր հղել Հեթում Ա թագավորին, որով Հայոց եկեղեցու դավանանքը հերձվածողական համարելով, կաթոլիկ եկեղեցու գիրկն էր հրավիրում «մոլորյալ» հայերին։ Հռոմի եկեղեցին հիմնադրել է Պետրոս առաքյալը՝ Քրիստոսի սիրեցյալ աշակերտը («վէմն հաւատոյ»), ուստի բոլոր եկեղեցիները պարտավորված են ճանաչելու նրա հաջորդը համարվող պապի գերիշխանությունը. «Հռոմի աթոռն միայն ունի իշխանութիւն ի վերայ երկրի կապելոյ և արձակելոյ, և ծառայութիւն պարտին նմա ամենայն եկեղեցիք»—գրված էր այնտեղ։

Հեթում թագավորը, ինչպես և սպասելի էր, այդ մասին իրազեկ է դարձնում Կոստանդին կաթողիկոս Բարձրբերդցուն և ստանում նրանից մի ուշագրավ պատասխան, որը շարադրվել էր այդ ժամանակ Հռոմկլայում գտնվող Վարդան Արևելցու գործակցությամբ[17]։

---

17 Այդ պատասխան գրության ընդարձակ խորագիրն է. «Թուղթ Կոստանդեայ կաթողիկոսի Հայոց, զոր գրեաց առ Հեթում թագաւորն ի յաստուածապահ դղեկէս՝ ի հայրապետական աթոռոյս Հռոմկլայէս, ի մայրաքաղաքն Սիս. պատասխանի թղթին, որ ի պապէն Հռոմայ բերաւ առ թագաւորն Հայոց Հեթում, ի ձեռն ջիկաթին որ կոչէր Տիմանչ, ի թուին Հայոց ի ՈՂԵ (1246), ի ձեռն արգիւնական վարդապետին Վարդանայ, յարմար իրիս» (Գիրք թղթոց, Թիֆլիս, 1901, էջ 503—509)։

Մ. Օրմանյանը (Ազգապատում, § 1129) այս գրության թվականը առաջարկում է սրբագրել ՈՂԷ (1248)։ Այդ թերևս հաստատվում է պապի վերահիշյալ գրությամբ, որ շարադրված է 1246-ին ու թարգմանված հայերեն 1247-ին։ Ուշագրավ այդ գրությունը «Գիր դաւանութեան հռոմայեցւոց ի Հայս՝ վասն բխման հոգւոյն սրբոյն» խորագրով, պահպանվել է Մաշտոցի անվան մատենադարանի № 248 ձեռագրում։ Բանասիրական հետաքրքրություն է ներկայացնում հատկապես գրության հիշատակարանը, որ տալիս ենք ստորև.

«...Արդ ես ֆրա Տիմանչ սղանոյ, որ եմ ըստ կարգի ֆրա մնուրաց կաթոլիկէ առաքելական աթոռոյն ի Հայք, վկայեմ առաջի ամենակալին աստուծոյ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ դատելոց է զկենդանիս և զմեռեալս, որ կարողութեամբ սուրբ հօրն և պապուն արգելեալ եմ ի ներքս ի բանադրանաց զամենեսեան զայնոսիկ զգրողսն, զկարդացողսն, զունողսն և որք օրի-

«Հնգետասան սխալ և անընդունակ բան» գտնելով պապի գրության մեջ, կաթողիկոսն իր պատասխանով վճռականորեն մերժում է Պետրոս առաքյալի հաջորդի հիմնադրի պահանջները, հայտարարելով, որ Քրիստոսի բոլոր 12 աշակերտները համահավասար պատիվ և իշխանություն են ունեցել։ Այս գրությունը պաշտոնական մի վավերագիր չէ, անշուշտ, այլ հայ եկեղեցու գահակալի մտերմական մի նամակը երիտասարդ թագավորին, սակայն, ինչպես իրավացիորեն նկատել է Մ. Օրմանյանը, «մտերմական գրվածներ ավելի զորավոր են յուրաքանչյուրին ներքին համոզումը իմանալու համար, քան պաշտոնական գրությունները»[18]։

Առաքյալների համապատվության թեզը պաշտպանելով, Հայոց եկեղեցու վարիչները կաթոլիկ եկեղեցու հիմնադիր հռչակված Պետրոս և Պողոս առաքյալների դիմաց պարզում էին երկու այլ առաքյալների՝ Բարթուղիմեոսին և Թադեոսին, որոնք, իբր, քարոզչական իրենց շրջագայություններն ավարտել ու իրենց վախճանը գտել էին Հայաստանի Արտազ գավառում, հիմնաքարը դնելով Հայաստանյայց եկեղեցու։ Այս մասին տակավին V դարում հորինվել էին որոշ զրույցներ, բայց «Հայոց առաքյալների» նահատակության պատմությունները ճոխացվեցին հենց Կոստանդին կաթողիկոսի աթոռակալության այս տարիներին, որոշակի տեղ մատնանշելով նրանց շիրիմների համար։ Ուշագրավ է, որ պաշտոնական գրությունների մեջ, կաթողիկոսական իր տիտղոսից անմիջապես հետո («Ծառայ Քրիստոսի և շնորհօք նորին կաթողիկոս Հայոց»), Բարձրբերդցին շեշտում էր Հայոց եկեղեցու «ընդ իշխանութեամբ գաւազանի սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարթուղիմէոսի» լինելու պարագան։

Եվ ահա, պապի վերոհիշյալ գրության ստացման և պատասխանը պատրաստելու օրերին, Կոստանդին կաթողիկոսը հատուկ մտահոգության առարկա է դարձնում Թադեոս առաքյալի վանքի վերաշինության հարցը, այն դարձնելով Հայաստանյայց եկեղեցու նորաստեղծ մի թեմի կենտրոն, որի հոգևոր իշխանության սահմանները տարածվելու էին շրջակա գավառների վրա, իրենց մեջ առնելով նաև Իրանում և Անդրկովկասում հաստատված մոնղոլ տիրակալների վարչա-քաղաքական կենտրոն Ատրպատականը՝ Մարաղա և Թավրիզ քաղաքներով[19]։

Կոստանդին կաթողիկոսն ու Հեթում թագավորը, վերոհիշյալ նկատառումներից բացի, հաշվի էին առնելու անշուշտ և այն հանգամանքը, որ Կիլիկյան հայկական թագավորության դաշնակից մոնղոլների վարչա-քաղաքական կենտրոնում ստեղծելով եկեղեցական նոր թեմ, իրենց մշտական ներ-

---

նակեն զայս թուխտս դաւանութեան հաւատոյ, որ յառաջմէն մինչև ի վերջն ոչ յաւելցուցանեն և ոչ պակասեցուցանեն, և ոչ փոխեն բնաւ ի բանիցս այսոցիկ. և եթէ որ յանդգնի յիրացս և յառաջ, անել՝ եղիցի ձեռն տեառն ի նա։ Գրեցաւ թուխթս այս ի թուականութեան լատինացւոց յամս որ է ի մարմնանալ տեառն մերոյ ՌՄԽԶ, յամս նոյեմբերի և ի չորրորդ ամի եպիսկոպոսութեան տեառն պապին, որ է չորրորդ Ընիքենտ (իմա՝ Իննովկենտիոս—Լ. Խ.)։ Եւ թարգմանեցաւ ի թուին Հայոց ՈՂԶ (1247), յամս կաթողիկոսութեան Հայոց տեառն Կոստանդեայ և թագաւորին Հեթմոյ և հօր նորին տեառն պարոն Կոստանդնի» (ձեռ. № 248, էջ 196բ)։

18 «Ազգապատում», Բ հատ., Ա գիրք, Պեյրութ, 1960, էջ 1643 (§ 1120)։

19 Հուլաղու խանի (1256—1265) ժամանակ մայրաքաղաքը Մարաղան էր, իսկ Աբաղա խանը (1265—1282) իշխանության կենտրոնը փոխադրեց Թավրիզ (А. А. Али-заде, Социально-экономическая и политическая история Азербайджана XIII—XIV вв., Баку, 1956, էջ 265)։

*կայացուցիչն էին ունենալու այնտեղ՝ հանձինս թեմական առաջնորդ եպիսկոպոսի։*

*Արտազի կամ Առաքելոց երկրի նորաստեղծ թեմի առաջնորդը, ստանձնելով իր պաշտոնը, կամա թե ակամա շփումներ ու բախումներ էր ունենալու հարևան շրջանների, մասնավորապես Սյունիքի ու Վասպուրականի հոգևոր առաջնորդների հետ։ Սրանք, ըստ մեծի մասին լինելով կրոնավորի սքեմ հագած ավատատերեր, գործում էին ի շահ իրենց գերդաստանների, եկեղեցական կալվածատիրության ցուցանակների տակ ապահովելով բռնագրավման վտանգից իրենց կալվածքների մի մասը։ Ի տարբերություն հին ու պատմական անցյալ ունեցող թեմերի իշխանաշուք առաջնորդների, Արտազի եպիսկոպոսը նորաստեղծ իր թեմի դիրքը, հեղինակությունն ու տնտեսական կշիռը բարձրացնելու համար հենվելու էր, հիմնականում, Ամենայն Հայոց կաթողիկոսության և նրան զորավիգ կանգնած Կիլիկյան հայկական թագավորության վրա, հանդիսանալով նրանց մշակած քաղաքականության ջատագովը Մեծ Հայքում։*

**3. Արտազի թեմի հիմնադրումը և Թադեոս առաքյալի վանքի վերաշինումը.**—*Թադեոս առաքյալի անվան եպիսկոպոսանիստ վանքի վերաշինման մասին տեղեկություններ պահպանած կարևոր սկզբնաղբյուրը Կ. Գանձակեցու «Պատմությունն» է։ Նրա վկայությամբ վանքն ավերված է եղել «ի Թուրքաց և ի հինիցն վրաց»[20] շատ ժամանակ առաջ («քանզի յոլով ժամանակս անբնակ էր ի մարդոյ և ամայի»[21]։ Վանքի վերաշինության աշխատանքները ղեկավարել է նշանավոր գիտնական և եկեղեցական գործիչ Հովհաննես Վանականի աշակերտներից Հովսեփ վարդապետը, որն այդ ժամանակ, իր Կիրակոս ու Վարդան դասընկերների հետ միասին, մեծ հեղինակություն վայելող եկեղեցական էր։*

*Կոստանդին կաթողիկոսը 1247 թվականին, հատուկ կոնդակով, որոշեց Թադեոս առաքյալի նորաստեղծ թեմի սահմանները և հորդորեց վանքի վերաշինման նպատակին հատկացնել «ոսկի հոլով»։ Հովսեփ վարդապետը, նյութական ու բարոյական օժանդակություն ստանալով, դիմում է Անապուրակնուփն կոչվող մոնղոլ ցեղապետին, որի գերդաստանի ամառային կայանը գտնվում էր վանքի շրջակայքում, և նրանից թույլտվություն ստանալով վերաշինում է եկեղեցին, կառուցում գավիթ և այլ շինություններ, մեծ միաբանություն ստեղծում («շինեաց զվանսն և ժողովեաց ի նա կրօնաւորս բազումս»)։ Ուշագրավ է Կ. Գանձակեցու և այն խոսքը, որ «զօրքն թաթար ոչ էին թշնամի խաչի և եկեղեցւոյ, այլ և յոյժ պատուէին և ընծայս մատուցանէին, քանզի նախանձ հակառակութեան առ նոսա ոչ գտանիւր»[22]։*

*Ե՞րբ ավարտվեցին շինարարական այս աշխատանքները, ստույգ չգիտենք, կարելի է ենթադրել, որ 50-ական թթ. վերջերին։ Չգիտենք նաև որքան է ապրել Արտազեցի կոչված Հովսեփ վարդապետը և երբ կնքել իր մահկանացուն։ Նրան հաջորդել է Տիրացու եպիսկոպոսը, որ աշակերտել է Վարդան*

---

20 *Վրաց զորքերի այս կողմերը կատարած արշավանքի մասին խոսք կա նաև XIV դ. վրաց անանուն ժամանակագրի մոտ. նրա տվյալներով Շահնշահ և Ավագ Զաքարյանները շուրջ 30 հազար զորքով անցել են Արաքսը և հաջող մարտեր մղել թուրքերի դեմ Վաղարշակերտի և Խլաթի կողմերում։ Հավանաբար մի զորախումբ էլ մոտել է Արտազի շրջան, հալածելով թուրքերին (տե՛ս Վրաց ժամանակագրություն (1207—1318), Երևան, 1971, էջ 91)։*

21 Կ. Գանձակեցի, *էջ 311։*

22 *Նույն տեղում, էջ 312։*

Արևելյան[23]։ Սա պաշտոնի վրա էր արդեն 1285 թվականին, երբ նրա մոտ իջևանեց և հյուրընկալվեց Կիլիկիայի Լևոն Գ թագավորը (1270—1289) Արղուն խանի արքունիքն այցելելու ճանապարհին։ Այս եպիսկոպոսի Տիրացու անունը ենթադրել է տալիս, որ նա մանուկ հասակից ընտրված է եղել ու դաստիարակվել որպես Թադեոս առաքյալի թեմի եպիսկոպոսացու։ Միջին դարերում Հայաստանի եկեղեցական թեմերի ու նշանավոր վանական հաստատությունների առաջնորդական պաշտոնը, գրեթե ամենուրեք, ժառանգական բնույթ էր ստացել և փոխանցվում էր առաջնորդի մերձավոր ազգականներից մեկին (մեծ մասամբ՝ եղբոր որդուն), որը պաշտոնի էր կոչվում իր տարեց հորեղբոր կենդանության օրոք, և փոխարինում նրան՝ մահվանից հետո։ Ամենայն հավանականությամբ այդպես է եղել նաև տվյալ դեպքում, և Հովսեփ Արտազեցուն հաջորդել է Տիրացու եպիսկոպոսը՝ մերձավոր ազգականի հանգամանքով։

Տիրացու եպիսկոպոսը շարունակել է իր նախորդի գործունեությունը Արտազի նորաստեղծ թեմի տնտեսական ու գաղափարական հիմքերն ամրապնդելու, նրա հոգևոր իշխանության տակ գտնվող վանական հաստատությունների շինության և կալվածքներով օժտելու գծով։ 1289 թ. ընդօրինակված մի ավետարանի հիշատակարանում հետաքրքրական տվյալներ են գրանցված այն մասին, որ «ի ձեռն... մեծ գիտապետիս տէր Տիրացուի», «սքանչելի հրաշիւք» հայտնաբերվել են Սուքիասյանց սրբերի նշխարները, շինացվել է Կողբա վանքը՝ վերադարձնելով նախկինում իրեն պատկանած կալվածքները. «Գանձագին արարեալ ազատեաց զբազմամեայ ծառայեալքս յայլազգեաց, և զհնացեալ և զամայացեալ հայրենիքս և զվիճակ, որ յառաջ լեալ էր»[24]։

«Գանձագին արարեալ»—այսինքն հնչյուն դրամ վճարելով էին ընդարձակում իրենց կալվածքները Թադեոս առաքյալի նորաստեղծ թեմի առաջնորդները, ըստ երևույթին նյութական օժանդակություն ստանալով նաև Կիլիկիայի հոգևոր և աշխարհիկ ավատատերերից։

Տիրացու եպիսկոպոսը 1293 թ. շարադրված մի հիշատակարանի մեջ մեծարված է «գերահռչակ և արժանապատիւ եպիսկոպոս» խոսքերով, ասված է, որ նա փայլում է «իբրև զջահ վառեալ ի մէջ գիշերի», լինելով «նաւահանգիստ վտանգելոց և ծարաւելոց, շնորհաւք սուրբ առաքելոյն [Թադէոսի]»[25]։

Այս հիշատակարանն ուշագրավ է իր հարուստ բովանդակությամբ։ Հեղինակը՝ Թորոս Դրազարկցին, ընկերակցությամբ Թովմաս եպիսկոպոսի, եկել

---

23 Տիրացուն 1266 թվականին Խոր-Վիրապում ընդօրինակել է իր ուսուցչի «Սաղմոսաց մեկնությունն»-ը, իրեն կոչելով «անարժան աշակերտ... Նորին (Վարդանայ)»։ (Ա. Տեր-Ավետիսյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր Ջուղայի, Վիեննա, 1970, էջ 551)։

24 Ա. Տեր-Ավետիսյան, էջ 256։

25 Այս հիշատակարանը, որ ձեռագրից անջատ պահվում է Մաշտոցյան Մատենադարանի պատառիկների ֆոնդում (պատառիկ № 919), պոկվել է անցյալում Գողթան գավառի Ս. Թովմա առաքյալի վանքի մի ձեռագրից, որ այժմ պահվում է Լենինգրադի Էրմիտաժում (V 3—835 համարի տակ)։ Հիշատակարանը տպագրվել է բազմիցս. տե՛ս „Сборник материалов для описания местностей и племен Кавказа", выпуск XXIX. Тифлис, 1901, [А. И. Туманов], Арм. древние рукописи монастыря св. Фомы էջ 11, «Ազգագրական հանդես», XII, 1905, Ե. Լալայան, Գողթն գավառ, Ձեռագիրներ, էջ 155—156, Մ. Վ. Մախսուդյան, Նկարագրութիւն և յիշատակարանք ձեռագրաց Ս. Թովմայ առաքելոյ վանուց, «Արարատ», 1911, էջ 223—224, Հ. Ոսկյան, Վասպուրական-Վանի վանքերը, Բ, էջ 470—471 և այլն։

*է Մեծ Հայք, 1292 թ. գրավված ու ավերված Հռոմկլայի փոխարեն մի նոր վայրում կաթողիկոսական աթոռ հաստատելու և նոր գահակալ ընտրելու նպատակով Արևելյան Հայաստանի նշանավոր հոգևոր ու աշխարհիկ տերերին Կիլիկիա հրավիրելու հանձնարարությամբ: Նա հայտնում է, որ Հեթում թագավորը, «բոլոր ուխտին եկեղեցւոյ և իշխանաւք հանդերձ» որոշել է «շնորհել բերդ ամուր և երկիր առատ սուրբ աթոռոյ լուսաւորչին՝ առ ի հաստատել վերստին»: Այսպիսով պարզվում է, որ եգիպտացիների կողմից գերեվարված Ստեփանոս Հռոմկլայեցի կաթողիկոսի մահվանից անմիջապես հետո Կիլիկիայում ժողով է գումարվել կաթողիկոսական աթոռի վերահաստատման օրակարգով:*

*XIII դարի վերջերին ծանր վիճակ էր ստեղծվել Կիլիկյան հայկական թագավորության համար: Հյուսիսից և հարավ-արևմուտքից արշավող թշնամիներն ասպատակում էին երկիրը, գերում ու թալանում. մոնղոլները, որքան հակված մահմեդականության կողմը, այնքան շատ չունեին շարունակելու իրենց վաղեմի բարեկամությունը Կիլիկյան հայ իշխանության հետ. Թուլացած ու միայնակ մնացած երկիրն այլևս անկարող էր տոկալ զորեղ թշնամիների հարձակումներին: Հեթում Բ թագավորը, եվրոպական երկրներից ռազմական օգնություն ստանալու սին հույսեր փայփայելով, կաթոլիկ եկեղեցու գերիշխանությունը պաշտոնապես ընդունելու քաղաքականություն էր վարում: Հենց 1293 թ. նա հոգևոր կոչում էր ընդունել, դառնալով ֆրանցիսկյան միաբանության անդամ՝ Հովհաննես կրոնավոր անունով[26]: Նույն քաղաքականության ջատագով էր նաև կաթողիկոսական գահի թեկնածու Գրիգոր Անավարզեցին, որը հակված էր հրաժարվելու հայ եկեղեցու դարավոր ավանդույթներից, ծառայեցնելու կաթոլիկ եկեղեցու հովվապետին, հավատ ընծայելով խաչակրաց նոր արշավանքներ կազմակերպելու ձրի խոստումներին:*

*Հեթում թագավորն ու իր կուսակիցները պետք ունեին Մեծ Հայքի ամենախոշոր ու հեղինակավոր թեմական առաջնորդների, մասնավորապես Արտազի, Տաթևի, Հաղբատի ու Բջնիի եպիսկոպոսների աջակցությանը՝ իրենց ծրագրերն իրականացնելու ճանապարհին[27]: Նրանց հետ բանակցելու նպա-*

26 *Այս անունն ընտրվել էր ի պատիվ ֆրանցիսկյան միաբանության նշանավոր գործիչ Ջովանի (Հովհաննես) Մոնտեկորվինոյի, որը Կիլիկիայում եղած տարիներին դարձել էր հայոց թագավորի մտերիմ խորհրդատուն* („После Марко Поло, путешествия западных чужеземцев в страны трех Индий“, перевод с латинского и староитальянского языков, введение и примечания Я. М. Света, М., 1968, *էջ 70—71*):

27 *Մ. Չամչյանի (Գ, 37), Ղ. Ալիշանի (Շնորհալի..., 57), Մ. Օրմանյանի (Ազգապատում, § 930) և այլոց կարծիքով 1114 թ. Գրիգոր Վկայասեր կաթողիկոսի կողմից Քեսունի Կարմիր վանքում գումարված ժողովը հաստատել է կարգ, որի համաձայն կաթողիկոսական ընտրությունը վավերական է ճանաչվելու Մեծ Հայքի չորս գլխավոր աթոռների՝ Բջնիի, Հաղբատի, Տաթևի և Արտազի հավանության դեպքում: Այդ տարածված կարծիքը հիմնազուրկ է ու սխալ: 1114 թ. Արտազի աթոռ գոյություն չի ունեցել, իսկ Բջնին, XII դարում հայոց եկեղեցու նվիրապետության առումով, աննշան մի վայր է եղել: Կաթողիկոսական ընտրության վերահիշյալ կարգը, մեծ հավանականությամբ, հաստատվել է հենց 1293 թ. խնդրո առարկա ժողովում, որը գումարվել էր Հռոմկլայի անկումից հետո՝ կաթողիկոսական աթոռի համար նոր նստավայր որոշելու և նոր կաթողիկոսի ընտրությունը նախապատրաստելու նպատակով: Այս թյուրիմացությունը, ըստ երևույթին, ծագել է Գրիգոր Անավարզեցի կաթողիկոսին Գրիգոր Գ. Պահլավունի (Փոքր Վկայասեր) կաթողիկոսի (1113—1166) հետ շփոթելու հետևանքով: (Անավարզեցին ևս,*

տակով էր Հայաստան ուղարկվել Թովմաս եպիսկոպոսի գլխավորած պատվիրակությունը, որը հանձնարարություն էր ստացել, առաջին հերթին, ներկայանալ Արտազի աթոռակալ տեր Տիրացուին[28]։ Թագավորն ու կաթողիկոսացուն, անձամբ ճանաչելով այդ եկեղեցականին, գիտեին հավանաբար, որ նա լատինամետ քաղաքականության համակիրներից է։ Ուշագրավ է և այն փաստը, որ հենց այս տարիներին Հեթում թագավորի պահանջով փորձ է կատարվում վերացնելու Աղթամարի կաթողիկոսության վրա 1114 թ. դրրված բանադրանքը, նաև Վասպուրականի հայ մեծամեծների համակրանքը շահելու մտահոգությամբ[29]։

1295 թ. աշնան ամիսներին մոնղոլական իշխանությունը փոթորկվել էր գահակալական արյունահեղ կռիվներով։ Իշխանությունը գրաված Բայդուի դեմ գահի հավակնորդ Ղազանը՝ Արղուն խանի որդին՝ ուղարկեց իր զորահրամանատար Նովրուզին, որը Նախիջևանում, 1295 թ. հոկտեմբերի 4-ին պարտության մատնեց ու սպանել տվեց Բայդուին[30]։ Նովրուզ ամիրի և Սադրադդին Սահիպ դիվանի նախաձեռնությամբ մոնղոլական զորամասերն սկսեցին անլուր հալածանքներ քրիստոնյա հպատակների նկատմամբ։ Նախիջևանի, Արտազի և Մարաղայի շրջաններում ոչնչացվեցին մեծ թվով եկեղեցիներ և «բազում վիշտս և անհնարին աղետս հասուցին քրիստոնէից ընդ ամենայն տեղիս»[31]։ Բարեբախտաբար այս խժդժությունները երկար չտևեցին. Նովրուզը շուտով, իր մերձավորների հետ միասին, կասկածվելով դավաճանության մեջ՝ մահապատժի ենթարկվեց։ Ղազան խանը, ընդառաջելով իրեն այցի եկած Հեթում Բ թագավորին, հրաման արձակեց դադարեցնել բռնություններն ու ավերածությունները, այդ բանի մեջ մեղադրելով մահվան դատապարտված Նովրուզին։

Արտազի Ս. Թադեի վանքը մեծապես տուժեց Նովրուզի զորքերից. Տիրացու եպիսկոպոսը անասելի տանջանքների ենթարկվեց ու կողոպտվեց։ Ստ. Օրբելյանն այդ մասին գրում է. «Ըմբռնեցին և զեպիսկոպոսն Առաքելոց զտէր Տիրացուն, և ազգի ազգի անարգանօք ձաղեցին, և առին զամենայն ինչս նորա. բայց ի վանքն նորա, որ էր շիրիմ սուրբ առաքելոյն Թադէոսի, բանդեցին զշինուածս տանցն, աւերեցին, կողոպտեցին և բազում կործանեցին»[32]։ Նույն դեպքերի մասին տեղեկություններ է գրանցել նաև մի հիշատակագիր. «Ի թվին ՉԽԶ (1297) էր աշխարհակալ Ղազանն, և եպիսկոպոս Սիւնեաց՝ Ստեփանոս Տարսայճի որդի, և եպիսկոպոս Թադէոսի առաքելոյ՝ Տիրա-

---

որ Գրիգոր Գ-ի նման «վկայասեր» էր, հունական ու լատինական վարքերի թարգմանություններով ճոխացրել է հայկական Հայսմավուրքը)։

28 Հիշատակարանում այդ մասին գրված է. «Եւ մեզ հրամայեալ ի թագաւորէն և ի սուրբ ժողովոյն յառաջագոյն գալ ի սուրբ առաքելոյն Թադէոսի, առ գերահռչակ և արժանապատիւ եպիսկոպոսն տէր Տիրացու, որ էր առաջնորդ սուրբ ուխտիս Թադէոսի առաքելոյ» (Մատենադարան, պատառիկ № 919)։

29 Հեթում թագավորին հասցեագրած իր մտերմական նամակի մեջ Գր. Անավարզեցին գրում է. «Աղթամարն օրհնել տուր» (Կղեմէս Գալանոս, Միաբանութիւն..., Ա, 1690, էջ 439), Մ. Չամչյանը հայտնում է, որ Անավարզեցին «բազում սէր եցոյց յայնմհետէ առ նոյն աթոռ» (Չամչյան, Գ, էջ 289), ուստի պետք է կարծել, որ վասպուրականցիները այդ տարիներին իրոք նպաստել էին Հռոմի եկեղեցուն մերձենալու ծրագրերի իրականացմանը։

30 А. А. Али-заде, նշված աշխ., էջ. 280—282։

31 Ստեփանոս Օրբելեան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 472—473։ «Մանր ժամանակագրություններ», հատ. II, Երևան, 1956, էջ 150։

32 Ստ. Օրբելեան, էջ 473։

ցու, որ բազում նեղութիւնս կրեալ յանօրինաց, յաւերել տանց և շինուածոց վանից ի չարագլխէն Նաւռուզայ»[33]:

Սրանք են Տիրացու եպիսկոպոսի մասին պահպանված ստույգ վկայությունները:

Ս. Թադեի վանքի հարավ-արևմտյան սյան պատվանդանը շիրմաքարի դեր է կատարել նշանավոր մի անձնավորության աճյունի. անցյալ դարավերջին այդ պատվանդանի վրա կարդացվել է «Թվ. ՉԽԷ (այսինքն՝ 1298 թ.) այս է հանգիստ///» եղծված արձանագրությունը[34]: Կարծում ենք, որ այստեղ ամփոփված են հենց Տիրացուի մասունքները, ուստի նա իր մահկանացուն կնքել է Նովրուզի կողմից խոշտանգվելուց ընդամենը 2—3 տարի հետո՝ 1298 թվականին:

Տիրացու եպիսկոպոսին հաջորդել է անվանի եկեղեցական գործիչ, Արտազի հայկական իշխանության փաստական հիմնադիր Զաքարիա եպիսկոպոսը, որ հայտնի է պատմության մեջ Սորձորեցի մականունով: Սրա եռանդուն գործունեության անդրադառնալուց առաջ պետք է պարզել մի թյուրիմացություն:

Հեթում թագավորին ուղղած իր նշանավոր նամակի մեջ, որի գրության տարեթիվը ստույգ որոշված չէ, Գրիգոր Անավարզեցի լատինամոլ կաթողիկոսը հիշատակում է Մեծ Հայքի նշանավոր այն եկեղեցական գործիչներին, որոնց վերջին երեք տարիների ընթացքում տեղյակ է դարձրել (հարկավ՝ իր նվիրակների միջոցով) կաթոլիկ եկեղեցու հետ միաբանելու նպատակով դավանաբանական զիջումներ կատարելու իր ծրագրերի մասին: Նա գրում է. «Եւ յառաջ զայս ասեմք զոր ի դէպ է, որ մեր հայերուն Արևելցւոյ մեծերուն գիրքս գիտացուցել եմք և կեցուցել: Առաջինն Օրպելին. որ է Սիւնեաց արհիեպիսկոպոս, որպէս հոգևոր իշխան գոլով, նոյնպէս և մարմնաւոր, և իւր ընկերացն ցուցաք զգիրքսն և հաստատեցաք այս տարի. և յանցեալ տարին՝ տէր Յոհաննէսի Առաքելոց եպիսկոպոսի. և ի միւս այլ ամին Բջնեցւոյն և Վարագեցեաց»[35]:

Մ. Չամչյանի կարծիքով այս գրությունը շարադրված պետք է լինի 1294 թվականին: Ըստ այդմ այստեղ Առաքելոց եպիսկոպոս կոչված տէր Հովհաննեսը՝ նույնանալու է Տիրացու եպիսկոպոսի հետ[36]: 1294 թվականը, սակայն, անհավանական է, քանի որ թղթի գրության ժամանակ Սյունյաց եպիսկոպոս է հիշվում Հովհաննես Օրբելը՝ 1303 թ. վախճանված Ստեփանոս Օրբելյանի հաջորդը: Ուստի ճիշտ պետք է համարել Մ. Օրմանյանին, որ նա-

33 Երուսաղեմ, ձեռ. № 1428, էջ 168:

34 Խ[աչիկ] վ[արդապետ Դադյան], Համառոտ նկարագիր Շավարշան-Արտազ գավառի Ս. Թադեոս առաքելո վանքի («Արարատ», 1898, էջ 91):

35 «Թուղթ տեառն Գրիգորի կաթողիկոսի, զոր գրեաց առ կրօնաւոր թագաւորն Հեթում, հայր արքային հայոց Լևոնի» խորագրով այս մեծարժեք գրությունն ամբողջապես հրապարակված է Կղեմես Գալանոսի «Միաբանութիւն Հայոց սուրբ եկեղեցւոյն ընդ մեծի սուրբ եկեղեցւոյն Հռովմայ» աշխատության մեջ (տե՛ս առաջին հատոր, Հռոմ, 1650, էջ 441):

36 Բազմաթիվ են օրինակները, երբ որևէ մականուն, հաճախ գործածվելով, բռնել է նշանավոր պատմական դեմքերի անվանց տեղ: Հիշենք թեկուզ Հովհաննես Սարկավագին, որ միջնադարում հայտնի էր առավել Սարկավագ վարդապետ անունով, կամ էլ Հովհաննես Վանականին, որը ճանաչված էր որպես Վանական վարդապետ: Հովհաննես Տիրացու եպիսկոպոսն էլ, վերոհիշյալների պես, կարող էր ավելի ծանոթ լինել իր Տիրացու մականունով:

մակի շարադրման ժամանակը հարմար է գտնում «գոնե մինչև 1304 հետաձգել»[37]։

Այս դեպքում մնում է երկու ենթադրության անել։

Գրիգոր Անավարզեցին իր նամակի մեր կողմից վկայակոչված հատվածում խոսում է Սյունիքի, ինչպես նաև Բջնիի եպիսկոպոսների մասին, որոնցից մեկի միայն անունն է նշում (Օրպել), իսկ մյուսի անունն էլ չի տալիս։ Հայտնի է, որ այդ երկու բարձրաստիճան եկեղեցականներն էլ Հովհաննես են կոչվել[38]։ Այս հանգամանքը ենթադրել է տալիս, որ նամակը շարադրելիս Անավարզեցին, թերևս, շփոթվել է ու գրչի վրիպումով Հովհաննես անունը Բջնիի կամ Սյունիքի եպիսկոպոսներին հատկացնելու փոխարեն, տվել է Առաքելոց աթոռի եպիսկոպոսին։ Բացառված չպետք է համարել և այն վարկածը, որ Տիրացու եպիսկոպոսից հետո ու Զաքարիա Ծործորեցուց առաջ Արտազի եպիսկոպոս է եղել իրոք ոմն Հովհաննես. այդ դեպքում պետք է արձանագրել, որ նա՝ շատ կարճ պաշտոնավարելով՝ շոշափելի հետք չի թողել պատմության մեջ։

4. **Պարոնտեր Զաքարիա Ծործորեցին և իր գերդաստանը**.—*ժամանակակիցների կողմից «էքսարխոս Հայոց» կոչված[39] և գերադրական տիտղոսներով մեծարված[40] Զաքարիա արքեպիսկոպոսը որդին էր պարոն Մանվելի։ Այս իշխանավորի մասին սկզբնաղբյուրները ժլատ են. անտարակույս նա եղել է Տիրացու եպիսկոպոսի մերձավոր ազգականներից մեկը (հավանաբար եղբայրը), և մեծ դեր կատարել Արտազի հայկական իշխանության տնտեսական ու քաղաքական դիրքերն ամրապնդելու գործում։ Սյունյաց մետրոպոլիտ Հովհան Օրբելը Զաքարիային հասցեագրած իր մի նամակում գրում է. «Դու գիտես, որ մեր հարքն ամենքին մի էին լեալ ըստ մարմնոյ բարեկամութեան և հոգևորի»[41]։ Ուշադրավ այս տողերն իրավունք են տալիս ենթադրելու, որ նամակի գրությունից առնվազն մի քանի տասնամյակ առաջ (շուրջ XIII դարի 70—80-ական թվականներին) Առաքելոց աթոռին եպիսկոպոսներ պարգևող գերդաստանը ամրապնդել էր ավատատիրական իր իրավունքներն Արտազի շրջանում, և «ըստ մարմնոյ» ազգակցական կապեր հաստատել Սյունյաց Օրբելյանների հետ։

Պարոն Մանվելը, Զաքարիայից բացի, ունեցել է ևս չորս որդի՝ Պետրոս, Սարգիս, Խութլուբուղա և Արղութ (վերջին անվան վերծանությունը կասկածելի է)։ 1315 թ. Ս. Թադեի վանքում շարադրված մի հիշատակարանում գրիչ Ռստակեսը, որպես Արտազի շրջանի հոգևոր ու աշխարհիկ առաջնորդներ

---

37 Մ. Օրմանյան, § 1207, 1222։

38 Հովհաննես Օրբելի մասին տե՛ս մեր «Սյունյաց Օրբելյանների Բուրթելյան ճյուղը» հոդվածը («Բանբեր Մատենադարանի», № 9, էջ 190), իսկ Բջնիի եպիսկոպոս տեր Հովհաննեսը հիշատակված է 1302 թ. որպես «տէր Յովհաննէս, որ ունէր զվերատեսութիւն այցելական գիտման քահանայականն դասու կատարելապետութեան Այրարատեան նահանգիս, նիստ կայանի ունելով զամուրն Բջնի» («ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երևան, 1950, էջ 5)։

39 Այսպես է կոչված նա Հովհան Օրբելի կողմից։ «"Ἔξαρχος" յոյն եկեղեցւոյ մէջ կը նշանակէր պատիւ մ' ընդ մէջ պատրիարքութեան և մետրապոլտութեան» (Վ. Հացունի, Կարևոր խնդիրներ հայ եկեղեցւոյ պատմութենէն, Վենետիկ, 1927, էջ 309)։

40 Իր կուսակիցները նրան մեծարում են «լուսաւորիչ տանս Արևելեան», «ջահ անշիջանելի ի սուրբ եկեղեցի» և բազմաթիվ նման արտահայտություններով, որոնց կհանդիպենք հետագա էջերում։

41 Այս նամակին անդրադառնալու ենք ստորև։

հիշատակում է և՛ Զաքարիա եպիսկոպոսի, և՛ նրա եղբայր պարոն Պետրոսի անունները՝ այսպես. «...յառաջնորդութեան այժմ նահանգիս և աստուածախնամ Արտազ գաւառիս սուրբ և առաքելաշնորհ արհիական գլխոյն, տիեզերալոյս և աշխարհածաւալ, բարիախորհ և վերադիտող, պարիսպ ամրութեան հանուրց եկեղեցեաց և բերդ հաստատուն քահանայից և ամենայն քրիստոնէից տէր Զաքարիայի, և պարոն եղբաւր նորին Պետրոսի, և զաւակաց սորին»[42]։

Զաքարիա եպիսկոպոսն ու պարոն Պետրոսը, իրենց ձեռքում կենտրոնացրած լինելով Արտազի շրջանի հոգևոր ու աշխարհիկ իշխանությունը[43], եռանդուն գործունեություն են ծավալում իրենց գերդաստանի տնտեսական և քաղաքական դիրքերն ամրապնդելու ուղղությամբ։

Նյութական մեծ միջոցներ ծախսելով, նրանք պաշտպանական կառույցներով ամրապնդում են իրենց գերդաստանի նստավայրը՝ Մակվի բերդը, կարգի են բերում միջազգային նշանակություն ունեցող քարավանային ճանապարհի իրենց իշխանության սահմաններով անցնող հատվածը, կառուցում փառահեղ կամուրջներ (տե՛ս նկար 1) և այլ շինություններ, հիմնադրում վանական նոր հաստատություններ և այլն։ Ժամանակակից հայ և օտարազգի սկզբնաղբյուրներում կան արժեքավոր վկայություններ Զաքարիայի և նրա եղբայրների գործունեության այս կողմը լուսաբանելու համար։

Մակվի անառիկ բերդի դիրքն ու պաշտպանական ամրությունները զարմանք են պատճառել շատերին։ Նշանավոր պատմագիր Համդուլլա Ղազվինին (ծնվ. 1281 թ.), «Նուզհաթ-ուլ-կուլուբ» (Սրտերի վայելք) պատմա-աշխարհագրական աշխատության մեջ, որ շարադրված է Արտազի հայկական իշխանության ծաղկման ժամանակաշրջանում, հայտնում է, որ «Մակուն բերդ է մի քարաժայռի ճեղքվածքում և մի գյուղ այդ բերդի ստորոտում, այնպես որ այդ լեռը մինչև օրվա կեսն այդ գյուղն իր ստվերի տակ է պահում. և

42 Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 3778, էջ 464ա—464բ։ (Տե՛ս նաև Լ. Խաչիկյան. ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 114—115, Ն. Մառ. Ցուցակ ձեռագրաց վանուց Սևանայ, Մոսկվա, 1892, էջ 20—21)։

43 Շրջանի աշխարհագրական սահմանները ճշգրիտ որոշելու տվյալներ չկան։ Մակվի խանությունը, որ ստեղծվել է XVII դարում՝ Արտազի հայկական իշխանության տարածքի վրա, վարչականորեն բաժանված է եղել հետևյալ 18 մահալների. Կալա-Դարասի (Բերդադաշտ), Ավաջուղ, Կարա-կոյուն, Չայփարա, Չայ-բասար, Բարաջուղ, Ալանդ, Ջալալինյան և Միլանյան յուրտեր, Քաշլարաա (Քշո՞ա—Լ. Խ.), Արազ-բասարի, Չալդրան, Սոկմանաբադ, Թամաչալար, Դոշ-բանդլարը, Խոշար, Շարուր և Մուշ (տե՛ս Н. И. Исхаги. Исторический очерк макинского ханства, автореферат, Баку, 1966, էջ 16)։ Սրանց մեջ կենտրոնական դիրք է գրավել Բերդադաշտը։ Արտազի հայկական հուշարձանների վրա դեռևս պահպանված արձանագրությունների հետագա ուսումնասիրության ճանապարհով թերևս երևան բերվեն նոր տվյալներ հայկական իշխանության ծայրային սահմանները որոշելու. պետք է ենթադրել, որ դրանք (այդ սահմանները) XIII—XIV դարերի ընթացքում կայուն չեն եղել։ Հակված ենք ենթադրելու, որ Լանկ-Թամուրի արշավանքների շրջանում հայ ավատատերերի իշխանությունը պարփակված էր Բերդադաշտի տարածքով, ուր կային շուրջ երեք տասնյակ գյուղեր։ Լանկ-Թամուրը, երկրորդ անգամ հայտնվելով այդ կողմերում և իշխանազուն Սորղաթմիշին պատանդ վերցնելով, պարտադրել է Նուրադին իշխանին բաժ հարկի Թամուրյանների տրամադրության տակ դնել 20 այրուձի։ Մակվի ողջ շրջանի համար այդ թիվը փոքր էր։ Հայտնի է, որ Մակվի խանը XIX դարի կեսերին պարտավորված է եղել պատերազմ դուրս բերել «հարյուր այրուձի և մի վաշտ հետի[ոտն] զինվորներ» (Ա. Թոխմախյան. Մասիս լեռների հարավային ստորոտներ, Բ մաս, Թիֆլիս, 1882, էջ 6)։

«մահրասիան», որ քրիստոնյա հոգևորականների (քեշիշների) մեծն է՝ այդտեղ է բնակվում»[44ա]։ Խիստ ուշագրավ է, որ պաշտոնական շրջաններում, որոնց ներկայացուցիչն էր Ղազվինին, Մակվի հոգևոր առաջնորդ «մահրասիան», այսինքն՝ Զաքարիա եպիսկոպոսը, ճանաչված էր որպես հայ հոգևորականության պարագլուխ։



Նկ. 1. Մակվի կամուրջը։

Մակվի բերդի մասին շատ ավելի մանրամասն ու հետաքրքրական տեղեկություններ է գրանցել Ռույ Գոնսալես դե Կլավիխոն՝ Իսպանիայի Հենրիկոս Գ թագավորի դեսպանը, որ XV դարի սկզբներին, Լանկ-Թեմուրի արքունիքը մեկնելու ճանապարհին, հյուրընկալվել է այստեղ և գրի անցկացրել իր տպավորությունները. «Ամրոցը,—գրում է նա Մակվի մասին,—կանգնած է բարձր լեռան ստորոտում գտնվող հովտի մի անկյունում, իսկ քաղաքը կառուցված է ավելի բարձր՝ նրա լանջին. Հենց քաղաքից ներքև, նույն այդ լանջի վրա բարձրանում է ամուր պարիսպը՝ ներքին աշտարակներով։ Այդ պարսպից այն կողմ կային տներ, ուր մարդիկ էին բնակվում, իսկ նրանից անդին՝ նույնպես ապրում էին մարդիկ և լանջը շարունակվում էր ավելի վեր։ Այստեղ այժմ կառուցված է մի այլ պարիսպ՝ աշտարակներով և բարձր մարտկոցներով, որ երկարում է ու միանում առաջին պարսպին։ Այս երկրորդ պարսպի մուտքը ժայռի մեջ փորված սանդուղքներով էր, իսկ մուտքի վրա ի պաշտպանություն նրա կար մի մեծ աշտարակ։ Այդ երկրորդ պարսպից այն կողմ, ժայռի վրա տներ էին կառուցված, որոնց միջամասերում՝ աշտարակներ, ինչպես և տներ, ուր իշխանն էր բնակվում, և այստեղ էին պահում

44ա Համդուլլա Ղազվինի. Նուզհաթ-ուլ-կուլուբ, բնական բնագիր, Թեհրան, 1336 (1958), էջ 102։ Այս տեղեկությունը շնորհակալությամբ ստացել ենք իրանագետ Հ. Փափազյանից։

բնակիչներն իրենց բոլոր պաշարները։ Քարաժայռը, որի վրա կառուցված էին այդ տները, շարունակվում էր շատ ավելի վեր, քան տներն ու պարիսպներն էին։ Եվ ժայռի բարձունքները կարկառի նման ծածկում են ամրոցը, պարիսպներն ու տները, թեքված լինելով նրանց վրա երկնքի նման։ Երբ անձրև է տեղում ջուրն երկնքից չի հասնում ամրոցին, որովհետև քարաժայռերն ամբողջովին ծածկում են այն. այսպիսով ամրոցը կառուցված է այնպես, որ նրա վրա կարելի չէ հարձակվել ոչ ցամաքից, ոչ էլ նույնիսկ երկնքից»[44]։

Ուշագրավ է նաև Մակվի բերդի Էվլիյա Չելեպիի (XVII դար) նկարագրությունը. ըստ նրա՝ բերդը «կառուցված է բարձր և սեպ ժայռի մը վրա, պատվանդանը նեղ և բարակ է և կաշտարակէ դեպի երկինք, ամեն կողմե անառիկ ըլլալով։ Միայն մեկ դուռ կա, որուն վրա կրնաս բարձրանալ ժայռին մեջ փորված մինարեի նման փոքր սանդուխով։ Շարժական կամուրջը, որ գետին վրայեն կ՚երկարի դեպի բերդը, ամեն երեկո կը բարձրացվի, և այդպես բերդը բոլորովին կառանձնանա»[45]։

Արտազի հայ իշխանները մեկ դարից ավելի, ապավինելով բերդի ամրություններին և հմտորեն կազմակերպելով պաշտպանությունը, դիմագրավեցին մեկը մյուսին հաջորդող նվաճողներին, հակահարված տալով նույնիսկ Լանկ-Թամուրի անհաղթահարելի զորաքանակներին[46]։

Զաքարիա եպիսկոպոսի և նրա պայազատ եղբայրների համատեղ ջանքերը, ինչպես նշեցինք վերը, նշանակալից եղան նաև Արտազի շրջանով անցնող ճանապարհների բարեկարգման գործում։ Անցյալ դարի 80-ական թվականներին գրանցված տեղեկությունների համաձայն Մակու գետի վրա Զաքարիան ու պարոն Պետրոսը սրբատաշ քարերով կառուցել են չորս կամարակապ կամուրջներ, որոնց վրա կարդացվել են 1318—1328 թթ. արձանա-

---

44 *Рюи Гонзалес де Клавихо*. Дневник путешествия к двору Тимура в Самарканд, в 1403—1406 гг., пер. И. И. Срезневского, СПб, 1881, էջ 158—162։ Հմմ. **Հով. Հակոբյան**, Ուղեգրություններ, հատոր Ա, ԺԳ—ԺԶ դար, Երևան, 1932, էջ 113—116 (այս թարգմանությունը անփույթ է կատարված)։

45 **Հ. Միքայել Հովհաննեսյան**, Հայաստանի բերդերը, Վենետիկ, 1970, էջ 312 (թրգմ. Հ. Քյուրդյանի)։ Մակվի բերդի մասին հետաքրքրական տեղեկություններ կան նաև հայ ուղեգիրների և տեղագիրների աշխատություններում (տե՛ս օրինակ, **Ե. Ֆռանգյան**, Ատրպատական, Թիֆլիս, էջ 13—14)։

46 Բնական ու արհեստական հզոր ամրություններով պաշտպանված այս բերդը, որ միջնադարյան հայկական ռազմավարական արհեստի մի փայլուն կոթող է եղել, քարուքանդ ավերվել է 1642 թվականին Շահ-Աբբաս Բ-ի հրամանով, 3 տարի դրանից առաջ Թուրքիայի և Պարսկաստանի միջև կնքված հաշտության պայմանագրի թելադրությամբ։ Այդ մասին լեռան վրա փորագրված է պարսկերեն չափածո մի արձանագրություն, որ մեջ է բերել ու թարգմանել **Մ. Մինորսկին** իր „Древности Маку, путевые заметки“, (Петроград, 1916) աշխատության մեջ։ Արձանագրության առաջին տողը՝ این قلعه قابان بود Մինորսկին թարգմանել է այսպես. „Эта крепость, бывшая крепостью вепря“. قابان բառը վերծանելով որպես «կաբան» (վայրի խոզ)։ Այս թարգմանությունը անհամոզիչ է. ըստ երևույթին այդ բառը հայերեն «կապան» բառն է, որ նշանակում է «կիրճ, որի ամենանեղ տեղում ամուր դուռ է շինած՝ ճանապարհն ըստ կամի կապելու կամ բանալու համար» (**Ստ. Մալխասյանց**, Հայերեն բացատրական բառարան, հատոր երկրորդ, Երևան, 1944, էջ 239)։ Մակվի բերդը իրոք մի կապան էր, ընկած ռազմական կարևոր նշանակություն ունեցող ճանապարհի վրա և պաշտպանված հզոր ամրություններով։

արձանագրություններ[47]: Այդ կամուրջներից միայն մեկի մասին ունենք բավարար տեղեկություններ. կառուցված է Մակվից 2 կմ հեռավորության վրա. ունեցել է 7 փառահեղ կամարներ, որոնցից պահպանվել են կենտրոնի մեծ-կիսակոր կամարը և մեկ կողմի 3 գմբեթաձև կամարները (տե՛ս լուսանկարը): Կառուցողական ընդարձակ արձանագրությունը (տե՛ս նկար 2), որի բնագիրը հայտնի դարձավ բանասիրությանը միայն վերջերս, լրացուցիչ տեղեկություններ է պարունակում Արտազի իշխանական գերդաստանի պայազատների, մասնավորապես պարոն Պետրոսի և նրա հարազատների մասին: Պարզվում է, որ նա ունեցել է Սանասար և Մանկասար անունով որդիներ. արձանագրության մեջ հիշատակված են նաև նրա տիկինը, (Թամսի կամ Թամթի անունով) և 4 եղբայրները՝ Զաքարիան, Սարգիսը, Խութլուբուղան և Արղութը[48]:



Նկ. 2. Մակվի կամուրջի արձանագրությունը

Կամուրջներից բացի, նշանավոր է եղել նաև Կապի կոչվող կիրճը, որ Ս. Թադեի վանքի և Մակվի միջնամասում բացել է Զաքարիա եպիսկոպոսը՝

---

47 Ա. Թոխմախյան, Մակու լեռների հարավային ստորոտները, Թիֆլիս, 1882, էջ 56: Հեղինակը հայտնում է, որ այդ արձանագրությունները փորագրված են «Հայոց 967—978 թվականներին», հավանաբար շփոթելով Չ (700) և Ջ (900) թվանշանները: Այդ կամուրջները, անտարակույս, կառուցված պետք է լինեն ՉԿԷ (767=1318)—ՉՀԷ (777=1328) թվականներին (Չ և Ջ թվերի շփոթության բազմաթիվ օրինակներ կան մեր բանասիրական գրականության մեջ):

48 Լ. Գ. Մինասյան, Հնադարյան մի կամուրջ Ատրպատականում («Հանդէս ամսօրեայ», 1968, 4—6, էջ 243—246):

Արձանագրությունն սկզբից թերի է, պակասում է առնվազն կառուցման թվականը և «յաջորդութեան» կամ «ի վերակացութեան» բառը). պահպանված մասը վերծանվում է այսպես. «[Ի թվ. /// յաջորդութեան] Ս. աթոռոյս Թադէոսի տէր Զաքարոյ, ես Պետրոս որդի պրն Մանուէլայ շին[եցի] էջս զայս ի հոգւոյ արդեանց իմոց, յիշատակ ծնողաց իմոց և ամուսնոյ իմոյ Թամթէ, և եղբարց իմոց Սարգսի, և Խութլուբուղին և Արղութի (այս անվան վերծանությունը կասկածելի է), և որդոց իմոց Սանասարին և Մանկասարին, զոր տէր աստուած

«Թուանքչի լեռան չխթայաժայռը պատառելով». Ճանապարհաշինական այս վիթխարի աշխատանքի մասին հանդիպակաց ժայռի վրա փորագրված է արձանագրություն, որից վերծանվել են ՉԿԷ (1318) թվականը և «իշխանութեամբ տէր Զաքարին» բառերը[49]:

Զաքարիա եպիսկոպոսի գործունեությունն արգասավոր է եղել նաև վանական հաստատությունների կառուցման ու վերաշինման ասպարեզնում: Նրա անվան հետ է առնչվում, հատկապես, Ծործորի վանքի հիմնադրումը, որն ավարտված պետք է լինի 1314 թվականից մի քանի տարի առաջ: Նորակառույց այս վանքի անունով Ծործորեցի մականունը ստացած Զաքարիա եպիսկոպոսը, իր կուսակից, անվանի մատենագիր Հովհան Ծործորեցու համագործակցությամբ, այստեղ բարձրագույն դպրոց է բացել և նյութական պայմաններ ստեղծել գիտա-մանկավարժական աշխատանքների ծավալման համար[50]:

1319 թ. կենտրոնական Հայաստանում երկրաշարժ է լինում, տուժում է հատկապես Արտազի շրջանը: Մի ժամանակագիր այդ մասին գրում է. «Ի ՉԿԷ (1319) թվին եղեւ շարժ յԱրեւելս և զԹադէոս առաքելոյն վանքն եւ զեկեղեցին կործանեաց, եւ զտունս փլոյց եւ ՀԵ. (75) ոգի եսպան, զոր դարձեալ վերստին շինեաց զեկեղեցին եւ վանքն տէր Զաքարէ»[51]: Շինարարական այդ մեծ աշխատանքներն ավարտվել են երկրաշարժից տասը տարի հետո՝ 1329 թվականին, ու պսակվել Զաքարիա եպիսկոպոսի և նրա մերձավորների մասին կարևոր տեղեկություններ պարունակող մի արձանագրությամբ (տաճարի և արձանագրության լուսանկարները տե՛ս նկ. 3 և նկ. 4): Արձանագրությունը փորագրված է վանքի հյուսիսային որմի վրա, երկաթագիր խոշոր տառերով և վերծանվում է այսպես.

«Այս տաճար լուսակերտ եւ երկնանման առկայացեալ հաստատագոյն հիմամբք ի վերայ աստուածաբնակ շիրմի սուրբ առաքելոյս Թադէոսի, որ ըստ բազմատեսակ յանցանաց մեր զկործանումն էառ ի շարժէ: Իսկ ես

---

վայելել տացէ մինչև ի կատարած աշխարհի. շինողքն և աշխատողքն յիշեալ եղիցին, ամէն: ՉԱկոր վզպետս (իմա՛ վարպետս, այսինքն՝ կառուցող վարպետը—Լ. Խ.) յաղաւթս յիշեցէք:

Ստանալով պր. Մինասյանից այս արձանագրության լուսանկարը (որի համար հայտնում ենք մեր շնորհակալությունը), ճշգրտել ենք «Հանդէս ամսօրեայ»-ում տպագրված վերծանությունը:

49 Ս. Հայկունի, Պարսկահայք (Թղթակցություն) («Արարատ», 1896, էջ 587—588): Վերոհիշյալ կամուրջների և այս կիրճի արձանագրությունները, ինչպես նաև Մակվի շրջանի հայկական մյուս հուշարձանները արժանի են ավելի հանգամանալից ուսումնասիրության: Այժմ, երբ Ս. Թադեի վանքը վերանորոգվել ու դարձել է իրանահայերի սիրված ուխտատեղին, ավելի լայն հնարավորություններ են ստեղծվել պատմական Արտազի հնագիտական արժեք ներկայացնող հուշարձանների գիտական ուսումնասիրության համար: Համոզված ենք, որ տևական աշխատանքով, վանքերի ու եկեղեցիների կիսակործան պատերի ու տապանաքարերի վրայից հնարավոր կլինի վերծանել անհայտ մնացած բազմաթիվ արձանագրություններ, որոնք նոր լույս կսփռեն Արտազի պատմության և այդ երկրամասի հայ տերերի գործունեության վրա:

50 Ծործորի վանքի հիմնադրման հանգամանքներին և այստեղ ստեղծված բարձրագույն դպրոցի գործունեությանը հանգամանորեն անդրադառնալու ենք վերջում՝ հատուկ պարբերությամբ:

51 Սամուէլի Քահանայի Անեցւոյ, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 157:

նուաստ ստրաստաւոր նմին Զաքարիայ եպիսկոպոս, որդի պարոն Մանվէլայ, կարողութեամբն աստուծոյ սկիզբն արարի կրկին նորոգութեան առաւել քան զառաջինն, ի ժամանակի սաստիկ նեղութեան եւ հալածանաց քրիստոնէից, որ եւ բազում եկեղեցիք քակտին, վասն որոյ արձանագրեցաք զյիշատակս մեր առ ի յիշատակել զմեզ առաջի մեծին այն եւ անարիւն զենման զառինն աստուծոյ հանդերձ ծնողօք եւ զարմիւք, եւ զաչորդն մեր աղբաւր որդին զտէր Տիրացուն, այլ եւ զհարազատ եղբայրս մեր զՊետրոս եւ զՍարգիս, որք ըստ կարողութեան նպաստաւորք եղեն ընչիւք։ Կատարումն թվ. ՉՀԸ (1329)»[52]։

Վանքի շրջափակում, անշուշտ, կառուցված են եղել նաև կացարաններ և տնտեսական նշանակություն ունեցող օժանդակ այլ շինություններ. XVII դարից տեղեկություն է պահպանվել Կառնուտ կոչվող ջրմուղի մասին, որ «յառաջ ժամանակս բերեալ էր Զաքարիա եպիսկոպոսն՝ պարոն Էմանուէլի որդի»[53]։

Բերդերի, վանական հաստատությունների, ճանապարհների, կամուրջների և այլ շինությունների[54] կառուցման մեծածախ աշխատանքներն ի կատար ածելու համար, մանավանդ քրիստոնյաների նկատմամբ ծավալված հալածանքների տարիներին, պետք էր ունենալ մեծ հեղինակություն՝ իշխանության բարձրաստիճան պաշտոնեության շրջանում և նյութական լայն հնարավորություններ։ Արտազի եպիսկոպոսն ու նրա եղբայրները օժտված էին և՛ մեկով, և՛ մյուսով։

Արտազի հայ ավատատերերի գերդաստանի մասին ժամանակակից սկզբնաղբյուրներում կան նաև այլ ակնարկներ։ Նշանավոր մատենագիր Հովհան Ծործորեցին, օրինակ, իր քարոզներից մեկի ընծայական-վերջաբա-

52 Ձեռքի տակ ունենք այս արձանագրության հաջող լուսանկարը (տե՛ս նկար 4) և տարբեր անձանց կողմից կատարված հետևյալ չորս վերծանումները. 1. Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 340, էջ 122բ—123ա, 2. Յովհ. Շահխաթունեանց, Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, Էջմիածին, 1842, 3. Խաչիկ վ. Դադեան, Շաւարշան—Արտազ գաւառի սուրբ Թադէոս առաքելոյ վանքը («Արարատ», 1898, էջ 89), 4. Լ. Մինասյան, Իրանի հայկական վանքերը, Թեհրան, 1971, էջ 12 (արձանագրությունը տպագրված է նաև ուրիշների կողմից)։

53 1679 թ. մի հիշատակարանում Թադեոս առաքյալի վանքի վանահայր Իսահակ վարդապետ Մակվեցին հայտնում է, որ «քակեալ և աւերեալ» այդ ջրմուղը «կրկին նորոգեցաւ և յորդառատ աղբիւրն բերեալ ածաւ ի մէջ վանիցս և գեղջս» (Մատենադարան, ձեռ. № 808, էջ 489ա, նաև՝ Գ. Հովսեփյան, Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, Բ հրատարակություն, Անթիլիաս, 1969, էջ 283)։

54 Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, ինչպես նաև նրանից առաջ ու հետո, Մակվի շրջանում սփռված աշխարհիկ և հոգևոր շինությունների մեծաքանակ լինելու մասին վկայություններ կան հայ և օտարազգի ուղեգիրների աշխատություններում։ Ա. Թոխմախյանը, օրինակ, ասում է, որ «Մակուայ, Ավաջուղի, Գարաչիլի բոլոր թաթարական գյուղերումը եկեղեցիներ կան, բոլորն էլ ավերված։ Լեռներում, գետերի ափերին կառուցած են վանքեր, մատուռներ։ Իսկ խաչարձաններ, խաչեր այնքան բազմաթիվ են, որոնք թեև թաթարները անհետացնելու մտոք խորտակում, փշրում են, բայց եթե մինչև հավիտյան էլ շարունակեն, հայոց քրիստոնեական կնիքը այդ աշխարհի վրայից չէին կարող եղծել» (Մակու լեռների հյուսիսային ստորոտները, էջ 52)։

Նշանավոր արևելագետ Վ. Մինորսկին Մակվի շրջանի տարբեր վայրերում տեսել ու նկարագրել է մի քանի հայկական վանքեր ու եկեղեցիներ, հիշատակել, որ Մակվի բերդաժայռի վրա փորագրված են խաչեր ու արձանագրություններ և այլն։

*նում, մեծարանքի խոսքեր շռայլելով Զաքարիա եպիսկոպոսի հասցեին, անդրադառնում է նաև նրա մերձավորներին՝ գրելով. «Եւ որք ընդ սմաւ կարգեալ են իշխանութիւնք և ի զարմից սորին շառաւիղեալք բարեպաշտ պարոնայք, զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի նոցա»*[55]։

*Այս տողերով ևս աներկբայելի է դառնում Զաքարիա եպիսկոպոսի դերը Արտազի հայ ավատատերերի ընտանիքում. Նրանց քաղաքական կշիռն ու տնտեսական բարգավաճ վիճակը խարսխված էր Առաքելոց աթոռի հեղինակության և Հայաստանյայց եկեղեցու կազմակերպության մեջ նրա գրաված դիրքի վրա։ Նկատի ունենալով հենց այս հանգամանքը, ստորև վերլուծելու ենք կարևոր այն տվյալները, որոնք լույս են սփռում XIV դարի առաջին տասնամյակներին հայ եկեղեցու պառակտյալ վիճակի և Կիլիկիայի ու կենտրոնական Հայաստանի հոգևոր և աշխարհիկ պետերի քաղաքական ու գաղափարական հակադիր դիրքորոշման վրա, բացահայտելով մասնավորապես Արտազի աթոռի և նրա իշխանազուն եպիսկոպոսի դիրքն ու դերը այդ լարված պայքարում։*

5. Արտազի աթոռը դավանաբանական պայքարի հորձանքում.—*Կիլիկյան Հայաստանի բարձրաստիճան հոգևորականության ամենաազդեցիկ ներկայացուցիչները՝ հանձինս Գրիգոր Անավարզեցի (1293—1307) և Կոստանդին Կեսարացի (1307—1322) կաթողիկոսների, կաթոլիկ եկեղեցու գերիշխանությունն ընդունելը նախապայման էին համարում հայկական թագավորության գոյությունը պահպանելու համար անհրաժեշտ նկատվող և եվրոպական խաչակիր երկրների կողմից շարունակ խոստացվող ռազմական օգնությունն ստանալու։ Եկեղեցու վեհապետերը, կուսակից ունենալով Կիլիկիայի հայ ավատատերերի գերակշիռ մասին, եռանդուն քայլերի էին դիմում իրենց քաղաքականության դեմ և՛ Կիլիկիայում, և՛, մանավանդ, Մեծ Հայքում կազմակերպված հուժկու դիմադրությունը հաղթահարելու համար։ Դավանաբանական շղարշի տակ կատաղի պայքար էր մղվում հայ ժողովրդի քաղաքական բաղձանքների իրականացման երկու հակադիր ուղիների վրա կանգնած ու սոցիալ-քաղաքական տարբեր դիրքորոշում ունեցող խմբակցությունների միջև։ Եվ եթե արքայանիստ Սիս քաղաքում կայան գտած Հայոց կաթողիկոսները՝ լատինասեր քաղաքականության ջատագովներն էին, ազգային եկեղեցու ավանդույթներին հավատարիմ կուսակցության պարագլուխները՝ Սյունյաց եպիսկոպոսներն էին. սրանք, որ սիրում էին պճնվել «պրոտոֆրոնդէս Հայոց Մեծաց և մետրապոլիտ Սիւնական նահանգի» բարձրագոչ տիտղոսներով, հենվում էին Սյունյաց Օրբելյանների և Հայաստանի աշխարհիկ ու հոգևոր մյուս ավատատերերի միասնական ուժի վրա, որոնք, գիտակցելով հեռավոր Եվրոպայից օգնության ակնկալելու անիրական լինելը, Ամենայն Հայոց կաթողիկոսական աթոռը մայր հայրենիք տեղափոխելու ծրագրեր էին մշակում, գտնելով, որ դարերով սրբագործված ազգային ավանդույթներն ինքնին՝ գաղափարական հզոր ազդակ են ժողովրդի ինքնագիտակցության և գոյատևման համար։ «Հաւան եմք մեք ընդ մեր հարսն ի դժոխս իջանել, և ոչ ընդ հռոմոց յերկինս ելանել»—այս էր նրանց կարգախոսը, որ այնքան գեղեցիկ ու դիպուկ ձևակերպել էր Սյունյաց մետրոպոլիտ Ստեփանոս Օրբելյանը։*

---

55 *Երուսաղեմի մատենադարան, ձեռ. № 1003, էջ 68։*

Արտազի թեմի առաջնորդ Զաքարիա եպիսկոպոսը, ընթանալով իր նախորդ Տիրացու եպիսկոպոսի նախագծած ուղիով, հռոմեական եկեղեցուն մերձենալու քաղաքականության ջերմ կողմնակիցն ու ջատագովն էր Մեծ Հայքում. «Տէրս Զաքարիա զինքն նուաստ և հնազանդ ունի և հրամանակատար յաջորդին Պետրոսի» (այսինքն՝ Հռոմի պապին), այսպես է գրում նրա մասին իր կուսակիցներից մեկը[56]:

Այս հաստատվում է ժամանակակիցների բազմաթիվ վկայություններով. ֆրանցիսկյան միաբանության անդամ դարձած մի հայ կրոնավոր՝ Դանիել Թավրիզեցին, լատիներեն լեզվով շարադրված դավանաբանական իր գրվածքի մեջ հայտնում է, որ «Հռոմեական եկեղեցու հետ միավորված ժամանակակից հայերը ընդունում են սուրբ հոգու բխումն ինչպես հորից, այնպես էլ որդուց. ես համոզված եմ, որ այդ հենց այդպես է, քանի որ անձամբ տեսել եմ մի քանիսի, այսինքն՝ տեր Թագավորի, տեր կաթողիկոսի և Մեծ Հայքում տեր Զաքարիայի, ինչպես և Հռոմի եկեղեցու հետ միավորված մի քանի այլ անձանց մոտ»[57]:

Հայ եկեղեցու առաքելական հիմնադրության մասին գոյություն ունեցող ավանդությունների, կաթոլիկության հարած հայերի և, մասնավորապես, Զաքարիա եպիսկոպոսի մասին խիստ ուշագրավ տեղեկություններ է գրանցել Դոմինիկյան կրոնավոր Ժուրդեն դե Սևերակը, որ Հնդկաստան ուղևորվելու ճանապարհին՝ 1320 թ. ձմռանը եղել էր Հայաստանում: Նրա ուղեգրության Արտազի շրջանին և Ս. Թադեի վանքին վերաբերող հատվածը մեջ ենք բերում ստորև ամբողջությամբ, չնայած այն պարունակում է նաև մեր նյութին անմիջապես չառնչվող տեղիներ. «[Արարատ] լեռան վրա,—գրում է նա,—կանգնած է մի տուն, որն ինչպես պատմում են, կառուցել է ինքը՝ Նոյը, իր տապանը թողնելուց հետո: Ասում են նաև, որ լեռան վրա ինչ-որ տեղ պահպանվել է Նոյի տնկած խաղողի որթը, որի գինուց Նոյն արբեց: Իսկ Նոյի որթատունկի հատիկներն այնքան հսկայական են, որ մարդիկ իրենց աչքին չեն հավատում: Այս բոլորի մասին ես իմացա մեր մի կաթոլիկ արքեպիսկոպոսից՝ մեծ և ուժեղ վեհապետից: Նա իշխում է այս կողմերում և ըստ ամենայնի արժանի է վստահության[58]: Իսկ ես, չնայած եղել եմ այստեղ (հավատացեք իմ խոսքերին), բայց ոչ ամռանը, այլ ձմռանը:

Այս Մեծ Հայքը շատ է տառապել. այստեղ նահատակությամբ իրենց վախճանն են գտել երեք առաքյալներ՝ Բարթուղիմեոսը, Սիմեոնն ու Հուդան[59]:

56 Երուսաղեմի մատենադարան, ձեռ. № 789, էջ 149:

57 Տե՛ս Դանիել Թավրիզեցու «Հայերին վերագրված մոլորությունների կապակցությամբ եղբայր Դանիելի պատասխանը» խորագրով լատիներեն աշխատությունը՝ հետևյալ հրատարակության մեջ. „Recueil des Historiens des Croisades. Documents arméniens“, t. II, Paris, 1906, էջ 561:

58 Ինչպես կտեսնենք ստորև, խոսքը Զաքարիա Ծործորեցու մասին է, ուստի Ժուրդեն դե Սևերակի գրանցած տեղեկությունների սկզբնաղբյուրը նա է՝ Առաքելոց աթոռի եպիսկոպոսը:

59 Բարթուղիմեոսը համարվում է Քրիստոսի 12 աշակերտներից մեկը, որ ըստ ավանդության քարոզել է Խորասանում, Պարսկաստանում և Հնդկաստանում, բայց ի վերջո հաստատվել է Հայաստանում ու նահատակվել Սանատրուկ թագավորի կողմից: Սիմոնը կամ Շմավոնը նույնպես 12 առասպելական առաքյալներից է համարվում. քարոզել է, իբր, Եգիպտոսում, Լիբիայում և Մավրիտանիայում. ոմանք նրան նահատակված են համարում Բրիտանիայում, ուրիշներ՝ Երուսաղեմում, իսկ հայկական միջնադարյան ավանդությամբ՝ Հուդա-Թադեոսի հետքերով մեկնել է Հայաստան և վկայական իր վախճանը գտել Ռշտունյաց գավառում: Հուդան

Ես տեսել եմ այն գնդանը ուր տանջվել են Սիմոնն ու Հուդան և աղբյուրները, որոնք առաքելական գավազանի հարվածով ժայթքել են կենսատու ժայռից։ Ութ, տասը, տասնյոթ անգամ գավազանը դիպել է քարին, և այժմ այդտեղ հինգ այդքան աղբյուրներ կան, իսկ նրանցից ոչ հեռու կառուցված է մեծ ու գեղեցիկ մի եկեղեցի։

Այս Մեծ Հայքում նահատակվել է մի հիանալի կույս Սանդուխտ[60] անունով և նա արքայադուստր է եղել։ Այստեղ (Մեծ Հայքում) են նետել վիրապի մեջ՝ առյուծի և վիշապի բերանը՝ հայերին կաթոլիկական հավատքի բերող սուրբ Գրիգորին. և այդ տեղի է ունեցել, երբ Հայաստանում թագավորում էր Տրդատը, սուրբ Սեղբեստրոսի և կայսր Կոստանդիանոսի ժամանակներում։ Նույն այս Հայաստանում է մորթվել երանելի Հակոբ վկան[61]։

Այս նահանգում (այսինքն՝ Հայաստանում) մեծ մասամբ բնակվում են հերձվածող հայեր. քարոզիչ և կրտսեր եղբայրները[62] կաթոլիկության են դարձի բերել այս հերձվածողներից[63] ճիշտ չորս հազար, թերևս նույնիսկ ավելի անձանց. և այս բացարձակ ճշմարտություն է։

Եվ իրոք, մի մեծ արքեպիսկոպոս՝ տեր Զաքարիան, իր ողջ հոտի հետ միասին, ընդունել է մեր կրոնը։ Ապավինելով տիրոջ ողորմածությանը մենք հուսով ենք, որ բոլոր (հերձվածողները) շուտով դարձի կբերվեն, եթե այդ գործին ձեռնամուխ լինեն արժանավոր եղբայրներ։

...Այս Հայաստանը երկայնությամբ ձգվում է Սեբաստիայից մինչև Օրուգի (իմա՛ Մուղանի) հարթավայրը, իսկ լայնությամբ՝ Պարխար լեռից մինչև Թավրիզ։ Պարխարից Թավրիզ քսաներեք օրվա ճանապարհ է, Սեբաստիայից Մուղան՝ քառասուն օրվա»[64]։

Ժուրդենի հաղորդած տեղեկությունները կարևոր են նաև իլխանության վարչական կենտրոններում և այլ հայաբնակ վայրերում կաթոլիկ դավանանք ընդունած բնակչության թիվը պարզելու համար. «Այստեղ,—գրում է նա Թավրիզի մասին,—մենք (իմա՛ կաթոլիկները) ունենք բավականին գեղեցիկ մի եկեղեցի՝ հազարի չափ հավատացյալներով. նախկինում նրանք հերձվածողներ էին, իսկ այժմ դարձի են եկել մեր հավատքի։ Գրեթե նույնքան նորադարձներ կան Ուրում (իմա՛ Հեր կամ Խոյ)... այս քաղաքը հարուստ է և գտնվում է Թավրիզից երկօրյա հեռավորության վրա. ճիշտ այդպես հինգ-

---

կամ Թադեոսը համարվում է Քրիստոսի 70 աշակերտներից մեկը՝ Թովմա առաքյալի եղբայրը. ըստ ավանդության բժշկել ու քրիստոնեական հավատքի է բերել Եդեսիայի հայ թագավոր Աբգարին, նահատակվել է Սանատրուկ թագավորի կողմից, արքայադուստր Սանդուխտի հետ միասին (տե՛ս Մ. Ավգերյան. Ծաղիկ վարուց սրբոց, Վենետիկ, 1800, էջ 52, 106—107, 227—228)։

Զաքարիա Ծործորեցին իրեն համարում էր հիմնականում Թադեոս առաքյալի հաջորդ, սակայն ըստ հարկի պնդվում էր նաև Բարթուղիմեոսի և Սիմոնի հեղինակությամբ, կոչվելով առաքելոց եպիսկոպոս։

60 Սանդուխտ անձնանունը թյուրիմացաբար արտածելով հայերեն սանդուխտ (աստիճան) բառից եվրոպացի ուղեգիրը տվել է այդ բառի լատիներեն թարգմանությունը՝ Scala։

61 Խոսքը հավանաբար Հակովիկ Պարսկի մասին է (տե՛ս Ծաղիկ վարուց սրբոց, էջ 188—189)։

62 Քարոզիչ եղբայր էին կոչվում Դոմինիկյան միաբանության անդամները, իսկ կրտսեր եղբայր (նաև՝ մինոր)՝ ֆրանցիսկյանները։

63 Կաթոլիկ այս կրոնավորը հերձվածող է անվանում բոլոր ոչ կաթոլիկ քրիստոնյաներին, տվյալ դեպքում լուսավորչադավան հայերին։

64 „После Марко Поло...", էջ 137—138։

հարյուր կամ վեցհարյուր (կաթոլիկներ) են հաշվվում Սուլթանիայում... այնտեղ ևս մենք ունենք շատ գեղեցիկ մի եկեղեցի»[65]:

Միրձավոր Արևելյան երկրներում կաթոլիկ եկեղեցու ծավալած քարոզչական աշխատանքի հիմնական ծանրությունը մինչև 1318 թ. ընկած էր ֆրանցիսկյան միաբանության անդամների ուսերին: Նրանք առաջին հերթին հայտնվում ու հենակետեր էին ստեղծում միջազգային տարանցիկ առևտրի հիմնական մայրուղիների վրա գտնվող այն վայրերում, որոնք նշանակալից դեր էին կատարում որպես ապրանքափոխության կենտրոններ և կարավանային երթևեկի կանգառներ: Ըստ այդմ էլ՝ նրանց հարում էին հասարակական այն շերտերը, որոնք ներգրավված լինելով միջազգային առևտրի ոլորտի մեջ, անմիջական շահ ունեին եվրոպական երկրների հետ տնտեսական և քաղաքական կապերի հետագա ամրապնդումից: Ինչպես նշել ենք արդեն, ֆրանցիսկյան միաբանության քարոզիչ անդամները XIII դարի վերջերին և XIV-ի սկզբներին իրենց ազդեցության տակ էին առել Կիլիկյան Հայաստանի աշխարհիկ ու հոգևոր ավատատերերից շատերին և, առաջ շարժվելով դեպի արևելք, քայլ առ քայլ ներթափանցում և հենակետեր էին ստեղծում պատմական Հայաստանի առևտրա-արհեստագործական նշանավոր կենտրոններում և Անդրկովկասի ու Իրանի հայաշատ քաղաքներում: Դեռևս 1302 թ. Սյունյաց մետրոպոլիտ Ստեփանոս Օրբելյանը, իր «Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց» վիճաբանական գրվածքի մեջ դառնությամբ անդրադառնում էր լատինական եկեղեցու ազդեցության տարածման երևույթին. «Կիլիկիա բոլոր,—գրում էր նա,—որ տեղի էր մեր պարծանաց, յայս (իմա՛ լատինական եկեղեցու դավանանքով) վարակեալ կայ. և գլխաւոր քաղաքք որ ի Հոռոմք՝ ի սոյն մոլորեալ են. և եհաս մինչև առ մեզ, զի քարոզի այս յայտնապէս ի թագաւորական քաղաքն ի Տփխիս, և ի հին տունն Բագրատունեաց յԱնի՝ որ ի Շիրակ, նաև ի Թավրէժ շահաստան, և յայլ բազում տեղիս»[66]:

Ժուրդենը, ինչպես տեսանք քիչ առաջ, Օրբելյանի այս ցանկը լրացնում է Հեր և Սուլթանիա քաղաքների անուններով, որոշակի տեղեկացնելով, որ կաթոլիկ եկեղեցին հետևորդներ է ձեռք բերում այդ վայրերում ոչ թե մահմեդականներին քրիստոնյա դարձնելով, այլ «հերձվածող» քրիստոնյաներին, այսինքն հայերին՝ «դարձի բերելով»:

Լատինական եկեղեցուն միաձուլելու քաղաքականության վարիչները, Կիլիկիայում՝ թագավորն ու կաթողիկոսը, Մեծ Հայքում՝ Արտազի եպիսկոպոսը, դավանաբանական և ծիսական տարբերությունները վերացնելու իրենց պահանջը հիմնավորում էին տեսական այն դրույթով, որ, իբր, Հայոց եկեղեցին ի սկզբանե անտի (Գրիգոր Լուսավորչի ժամանակներից սկսած), կաթոլիկ եկեղեցու մասն է կազմել, ուստի, հետագայում առաջացած տարբերությունները վերացնելով, եկեղեցին վերականգնում է իր անաղարտ վիճակը: Սակայն ընդունելով Հռոմի պապի գերիշխանությունը, լատինամետ հայ գործիչները հեռու էին այն մտքից, թե այդ քայլով ոտք են դնում ինքնալուծարքի ճանապարհի վրա:

65 Նույն տեղում, էջ 164:

66 Տեառն Ստեփաննոսի նախագահ արքեպիսկոպոսի՝ Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց, շարադրեալ ի թուին Հայոց ՉԾԱ, Կ. Պոլիս, 1756, էջ 42—43 (հմմ. նաև՝ Մատենադարան, ձեռ. № 573, էջ 63ա—63բ):

*Այլ վիճակ ստեղծվեց Հայաստանում 1318 թվականից հետո, երբ Հովհաննես ԻԲ պապի (1316—1334) հատուկ կոնդակով ֆրանցիսկյան և դոմինիկյան միաբանությունների միջև քարոզչական գործունեության շրջանների նոր բաժանում կատարվեց։ Վաշխառու պապի կամակատարները դարձած դոմինիկյան կրոնավորները, ի տրիտուր իրենց ծառայությունների, որպես քարոզչության ասպարեզ ստացան Ասիական արևելքի այն երկրները, որոնցով անցնում էին միջազգային առևտրի ամենաբանուկ ճանապարհները։ Այդ կոնդակով հիմնադրվեց մի նոր արքեպիսկոպոսություն՝ Սուլթանիա կենտրոնով, որի անծայրածիր սահմանները որոշվում էին այսպես. «Արարիս (իմա՝ Արարատ) լեռից սկսած դեպի Արևելք, ներառյալ Պարսկական Թաթարիայի մեծ պետության... ողջ կայսրությունը... ինչպես և Դոխիի ու Խայդուի թագավորությունը (այսինքն՝ Միջին Ասիական երկրները) և նրանց ենթակա բոլոր շրջանները։ Այս արքեպիսկոպոսությանն են ենթարկվում նաև Հնդկաստանն ու Եթովպիան, իսկ արքեպիսկոպոսն ինքը այսուհետև նստելու է Սուլթանիա քաղաքում, քանի որ այդ արժանավայել ու մեծ բնակավայր է»[67]։*

*Սուլթանիայի արքեպիսկոպոս է նշանակվում դոմինիկյան միաբանության անդամ Ֆրանկո Պերուջացին, որն իր ենթակայության տակ ուներ վեց եպիսկոպոսություններ, որոնցից երեքը՝ Ատրպատականի Թավրիզ, Մարաղա և Դեհխարկան քաղաքներում[68]։*

*Դոմինիկյան այս քարոզիչները սկզբնական շրջանում համագործակցում էին ֆրանցիսկյանների հետ, հաշվի առնելով, որ նրանք այդ վայրերում ստեղծել էին արդեն որոշ հենակետեր, կառուցել եկեղեցիներ և հետևորդներ շահել։ Դոմինիկյաններն սկզբից զգույշ էին նաև Հայոց եկեղեցու պաշտոնեության հետ իրենց հարաբերություններում, խուսափելով իրենց թշնամական դիրքը բացահայտելուց։*

*Սակայն քիչ անց, ամրապնդելով իրենց դիրքերը Նախիջևանի գավառում[69] և իրենց ազդեցությունը տարածելով ֆրանցիսկյանների ստեղծած լատինադավան համայնքների վրա, նրանք անողոք պայքարի դրոշ են պարզում Հայոց եկեղեցու դեմ։ «Իրենց գլխավոր զենքն էր,— գրել է նրանց մասին Հայոց եկեղեցու պատմության նշանավոր հետախույզ Մ. Օրմանյանը,— շարք մը պիտակ հեղինակություններով և իմաստակ պատճառաբանություններով խիղճերը վրդովել, Հայոց եկեղեցվույն մեջ պաշտված խորհուրդները անվավեր ու չեղյալ նկատել, և հավատացելոց մկրտության և պաշտոնեից ձեռնադրության վրա կասկածներ հարուցանելով, կրկնամկրտություններ և կրկնաձեռնադրություններ ընել, հայ եկեղեցիներու և սրբություններու նվիրականությունը ուրանալ և անարգել, և պարզապես հայադավանները անհավատներու հավասարել»[70]։*

---

67 *G. Golubovich.* Biblioteca bio-bibliografica della Terra Santa e dell' Oriente Francescono, t. II, *էջ 570 և հտ., օգտվել ենք М. Я. Свет-ի* „После Марко Поло“ *աշխատության միջնորդությամբ։*

68 *Marcus Antonius v. d. Oudenrijn.* Linguae Haicanae Scriptores, Bern, *1960, էջ 19—20։*

69 *Այստեղ կաթոլիկ դավանանք է ընդունում Երնջակի շրջանի Քռնա, Ապարաներ, Սալիթաղ, Ապրակունիս, Խոշկաշեն և Ջահուկի շրջանի Ջահուկ և Շահապոնս գյուղերի հայ բնակչության մեծ մասը։*

70 Մ. Օրմանյան, *Ազգապատում, § 1350։*

Արտազի շրջանի հայ ավատատերերի գերդաստանը, պարոնտեր Զաքարիա եպիսկոպոսի գլխավորությամբ, փորձում է ի շահ իր նպատակների օգտագործել Հայաստանի և Ատրպատականի հարևան շրջաններում խարխսխնեած կաթոլիկ քարոզիչների գաղափարական ազդեցությունն ու կշիռը։ Ստեղծված պայմաններում Մեծ Հայքի աշխարհիկ ու եկեղեցական գործիչները, ի պաշտպանություն ազգային եկեղեցու գաղափարական և կազմակերպչական դիրքերի, հակամիջցների պետք է դիմեին։ Այսպիսով, Հայաստանում սկսվում է դավանաբանական լարված պայքարի մի շրջան, որ տևում է տասնամյակներ, ունենալով մակընթացություն և տեղատվություն իր փուլերը։ Մեզ, բնականաբար, հետաքրքրելու են այդ պայքարի այն դրվագները, որոնք առնչվում են Արտազի շրջանին և Թադեոս առաքյալի վիճակին։

Այս առումով ուշագրավ են հատկապես Սյունյաց մետրոպոլիտ Հովհան-Օրբելի (հիշատակված է որպես եպիսկոպոս 1302—1323 թթ.) զույգ նամակները, մեկն ուղղված կաթողիկոսին, մյուսը՝ Զաքարիա Ծործորեցուն։ Բանասիրության մեջ տարբեր կարծիքներ են հայտնվել այդ գրությունների շարադրման ժամանակի մասին. Մ. Չամչյանը գրված է համարում 1305-ին՝ կապելով Գրիգոր Անավարզեցու հետ, Մ. Օրմանյանը գրեթե համամիտ է նրան, իսկ Գ. Հովսեփյանը, գրության հնագույն եզրը 1314-ը համարելով, ավելի հավանական է գտնում 1317—1318 թվականները։

Նամակներից պարզվում է, որ կաթողիկոսը Արևելյան Հայաստան է ուղարկել Գրիգոր անունով իր նվիրակին, պատվիրելով նրան մեռոն բաշխել միայն թեմական այն առաջնորդներին, ովքեր հանձն կառնեն ջրախառն գինով պատարագ մատուցել և Քրիստոսի ծննդյան տոնը դեկտեմբերի 25-ին կատարել։ Հայոց եկեղեցու պատմության XIV դարի առաջին տասնամյակների կարևոր իրադարձությունների լույսի տակ դժվար չէ հանգել այն եզրակացության, որ այդպիսի վճռական պահանջով կաթողիկոսը կարող էր հանդես գալ միայն Սսի (1307 թ.) կամ Ադանայի (1317 թ.) եկեղեցական ժողովներից հետո, հենվելով հենց այդ ժողովների խիստ կասկածելի իրավական ուժ ունեցող որոշումների վրա։ Հարցի մանրակրկիտ քննությունը մեր նպատակից դուրս համարելով, մենք ևս այդ նամակների գրության ամենահավանական տարեթիվ համարում ենք 1317—1318 թվականները[71]։

Արդ՝ կաթողիկոսին հասցեագրված իր նամակում Սյունյաց մետրոպոլիտը հայտնում է, որ արտահայտելով իր վիճակի իշխանների, ազատների, հոգևորականության ու ժողովրդի միաձայն կամքը, նա հրաժարվում է կատարել կաթողիկոսի պահանջը, և մնալով ազգային եկեղեցու ավանդական

71 Այսպես ենք կարծում հաշվի առնելով նաև Հովհան-Օրբելի Զաքարիա Ծործորեցուն ուղղած նամակի մի հատվածը, ուր խոսք կա այն մասին, որ Արտազի եպիսկոպոսը պարծենալիս է եղել ինչպես իր, այնպես էլ իր շուրջ համախմբված անձանց գիտության վրա («...թէ դու այնպէս գիտուն եղար՝ որպէս կարծես զքեզ կամ զբոյրդ՝ որպէս պարծես հանապազ և խրոխտայցես առաջի իշխանաց»)։ Պարզ է, որ Զաքարիան այդպիսի դիրք կարող էր բռնել 1314-ից հետո միայն, երբ արդեն հիմնադրել էր Ծործորի վանքը՝ բարձրագույն իր դպրոցով, իրեն կուսակից դարձրել Հովհաննես Երզնկացի—Ծործորեցի վարդապետին և այլն։ Եվ այս նամակների շարադրման ժամանակ Երզնկացին արդեն հաստատվել էր Ծործորի վանքում ու դարձել Զաքարիայի մերձավոր գործակիցը, պարզ երևում է Մ. Չամչյանի ձեռքի տակ եղած և օգտագործած նյութերից (տե՛ս «Պատմութիւն Հայոց», հատ. Գ, Վենետիկ, 1786, էջ 306—308)։

գիրքերի վրա, իրեն ազատ է համարում այսուհետև վարելու ինքնուրույն քաղաքականություն[72]։

Հովհան-Օրբելի Զաքարիա Սործորեցուն հասցեագրած նամակից պարզվում է, որ վերջինս ոչ միայն հաճույքով կատարել է կաթողիկոսի պահանջը՝ պատարագի խորհրդին ջուր խառնելով և դեկտեմբերի 25-ին Քրիստոսի ծննդյան տոնը կատարելով, այլև ընդառաջ է գնացել կաթոլիկ եկեղեցուն բազմաթիվ այլ հարցերում ես (տարվա ընթացքում պահքի 50 օր է հաստատել, արգելել է աշխարհիկ քահանաների ամուսնությունը և այլն)։ «Ի հակառակ կողմն դարձուցէր զքեզ,—մեղադրում է նրան Հ. Օրբելը,—և երդմամբ չափ քակես զեկեղեցի աստուծոյ, և զհնազանդեալքս ի հոգևոր զխոյն օձաես, երբեմն իշխանաբար սաստելով, երբեմն գիրս և խօսս չարախօսութեան զմէնջ առ հոգևոր տէրն առաքելով, և ի նմանէ մեզ սաստ և սպառնալիս տաս բերել» և այլն[73]։

Մ. Չամչյանի ձեռքի տակ եղել են նաև այլ թղթակցություններ. Զաքարիայի պատասխան-նամակը Հովհան Օրբելին, վերջինիս երկրորդ գրությունը և այլն։ Դրանց տվյալներով Արտազի եպիսկոպոսը կաթոլիկ եկեղեցուն ընդառաջ գնալու իր գործելակերպը փորձում է արդարացնել տեսական այն դրույթով, որ «Օրէնք աստուծոյ զամենեսեան միաւորէ ընդ Քրիստոսի, իսկ օրէնք սատանայի՝ բաժանէ ի նմանէ, զի մի է տէր, մի հաւատ, մի օրէնք, և գլուխ օրինացն՝ սէր, և մի եկեղեցի՝ ժառանգ սիրոյ նորա, յորմէ արտաքսեալ որ ոչ ունի բնաւին փրկութիւն»։ Ինչպես հրեաները հնում ունեցել են մի քահանայապետ, այնպես էլ քրիստոնյաները՝ պետք է մեկ հոտ լինեն՝ մեկ հովիվ ունենալով, դաս առնելով հրեաների պատմությունից. «Որչափ ժամանակ հրեայքն ի մի տաճար երկրպագէին և մի թագաւոր ունէին, աստուած ընդ նոսա էր, իսկ յորժամ բաժանեցան՝ յաւար և յափշտակութիւն մատնեցան. որպէս և այժմ քրիստոնեայք՝ տուեալ եղեն կոխան հեթանոսաց»—գրում է նա[74]։

Սսի և Ադանայի ժողովների որոշումները Մեծ Հայքի թեմերին պարտադրելու մտահոգությամբ կաթողիկոսն ու իր գործակիցները եռանդուն քայլերի են դիմում. գրվում են հորդորական նամակներ՝ հասցեագրված ոչ միայն վիճակավոր առաջնորդներին, այլև անվանի ու հեղինակավոր գիտնական-վարդապետներին։ Պահպանվել են այդպիսի մի քանի նամակների Եսայի Նչեցու շարադրած պատասխան-գրությունները։ Գլաձորի համալսարանի մեծ րաբունապետը, իր և իր կուսակիցների անունից («ես և հաւանողքն ինձ»—գրում է նա) հայտնում է, որ քրիստոնեական եկեղեցիների միաբանությունը իրոք աստվածահաճո մի գործ է և սատանան է, որ «ատելութեամբ զմեզ առ իրեարս գրգռէ և բաժանէ, զի դիւրաւ հաղթեսցէ»։ Բայց իրատես լինելով, նա գտնում է, որ քանի դեռ չեն ստեղծվել եկեղեցիների միավորման համար անհրաժեշտ պայմաններ, ամեն մի եկեղեցի, առաջնորդվելով «հին սովորութիւն քաղցր է իւրաքանչիւր ումեք» սկզբունքով, պարտավոր է հավատարիմ մնալ անցյալից ժառանգած և ազգային երանգ ստացած ավանդույթներին, միաժամանակ հարգելով մյուսների օրենքներն ու սովորույթները։

---

72 «Ճռաքաղ», 1860, էջ 43։ Հմմտ. Մատենադարան, ձեռ. № 8245, էջ 182։

73 «Ճռաքաղ», 1860, էջ 56։ Հմմտ. ձեռ. № 8245, էջ 183։

74 Մ. Չամչեանց, Պատմութիւն Հայոց, հատ. Գ, Վենետիկ, 1786, էջ 306—308։

Նչեցի քարոնագետը կիլիկեցիների կողմից «սուրբ» հռչակված ժողովը (ամենայն հավանականությամբ խոսքն Ադանայի ժողովի մասին է)՝ «սուտ ժողով» է կոչում, ելնելով այն իրողությունից, որ՝ նախ, ժողովին մասնակցել են սակավաթիվ պատգամավորներ (այն էլ միայն Կիլիկիայի ներքին թեմերից), և ապա, շատերը հենց տեղում հակառակել են ու «դեռ տակաւին են հակառակին»՝ մերժելով ժողովի վնասակար որոշումները. իմաստասեր վարդապետը իր միտքն եզրափակում է այսպես. «Իբր, որ ի սահմանեալն իւրում հակառակութիւն կրէ՝ յայտ է թէ ոչ է ճշմարիտ, այլ սուտ»[75]: Ի վերջո Եսայի Նչեցին հայտնում է, որ ինքը և իր կուսակիցները պատրաստ են նույնիսկ իրենց կյանքը զոհաբերելու, բայց չեն շեղվելու երբեք նախնիներից ժառանգած ու դարերով սրբագործված ավանդություններից[76]:

Մեծ Հայքի քաղաքական ու եկեղեցական գործիչները չեն սահմանափակվում լոկ գաղափարական պայքար մղելով, ի պաշտպանություն իրենց սկզբունքների գրվածքներ շարադրելով ու բանավիճելով: Շուտով գործարար քայլեր են կատարվում Զաքարիա Ծործորեցու լատինամետ գործունեության

75 Ուշագրավ այս գրությունը, որ պահպանվել է Մաշտոցի անվան մատենադարանի № 9622 ձեռագրում (էջ 734—753), խորագրված է այսպես. «Թուղթ Եսայեայ վարդապետին, պատասխանի թղթոյ Սսոյ կաթողիկոսին և թագաւորին»: Գրության ստույգ տարեթիվը հայտնի չէ, բայց գրված պետք է լինի նույն այս տարիներին՝ XIV դարի 10-ական թթ. վերջերին:

Հարկ է նշել այստեղ, որ չնայած Եսայի Նչեցի քարոնագետի անունը Գլաձորի համալսարանի առնչությամբ վերջերս շատ է հոլովվում, բայց նրա կյանքի ու գիտական գործունեության դրվագները գիտական ուսումնասիրության առարկա չեն հանդիսացել: Աշխարհով մեկ ցրված հայերեն ձեռագրերի մեջ նրա անունով կան շուրջ երկու տասնյակ աշխատություններ՝ մեկնություն, ճառ, նամակ, շրջաբերական գրություն և այլն, որոնց մեծագույն մասը ոչ միայն չի հրապարակված, այլ և չի գնահատված մասնագետների կողմից: Հ. Աճառյանի «Հայոց անձնանունների բառարանի» Բ հատորում (Երևան, 1944, էջ 128) թվարկված են Նչեցու 12 աշխատությունները. առանց հատուկ քննություն կատարելու այդ ցանկը կարող ենք լրացնել հետևյալ գործերով. (1) «Թուղթ վասն կարգաց եկեղեցւոյ և ժամուց, զոր արարեալ է Եսայի վարդապետի ի խնդրոյ վարդապետաց Սիւնեաց և առաջնորդաց վանորէից, աստուածասէր կրօնաւորաց» (Մատենադարան, ձեռ. № 5154, էջ 259ա—261ա). (2) «Երիցս երանեալ բազմերջանիկ վարդապետին Եսայեայ, արարեալ ի խնդրոյ Ստեփանոս վարդապետի Թեղենեցւոյ, Յաղագս եկեղեցւոյ խորհրդեան» (ձեռ. № 9622, էջ 754—772). (3) Շրջաբերական թուղթ, որով հորդորում է հավատացյալներին ողորմություն տալ Տարոնի սուրբ Կարապետի վանքի նվիրակին (ձեռ. № 848, էջ 100ա—106բ) և վերջապես, (4) Կաթողիկոսին և թագավորին հասցեագրված այս նամակը, որից քաղվածքներ ենք կատարում և որը առիթ ավեց անդրադառնալու Եսայի Նչեցու գրական ժառանգությանը:

76 Մ. Չամչյանը, Հ. Շահխաթունյանցը, Ղ. Ալիշանը և այլ բանասերներ, հենվելով Սամվել Անեցու շարունակողներից մեկի հաղորդած տվյալի վրա (Սամվել, էջ 155), նույնացրել են Կոստանդին Կատուկեցի (Պռնագործ) և Կոստանդին Կեսարացի կաթողիկոսներին, գտնելով, որ Հեթում թագավորի կողմից 1289-ին գահընկեց արված վեհափառը՝ երկրորդ անգամ կաթողիկոս է դարձել 1307-ին: Մ. Օրմանյանը, հանգամանորեն քննարկելով այս կաթողիկոսների մասին առկա տվյալները, հանգել է այն եզրակացության, որ դրանք տարբեր անձնավորություններ են (տե՛ս «Ազգապատում», §§ 1169, 1245): Եսայի Նչեցու այս թղթի մեջ կա մի հատված, որ թերևս հնարավորություն է ընձեռում վերանայելու Օրմանյանի ուսումնասիրության արդյունքները: Նչեցու գրության մեջ կան նաև մեջբերումներ կիլիկեցիների իրեն հղած նամակից. «Այլ և պատուով,— ասէ,—ընկալարուք զհրամանս սուրբ հօրս՝ իբրև ճշմարիտս» խոսքերի կապակցությամբ Նչեցին գրում է. «Թէ սուրբ հայր էր ընդէ՞ր ընկեցիք յաթոռոյն և չար ի վերայ եդիք»: Դժվար չէ կռահել, որ աթոռազուրկ արված և կրկին «սուրբ հայր» դարձած անձը, որի հրամաններին պարտավոր էին ենթարկվել Մեծ Հայքի հոգևորականները՝ պետք է կաթողիկոսը լինի, իսկ այդպիսին Կոստանդին Կատուկեցին կարող էր լինել, որի կրկին կաթողիկոս դառնալու մասին, ինչպես ասացինք, կան ձեռագրական վկայություններ:

արգլունքները խափանելու և նրա իրավասությունները սահմանափակելու ուղղությամբ։ Առաքելոց աթոռի հոգևոր իշխանությունը, ինչպես տեսել ենք արդեն, դուրս էր գալիս պատմական Արտազ գավառի սահմաններից՝ ընդգրկելով Պարսկահայքի և Ատրպատականի հայաբնակ մի շարք շրջաններ, ներառյալ Թավրիզ ու Մարաղա քաղաքները[77]։ Այս վիճակը, սակայն, երկար չի տևում. շուրջ 1321 թվականին, Մեծ Հայքի բարձրաստիճան հոգևորականության ու ֆեոդալների համատեղ ջանքերով, Թավրիզում թեմական առաջնորդ է կարգվում Զաքարիա Ծործորեցուց կախում չունեցող և նրա որդեգրած քաղաքականության հակառակորդ Մատթեոս եպիսկոպոսը, որին մեծարում են «սրբազան քաշապետ և վերատեսուչ առաքելական աթոռոյ» տիտղոսով[78], հակադրելով Առաքելոց թեմի լատինադավան առաջնորդին։

Այս Մատթեոսին Եսայի Նչեցին «մեր յոյժ սիրեցեալ որդի» է կոչում[79] և նրան հասցեագրած իր ուշագրավ թղթի մեջ խորհուրդ է տալիս մերժել ու հալածել ֆռանկ և կաթոլիկ դարձած հայ այն վարդապետներին, որոնք թշնամական գիրք են գրավել Հայոց եկեղեցու նկատմամբ ու հայերին իրենց հավատքից հանելու նպատակ ունեն. «Դարձեալ լսեցաք,—գրում է նա,—թէ սուտ վարդապետք ի Ֆռանկաց յազգէ և այլք ի Հայոց՝ ծաղեր, եկեալ են առ ձեզ, և զՀայոց քրիստոնէութիւնս հայհոյեալ՝ նախատեն զեկեղեցի, և զառաջնորդս ուրանալ տուեալ, բազում հակառակութիւնս յեկեղեցիս ձգեն։ Զայնպիսի հերձուածողսն մի ընդունիցիք ի տունս ձեր, և մի ողջոյն տայք նոցա, և մի առնուք ողջոյն ի նոցանէ, զի ուրացողք են, այլ եղիցին ձեզ իբրև զհեթանոսս և զմաքսաւորս»[80]։

Մատթեոս եպիսկոպոսը պաշտոնավարում է երկար. 1335 թվականից պահպանվել է չափածո մի հիշատակարան, գրված ոմն Գրիգոր երեցի կողմից, որի մեջ գովատանքի ջերմ խոսքերի է արժանանում եռանդուն այս գործիչը։ Նա, որ կարողանում էր «որպէս արծիւ սլանալով առ թագաւոր և ընդ

---

77 Այդ երևում է ստորև վկայակոչվող երկու հիշատակարաններից, որոնք գրված են Զաքարիա եպիսկոպոսի իշխանությունը ճանաչող գավառակիցների կողմից 1. Տեր Տիրացու եպիսկոպոսը՝ Զաքարիայի հաջորդն ու եղբորորդին, 1342 թ. հիշատակված է որպես առաջնորդ Թավրիզ քաղաքի և շրջակայքի («...ի յառաջնորդութեան աստուածապահ նահանգիս Թավրիժու քաղաքիս տէր Տիրացուի եպիսկոպոսի», «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», էջ 331)։ 2. Մարաղայում 1361 թ. ընդօրինակված Աստվածաշնչի հիշատակարանում որպես հոգևոր առաջնորդ դարձյալ հիշատակված են Արտազի եպիսկոպոսները. «...ի հայրապետութեան աթոռակալաց առաքելոյն Թադէոսի տէր Տիրացուի և Զաքարիայի» (Նոր Ջուղա, ձեռ. № 336)։

78 Մատթեոս եպիսկոպոսի մասին անդրանիկ վկայությունը գտնում ենք Եսայի Նչեցու ծանոթ թղթի մեջ, որն ըստ Գ. Հովսեփյանի՝ գրված պետք է լինի կամ 1321 թվականին կամ քիչ առաջ (տե՛ս «Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ», Բ հրատարակություն, Անթիլիաս, 1969, էջ 286—288)։

79 Որոշ ուսումնասիրությունների մեջ ասվում է, թե, իբր, Եսայի Նչեցու գլխավորած Գլաձորյան համալսարանն ավարտել ու վարդապետական գավազան են ստացել 360 անձինք։ Այդ թիվը, սակայն, խիստ չափազանցված է ու չի հիմնավորվում հին աղբյուրներով։ Մխիթարիչ Ապարանեցու «Գիրք ուղղափառաց»-ի մեջ այդ մասին կա ուշագրավ տվյալ. «Մեծ վարդապետն Հայոց Եսայի, որ էր ի Գայլիձորն... տուեալ է գաւազան իշխանութեան վարդապետելոյ զՃ և ԿԷ (167) անձանց» (M. Oudenrijn, նշվ. աշխ., էջ 216)։ Հավանաբար դրանցից մեկն էր Առաքելոց թեմի առաջնորդ դարձած Մատթեոս եպիսկոպոսը։

80 «Ճռաքաղ», 1860—1861, էջ 210։ Հմմտ. Մատենադարան, ձեռ. № 2776, էջ 248ա, № 8245, էջ 170։

իշխան» հոգալ իր վիճակի հայ բնակչության կարիքները, հաջող պայքար է մղում նաև կաթոլիկ քարոզիչների ու նրանց դավանանքն ընդունած հայ գործիչների դեմ.

«Տէրն ոչ արար ընդ մեր մեղացն,
Աստուածութեան կամք քաղցրացան,
Յարույց կրկին կանկնող բնութեանս
Ըստ առաջին Մաթէոսեան,
Լուսաւորիչ սուրբ հաւատոյս
Որպէս Գրիգոր Պարթևական,
Որ զշարժեալ թիւն (խմա՛ թոյնն) մահաբեր
Իմիցն արար փախրատական,
Քաղկեդոնի չար /// անդելով.
Զնեստոր անէր թշուառական»[81]

Այս Մատթեոսին հաջորդած պետք է լինի Արտազի արքեպիսկոպոս և Ս. Թադեի վանահայր կոչված Մեսրոպ վարդապետը: 1335 թ. նա հիշատակված է որպես անվանի քարոզապետ, որի մոտ ուսանելու էին գալիս աշակերտներ նույնիսկ Կիլիկյան Հայաստանից և այլ վայրերից: Սա եպիսկոպոս է եղել 1335 թվականից տարիներ հետո[82], 1359 թ. ընտրվել է կաթողիկոս և աշխույժ գործունեություն ծավալել կաթոլիկ եկեղեցուն արված զիջումներն ի չիք դարձնելու, Հայոց եկեղեցու ազգային դիմապատկերն անաղարտ պահելու ուղղությամբ: Սրա ջանքերով 1361 թ. Սսում գումարվել է եկեղեցական ժողով, որն անվավեր ճանաչելով Սսի և Ադանայի ժողովների որոշումները, իսպառ մերժել է կաթոլիկական նորամույծ ծեսերը[83]. «Եբարձ զչարն ի սուրբ խորհրդոյն և հերքեաց զախտարմայութիւնն, որ մուծեալ էր ի Հայս ի Կոստանդին հերձուածողէն և յՕշին թագաւորէն»—ասում է սրա մասին Սիմեոն Երևանցին[84]:

81 Մատենադարան, ձեռ. № 2776, էջ 262ա:

82 Մեսրոպ քարոզապետի ջանքերով Ս. Թադեի վանքում ստեղծված դպրոցի մասին կարևոր տվյալներ է հաղորդել Հովհան անունով Սսեցի մի երիտասարդ, որ «սակս ուսման» Կիլիկիայից Մեծ Հայք էր եկել, սովորել Գլաձորում, ապա հաստատվել Ս. Թադեի վանքում, դառնալով Մեսրոպի աշակերտը: Ներսես Շնորհալու «Մեկնութիւն Մատթէի աւետարանին» աշխատության իր ընդօրինակության հիշատակարանում Հովհանը գրել է. «Այլ և ես թարմատարս Յոհան աշակերտ բանի յաշխարհէն Կիլիկեցոց, ծնեալ և սնեալ ի մայրաքաղաքն Սիս, եկի յաշխարհս Արևելից՝ տարաշխարհիկ շրջելով սակս ուսման, որ և ուսայ զորն որ յետամնեձէն եսայեալ և է զոր ի մերայս քարոզապետէ Մեսրոպայ, առ ոտս սորա գեգերելով և վարժելով. և տեսի ի մեր լսարանիս զայս լուսաւոր և թուղթմանդայ մեկնիչս, և առաջս զսայ յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց և ուսուցչացս: Արդ գրեցաւ սա ի թվականիս ՉՁԴ (1335), ի յաշխարհիս Արտազ կոչեցեալ, ի հայրապետութեան տեառն Յակոբայ... և յեպիսկոպոսութեան Արտազու և սուրբ առաքելոյն Թադէոսի տէր Զաքարիայի» (Երուսաղեմ, ձեռ. № 1428):

Թերևս նույն այս գրչի մեկ ուրիշ հիշատակարանն է տպագրված Գ. Զարբհանալյանի «Պատմ. հայ դպրության» աշխատության Բ հատորի մեջ (Վենետիկ, 1878, էջ 193—194). այնտեղ ասված է. «Եղեալ թափառական տարագնաց ընթացիք ի կողս կողմանց արևու, և եկեալ առեալ զադարեցի յԱրտազ... գեգերեալ առ ոտս աստուածախօս սուրբ քարոզողս Մեսրոպի»:

83 Մ. Օրմանյան. Ազգապատում, հ 1322:

84 Ջամբռ, Վաղարշապատ, 1873, էջ 17:

Որոշ տվյալներ թույլ են տալիս հանգելու այն եզրակացության, որ Մեսրոպ վարդապետի Արտազի եպիսկոպոս եղած տարիներին, հավանաբար Զաքարիա եպիսկոպոսի մահվանից հետո՝ Ս. Թադեի վանքը դուրս է բերվել Արտազի հայ ավատատերերի իրավասությունից, դառնալով ազգային եկեղեցու ավանդույթներին հավատարիմ եպիսկոպոսի աթոռանիստ։ Արտազի կաթոլիկության հարած եպիսկոպոսները՝ Զաքարիա Ծործորեցու հաջորդները՝ ստիպված տեղի են տվել, ամփոփվելով Մակվի բերդում և Ծործորի վանքում։

Սակայն տվյալներ չեն պահպանվել պարզելու, թե Մեսրոպ վարդապետից հետո ո՛վ է գրավել Արտազի եպիսկոպոսությունն ու Ս Թադեի վանքի վանահայրությունը, գիտենք սակայն, որ 1397 թ. այդ պաշտոնում եղել է Պետրոս անունով մի եպիսկոպոս, որ քահանա է ձեռնադրել էջմիածնի ապագա կաթողիկոս Կիրակոս Վիրապեցուն[85]։ Այնուհետև տեղեկություն ունենք 1426 թվականից, երբ Գրիգոր Մակվեցի Ջալալբեկյանը, ներկայանալով որպես «աթոռակալ սրբոյն Թադէոսի», տեղեկություններ է գրանցում Իսքանդար Կարա-կոյունլուի կողմից Մակվի բերդի գրավման և Արտազի հայկական իշխանության վերացման մասին[86]։

* * *

Զաքարիա եպիսկոպոսը Արտազի հայկական իշխանության սահմաններում 1313—1321 թթ. ընթացքում շարադրված հիշատակարանների մեջ[87] մեծարված է որպես եկեղեցական այդ թեմի և Ս. Թադեի վանքի միահեծան առաջնորդ[88], իսկ 1329 թ. շինարարական ընդարձակ արձանագրության մեջ, ինչպես տեսանք վերը, Զաքարիան գրանցել է տվել նաև իր փոխանորդ կարգված Տիրացու եպիսկոպոսի անունը, որ եղել է նրա եղբորորդին («Եւ զաջորդն՝ մեր աղբաւր որդին՝ զտէր Տիրացուն»)[89]։ XIV դարի 30—40-ական թվական-

85 Այս տեղեկությունը քաղված է Թովմա Մեծոփեցու «Յիշատակարանից», որի տպագրում Պետրոս անվան փոխարեն, հավանաբար վրիպակով, Պողոս է գրված։ Մատենադարանի մեր համեմատած 12 ձեռագրերը, առանց բացառության, այս եպիսկոպոսին Պետրոս են կոչում։

86 Անտեղյակ լինելով Արտազի աթոռի եպիսկոպոսության և Ս. Թադեի վանքի առաջնորդության զույգ պաշտոնների շուրջ XIV դարի ընթացքում հայ եկեղեցու ավանդույթներին հավատարիմ և կաթոլիկ եկեղեցու դավանանքն ընդունած հակընդդեմ խմբավորումների միջև ծավալված պայքարի դրվագներին, պատմագիտական աշխատություններում շփոթել են միմյանց «Թադեոս առաքյալի աթոռակալ» կոչված անձնավորություններին, ապարդյուն փորձեր կատարելով միասնական մի շղթայի մեջ առնելու Զաքարիային ու նրա հաջորդներին՝ մի կողմից և Մաթեոսին ու նրա հաջորդներին՝ մյուս կողմից։

87 Պահպանվել են հիշատակարաններ 1313, 1315, 1318 և 1321 թվականներից, որոնք տպագրված կամ հիշատակված են հետևյալ աշխատությունների մեջ. Ն. Պողարյան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Հակոբյանց, հատոր հինգերորդ, Երուսաղեմ, 1971, էջ 96—97, «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երևան, 1950, էջ 114—115, Մաշտոցի անվան մատենադարան, ձեռ. № 2104, էջ 164բ, Վ. Հացունի, Կարևոր խնդիրներ հայ եկեղեցվո պատմութենէն, Վենետիկ, 1927, էջ 310։

88 1313 թ. Թավրիզում ընդօրինակված Սարգիսգրքի մեջ հիշատակված է նաև ոմն տեր Հակոբ «Յաթոռակալութիւն Բ աթոռոյն Թադէոսի և Բարդողիմէոսի տէր Զաքարիա և տէր Յակոբի» (Ն. Պողարյան, նշվ. աշխ., էջ 96—97)։ Այս Հակոբը, սակայն, Զաքարիային ենթակա մի կղերական է, հավանաբար Սալմաստի առաջնորդ Հակոբ եպիսկոպոսը, որ հիշատակված է նաև Կ. Գալանոսի կողմից՝ որպես Ադանայի ժողովի մասնակից։

89 XIV դարի 40-ական թթ. սկզբներին կաթոլիկների կողմից հայ եկեղեցու վրա բարդված 117 «մոլորությունների ցանկում» կա նաև մի կետ (103-րդ), որով հայերը մեղադրվում են բազմակնության նկատմամբ ներողամիտ լինելու մեջ։ Համառոտելով այդ գրության հիմնական

ների մի շարք հիշատակարաններում, իր մեծանուն հորեղբոր հետ միասին հիշատակվում է նաև այս Տիրացու եպիսկոպոսը, որ ժամանակակիցների կողմից «հեզ և մարդասեր» մակդիրն է ստացել[90]։

Զաքարիայի մահվան թվականը անհայտ է մնում. իր մահկանացուն կնքած պետք է լինի 1340-ական թվականների վերջերին, անտարակույս 1350-ից առաջ, քանի որ այդ թվականի մի հիշատակարանից պարզվում է, որ նա այլևս գոյություն չունի («զհանգուցեալն ի Քրիստոս») և նրան հաջորդել է իր ժառանգ տեր Տիրացուն, «որ է այր բարեխառն և իմաստուն, յոյժ անուանի և ամենեցուն մեծամեծաց սիրելի»[91]։

Մինչև Տիրացու եպիսկոպոսի ու նրան հաջորդող Արտազի հայ հոգևոր ու աշխարհիկ տերերի գործունեությանն անդրադառնալը, անհրաժեշտություն է զգացվում հակիրճ մի ամփոփումով փակել Զաքարիա եպիսկոպոսին նվիրված այս դրվագը։

Գրեթե մի ամբողջ հիսնամյակ իշխելով որպես Առաքելոց թեմի եպիսկոպոս և Արտազի շրջանի ավատատեր դարձած հայ գերդաստանի նահապետ՝ պարոնտեր Զաքարիա Ծործորեցին զգալի դեր է կատարել Հայաստանի քաղաքական ու մշակութային կյանքում։ Ընդառաջելով Կիլիկյան Հայաստանի արքունի տան անդամների ու բարձրաստիճան հոգևորականության լատինամոլ քաղաքականությանը, նա դարձել է նրանց ձայնափողը Մեծ Հայքում, պայքարելով Հայոց եկեղեցու ինքնուրույն գոյությունը ամրապնդել ցանկացող և ազգային ավանդույթներին հավատարիմ մնացած քաղաքական ու եկեղեցական գործիչների դեմ։ Իր գործունեության առաջին երեք տասնամյակների ընթացքում նա հաջողություններ է ունեցել։ Հավատ ընծայելով եվրոպական երկրներից քաղաքական ու ռազմական օգնություն ստանալու սին ու պատիր խոստումներին, Արտազի շրջանի և շրջակա նահանգների քաղաքային բնակչության որոշ խավեր (մասնավորապես եվրոպական երկրների հետ առևտրական կապեր ունեցող և քարավանային առևտրի մեջ ներգրավված վաճառականներ ու արհեստավորներ), ընդունել են կաթոլիկ դավանանք և ճանաչել Արտազի արքեպիսկոպոսին՝ որպես իրենց հոգևոր առաջնորդ։ Զաքարիա Ծործորեցին, իր գերդաստանի իշխանազուն անդամների գործակցությամբ, թերևս նաև Կիլիկիայից ու եվրոպական երկրներից նյութական օժանդակություն ստանալով, Արտազի շրջանում ծավալել է շինարարական աշխույժ գործունեություն։ Կառուցել է Ծործորի վանքը, ստեղծելով այնտեղ վանական դպրոց և մշակութային աշխատանքների համար նպաստավոր պայմաններ[92], վերաշինել է Ս. Թադեի երկրաշարժից գրեթե հիմնահատակ կոր-

մասերը Մ. Օրմանյանն այսպես է ձևակերպում մեզ հետաքրքրող հատվածը. «Հայերը... ապօրէն զաւակները իբր օրինավոր ժառանգ կընդունէին, և մինչև իսկ այնպիսիները եպիսկոպոսութեան կը բարձրացնէին. և օրինակ կը բերեն Զաքարիայի եղբօր ապօրէն զաւակը, որ հօրեղբօր տեղը եպիսկոպոս ձեռնադրեցաւ» («Ազգապատում», § 1305)։

Եթե այս վերաբերում է Զաքարիա Ծործորեցուն, ապա պետք է հետևցնել, որ 1329 թ. նրա հետ միասին Արտազի եպիսկոպոս կոչված տեր Տիրացուն, Զաքարիայի եղբայրներից մեկի (հավանաբար՝ պարոն Պետրոսի) ապօրեն զավակն է եղել։

90 Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 227, 282 և Քեոփյան, Ցուցակ, էջ 579։

91 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 385։

92 Զաքարիա եպիսկոպոսն անձամբ զբաղվել է մատենագրական աշխատանքներով, որպես մեկենաս զարկ տվել ինքնուրույն ու թարգմանական երկերի ստեղծման, ձեռագրերի բազմացման աշխատանքներին։ Նրա գործունեության այս բնագավառին անդրադառնալու ենք Ծործորի վանքին նվիրված դրվագի մեջ։

ծանված վանքը և այլ վանքեր ու եկեղեցիներ, բարեկարգել Արտազի շրջանով անցնող միջազգային նշանակություն ունեցող ճանապարհը՝ կառուցելով գեղեցիկ կամուրջներ և այլն։

1320-ական թվականներին, երբ կաթոլիկ քարոզիչների քայքայիչ աշխատանքը նոր թափ է ստանում Հայաստանում, ազգային եկեղեցու ինքնուրույն գոյության անհրաժեշտությունը գիտակցող հայրենասեր գործիչները, Եսայի Նչեցի րաբունապետի գաղափարական ղեկավարությամբ, հակագրոհի են անցնում։ Շուտով Զաքարիա եպիսկոպոսի իրավասությունից դուրս է բերվում Իլխանության մայրաքաղաքն ու ողջ Ատրպատականը. Թավրիզում ստեղծվում է Արտազի թեմին հակադրվող, Թադեոս առաքյալի անունը իրեն վերապահող եկեղեցական նոր թեմ, կաթոլիկության ակնհայտ թշնամի Մաթեոս եպիսկոպոսի աթոռակալությամբ։ 1340-ական թվականներին Առաքելոց եպիսկոպոսի հոգևոր իշխանությունից դուրս է բերվում նաև Ս. Թադեի վանքը. Արտազի կաթոլիկ դարձած տերերը ավելի են սեղմում իրենց գործունեության շրջանակները՝ տեղի տալով ազգային եկեղեցու սկզբունքներին հավատարիմ կուսակցության գրոհներին։ Եվ այսպես, Արտազի եպիսկոպոս Զաքարիա Ծործորեցու հաջորդներին ժառանգություն է մնում բզկտված եկեղեցական մի թեմ, որ սահմանափակվում է Մակվի բերդի և Ծործորի վանքի անձուկ շրջանակներով։ Սրանց հոգևոր առաջնորդությունը՝ Մակվի իշխանության սահմաններից դուրս ճանաչում են միայն Ատրպատականի հայաբնակ շրջանների կաթոլիկ դավանանք ընդունած հայ բնակիչները։

6. Արտազի իշխանությունը Զաքարիա եպիսկոպոսից հետո.—Զաքարիայի հաջորդ Տիրացու եպիսկոպոսը, որին պատշաճ է Տիրացու Բ անունը տալ (տարբերակելու համար XIII վերջերին ապրած նույնանուն գործչից), աթոռակալել է իր հորեղբոր հետ միասին արդեն 1329 թվականից. Զաքարիայի մահվանից հետո, մի քանի տարի միայնակ վարել է Արտազի և Ատրպատականի մյուս հայաբնակ շրջանների հայ կաթոլիկների առաջնորդի պաշտոնը. 1350 թ. շարադրված մի հիշատակարանի գրիչ մաղթում է սրան իշխել երկար տարիներ «ի պայծառութիւն սուրբ եկեղեցոյ և ջահ լուսատու լինել բանիւ և գործով նուաղեալ ազգիս մերոյ, հանդերձ հարազատ եղբար[բ]ք իւրովք, այլ և նախնեօք հարց և հաւուց և ամենայն արեան մերձաւորօք՝ կենդանեօք և հանգուցելովք»[93]։ 1361 թվականից տեղեկություն ունենք, որ Տիրացու Բ եպիսկոպոսը իր մերձավոր ազգականներից մեկին՝ Զաքարիա անունով՝ կարգել է իրեն փոխանորդ[94]։ Համբավավոր իր նախորդի անունը ժառանգած այս Զաքարիա եպիսկոպոսը հիշատակվում է նաև 1392 թ. շարադրված երկու հիշատակարաններում՝ որպես Թադեոս առաքյալի վիճակի հայրապետ[95] և Արտազի գավառի պարոնտեր։ Նրա Մխիթարիչը Սաղմոսի

93 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 385։

94 Այս տեղեկությունը գտնում ենք Մարաղայում մի կաթոլիկ հայի ընդօրինակած Աստվածաշնչի հիշատակարանի մեջ, ուր ասված է. «Գրեցաւ աստուածաշունչս... ի քաղաքիս Մարաղա, ի մարդեղութեան Քրիստոսի ՌՅԿԱ (1361) և ի թվ. Հայոց ՊԺ, ի թագաւորութեան սուլթան Վաիսին և ի հայրապետութեան աթոռակալաց առաքելոյն Թադէոսի տէր Տիրացուի և տէր Զաքարիայի» (հիշատակարանը քաղել ենք Մ. Տեր-Մովսիսյանի կազմած հայերեն ձեռագրերի անտիպ ցուցակից)։

95 Վ. Հացունի, նշվ. աշխ., էջ 310։

մեկնության այդ թվականին ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում հայտնում է, որ «Շտապով գրեցի զսա ի գաւառս Արտազու, ի գեօղս որ կոչի Մակու, առ պարոնութեամբ տէր Զաքարիայի մեծ կրաւնաւորի»[96]: Սրանից պարզվում է, որ Տիրացու Բ եպիսկոպոսը վաղուց արդեն հեռացել էր կյանքից, ասպարեզը թողնելով իր հաջորդ Զաքարիա Բ եպիսկոպոսին:

Պատմական այս ժամանակաշրջանում գոյություն ունեցող հայ փոքրաթիվ և ուժասպառ հայ ավատատերերը պատսպարում էին իրենց տիրույթները վանական (վակֆային) հողատիրության ցուցանակով: Պետական ատյանների առջև ավելի հաճախ ներկայանում էր ավատատեր գերդաստանի հոգևորականի սքեմ հագած ներկայացուցիչը, հանդիսանալով վանական հաստատությունների վակֆ արված կալվածքների պաշտոնական տնօրենը, սակայն ավելի հաճախ տվյալ գերդաստանին պատկանող կալվածքների տնտեսական գործերի տնօրինությունն իրագործում էր նույն գերդաստանի աշխարհական տանուտեր-իշխանը:

Զաքարիա Բ եպիսկոպոսի աթոռակալության տարիներին, մասնավորապես XV դարի սկզբներին, Արտազի շրջանի հայկական իշխանության տիրակալը՝ պարոն Նուրադինն էր: Ֆրա Մխիթարիչի ընդօրինակած վերոհիշյալ ձեռագրի մեջ 1406 թ. գրանցված մի հիշատակարանում այս իշխանի մասին կարդում ենք. «Ի գաւառս Արտազու, ի գիւղս որ կոչի Մակու, առ պարոնութեան պարոն Նուրադնի»[97]:

Արտազի հայկական իշխանության վիճակի, պարոն Նուրադնի ու նրա որդիների, Մակվի բերդի անառիկ ամրությունների և հարակից հարցերի մասին բացառիկ հետաքրքրություն ունեցող տվյալներ է հաղորդում Սպանիայի Հենրիկոս Գ թագավորի դեսպան, մեզ ծանոթ Ռուի Գոնսալես դե Կլավիխոն, որ 1403—1406 թթ. անցել է Հայաստանով և ուշագրավ տեղեկություններ գրանցել իր տեսածի ու լսածի մասին՝ «Մեծ Թամերլանի պատմություն» (Historia del gran Tamerlan) խորագիրը կրող ճանապարհորդական իր նոթերի մեջ: Այս աշխատության 78-րդ հատվածն ամբողջապես նվիրված է Մակվի հայկական իշխանության պատմությանը և ժամանակակից վիճակի նկարագրությանը:

Ստորև մեջ ենք բերում այդ հատվածը՝ գրեթե ամբողջությամբ (բաց թողնելով Մակվի բերդի գեղեցիկ նկարագրությունը, որի մասին խոսք է եղել նախորդ էջերում).

«Կիրակի, հունիսի 1-ին (1404 թ.)՝ երեկոյան ժամերգության պահին նրանք (այսինքն՝ ինքը՝ Կլավիխոն և իր շքախմբի անդամները—Լ. Խ.) հասան մի ամրոց, որ Մակու էր կոչվում և այդ ամրոցը պատկանում էր Նորադին անունով մի կաթոլիկ քրիստոնյայի, և (ամրոցի) բոլոր բնակիչները նույնպես կաթոլիկ քրիստոնյաներ էին, թեև ծագումով հայ էին և իրենց լեզուն էլ հայերենն էր, սակայն նրանք գիտեին և թաթարերեն և պարսկերեն: Այդ վայրում կար սուրբ Դոմինիկի եղբայրների մի վանք[98]: Ամրոցը կանգնած է բարձր

96 «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Ա, Երևան, 1955, էջ 61:

97 Նույն տեղում, էջ 61:

98 Խոսքը, անշուշտ, Ծործորի վանքի մասին է, որ XIV դարի առաջին կիսամյակում ֆրանցիսկյան միաբանության ազդեցության տակ էր գտնվում, բայց հետագայում՝ Նախիջևանի շրջանում դոմինիկյանների հաստատվելուց հետո, ամբողջապես ընկավ նրանց ազդեցության տակ:

լևան սարերում գտնվող հովտի մի անկյունում...[99]: Ամրոցի ներսից սկիզբ է առնում մի հորդ աղբյուր, որի ջրից օգտվում է ժողովուրդն ու ջրում բազմաթիվ պարտեզները[100]: Ամրոցի ստորոտում տարածված է շատ գեղեցիկ մի հովիտ, որի միջով անցնում է գետը. այն ծածկված է որթատունկերով ու մշակված արտերով:

Թամուրբեկը հարձակվել է այս ամրոցի վրա, բայց չի կարողացել գրավել. ուստի պայմանագիր է կնքել տեղի իշխանի հետ, որի համաձայն նա պարտավորվել է, ըստ պահանջի տրամադրել նրան (Թամուրին) քսան հեծյալ: Սրանից ոչ շատ ժամանակ անց Թամուրբեկը զորքով անցնելիս է եղել նրա (Մակվի) մոտով. ամրոցի իշխանը կանչել է շուրջ քսան տարեկան իր որդուն, հանձնել նրան երեք լավ թամբած ձիեր, որպեսզի նա տանի դրանք Թամուրբեկին նվեր: Երբ Թամուրբեկը հասնում է ամրոցի ստորոտ, իշխանի որդին դուրս է գալիս և իր հոր անունից առաջարկում (նվեր ընդունել) այդ ձիերը: Նա ընդունում է և հրամայում, որ այդ ամրոցին պատկանող հողերին իր զորքը պետք չէ որևէ վնաս հասցնի: Այնուհետև Թամուրբեկն ասում է. քանի որ այս ամրոցի իշխանն ունի այսպիսի մեծ որդի, պատշաճ չէ նրան իր մոտ պահի. և նրան (որդուն) տանում է իր հետ: Հետագայում նա նրան հանձնում է Օմար-Միրզա կոչվող իր թոռանը, որպեսզի նա ապրի նրա մոտ, քանի որ նա (Օմար-Միրզան) Պարսկաստանի և այդ երկրի կառավարիչն էր: Եվ այժմ էլ նա ապրում է նրա մոտ և ծառայում այդ թագավորի զորքերում: Այդ թագավորը քանի ստիպել է ամրոցի իշխանի որդուն դառնալ մահմեդական (մավր), տվել է նրան Սորղաթմիշ անունը և դարձրել իր թիկնապահը: Եվ չնայած նա այսպիսով մահմեդական է դարձել, սակայն իր կամքով չէ մահմեդական և մահմեդական չէ իր վարվեցողությամբ:

Դեսպանները լավ ընդունելություն գտան այդ ամրոցի իշխանի կողմից, որին շատ հաճելի էր նրանց քրիստոնյա լինելը: Նա հյուրամեծար ընդունեց նրանց ու պատմեց, որ մի երկու շաբաթ դրանից առաջ Թամուրբեկի զարմիկ Յասան Միրաշան[101], որ նրա մերձավորներից էր, մարդ էր ուղարկել պահանջելու, որ նա ընդունի իրեն ամրոցում, որովհետև ցանկություն ունի այնտեղ պահելու իրեն պատկանող ինչ-որ գանձ: Նա պատասխանել է, որ չի ընդունի նրան, բայց եթե նա ունի պաշտպանության կարոտ գանձ, ապա թող հանձնի իրեն, և ինքը լավ կպահպանի. դրանից հետո նա այդ մասին այլևս ակնարկ չի արել:

Դեսպանորդներն այդտեղ (Մակվում) մնացին իրենց եկած օրը: Հետագայում, Պարսից թագավորի բանակատեղում նրանք հանդիպեցին այդ ամրոցի իշխանի որդուն և զրույց ունեցան նրա հետ: Այդ (Նուրադին) իշխանն ու-

99 Ինչպես ասացինք վերը՝ բաց ենք թողնում Մակվի ամրոցի նկարագրությունը, որ տրված է վերը (տե՛ս էջ 141): Մակվի այս նկարագրությունը «История Азербайджана» գրքում (том I, Баку, 1958, էջ 215), անգիտությամբ ադրբեջանական ամրոցի նկարագրություն է համարվել, ըստ այդմ հայ իշխան Նուրադինը՝ ադրբեջանցի ֆեոդալ ներկայացվելով:

100 Այս աղբյուրը սկիզբ է առնում ժայռի մեջ եղող մի մեծ (շուրջ 180 մետր երկարություն և 45 մետր լայնություն ունեցող) քարայրից, որը բնական պահեստի դեր է կատարել բերդի բնակիչների համար, իսկ հետագայում, քաղաքական հանցագործների համար բանտարկելության ապահով վայր դարձել: Քարայրի արդի վիճակը նկարագրված է Վ. Մինորսկու կողմից («Древности Маку», էջ 4—5):

101 Հ. Հակոբյանի թարգմանության մեջ այս անունը տառադարձված է «Ջահան Շահ Միրզա» ձևով, որ, իհարկե, ճիշտ չէ: Հավանաբար պետք է կարդալ՝ Հասան-Միրանշահ:

ներ սրանից երիտասարդ մի այլ որդի ես. և նա դեսպաններին ասաց, որ այդ որդին գիտնական է, լավատեղյակ իր լեզվին, և եթե կամքն աստծո նրանք վերադառնան, ապա նա նրանց հետ (Եվրոպա) կճանապարհի իր այդ որդուն, որպեսզի նրանք տանեն նրան (Սպանիայի) թագավորի մոտ, որպեսզի թագավորի հանձնարարությամբ պապը նրան այս երկրի եպիսկոպոս ձեռնադրի։ Հիրավի շատ զարմանալի է, որ այդ ամրոցը գոյատևում է քրիստոնյաներից այդքան հեռու, ամեն կողմից շրջապատված լինելով մահմեդականներով[102]։

Զարմանալի է նաև, որ նրանք լինելով հայ՝ դառնում են կաթոլիկ, դրանով գոհացում տալով աստծուն»[103]։

Կլավիխոյի «Ուղեգրության» ընդարձակ այս հատվածը հնարավորություն է ընձեռում պարզելու Արտազի հայկական իշխանության վիճակն սկսած XIV դարի 80-ական թվականներից։ Լանկ-Թամուրի արշավանքի մասին տեղեկությունը, անշուշտ, վերաբերում է 1386—1387 թվականներին, երբ կաղ աշխարհակալի զորաբանակները, Թավրիզը գրավելուց հետո սկսեցին իրենց ասպատակությունները Ատրպատականի և Հայաստանի բարեբեր շրջաններում։ Հայկական շատ բնակավայրեր ուժեղ դիմադրություն ցույց տվեցին. Կողբ գյուղի բնակիչները, քաջարի տանուտեր Մարտիրոսի գլխավորությամբ, դիմադրեցին Լանկ-Թամուրին «մեծաւ պատերազմաւ և սրտապինդ զօրութեամբ»[104]։ Դիմադրություն կազմակերպեցին նաև Սուրմարի բերդաքաղաքի, Օրբելյանների իշխանանիստ Շահապոնք ամրոցի, Բջնիի, Երևանի և շատ այլ վայրերի բնակիչներ։ Կլավիխոյի շարադրանքից պարզվում է, որ Մակվի բերդը պաշարելուց հետո, երբ ակնհայտ է դառնում նրա անառիկ լինելը, Թամուրը գերադասում է համաձայնության գալ Նուրադին իշխանի հետ, ճանաչել նրա իշխանությունն Արտազի շրջանի վրա, պայմանով, որ ըստ պահանջի իրեն տրամադրվի 20 հեծյալից բաղկացած մի ջոկատ։ «Սրանից ոչ շատ ժամանակ անց»,—ինչպես ասում է Կլավիխոն,—Լանկ-Թամուրը կրկին հայտնվում է այս կողմերում և իր մոտ պատանդ վերցնում Արտազի իշխանի երիտասարդ որդուն՝ Սորղաթմիշին։ Այս դեպքը կատարված պետք է լինի

102 Տեղին է այստեղ մեջ բերել նաև Հանս Շիլտբերգերի վկայությունը Մակվի հայ կաթոլիկների մասին, որ վերաբերում է գրեթե նույն ժամանակներին։ Շիլտբերգերը, գերի ընկնելով մահմեդականների ձեռքը, XIV դարի վերջերին և XV-ի սկզբներին շրջել է Մերձավոր Արևելքի երկրներում, Հայաստանում և Իրանում, առիթ է ունեցել շփվելու հայերի հետ, նույնիսկ սովորել է հայերեն և կարևոր տվյալներ գրանցել մեր ժողովրդի սովորությունների ու հավատքի մասին։ «Կա նաև մի քաղաք,—գրում է նա,—ընկած մի լեռան վրա և կոչված Մակու. այստեղ հռոմեական դավանանքի մի եպիսկոպոսություն կա. նրա քահանաները պատկանում են դոմինիկյան միաբանությանը, բայց երգում ու խոսում են միայն հայերեն լեզվով» (Hans Schiltbergers Reisebuch... Tübingen, 1885, էջ 58։ Հմմտ. նաև՝ „Путешествия Ивана Шильтбергера по Европе, Азии и Африке, с 1394 по 1427 год“, пер. с немецкого и снабдил примечаниями Ф. Брун. Одесса, 1866, էջ 49)։ Շիլտբերգերի ռուսերեն թարգմանիչ Ֆ. Բրունը հայերին վերաբերող էջերի թարգմանության ու ծանոթագրության ժամանակ դիմել է Գաբրիել Այվազովսկու օգնությանը. վերջինս, անտեղյակ սկզբնաղբյուրների մեջ առկա տվյալներին, վճռականորեն հայտարարել է, որ Մակվում կաթոլիկ դավանանքի հայերի մասին տեղեկությունները սխալ են։ Ֆ. Բրունը, սակայն, հենվելով Կլավիխոյի վրա հավատ է ընծայել ճշմարտապատում Շիլտբերգերին։

103 Рюи Гонзалес де Клавихо, նշվ. աշխ., էջ 158—162։

104 Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց, արարեալ Թովմա վարդապետի Մեծոփեցւոյ, Փարիզ, 1860, էջ 18։

աշխարհակալ բռնավորի ձեռնարկած երրորդ մեծ արշավանքի սկզբներին՝ 1399 թվականին, երբ նրա զորքերը մտնելով Անդրկովկաս, մինչև հաջորդ տարվա ամռան ամիսները ավերում, գերում ու կողոպտում էին Վրաստանի և հյուսիսային Հայաստանի շրջանները։

Դառնալով Ատրպատականի տիրակալ կարգված Միրզա-Օմարի թիկնապահ, հայ իշխանազուն Սորղաթմիշը ստիպված է լինում առերևս ընդունել մահմեդականություն։ Այս մասին տեղեկություն է հաղորդել նաև Թ. Մեծոփեցին՝ ասելով, որ քրիստոնյաների նկատմամբ թշնամական գիրք գրաված Թամուրյան այս ամիրզադան «յառաջին ամի իշխանութեան իւրոյ երեք (իմա՛ չորս—Լ. Խ.) իշխան յազգէս մերմէ, որք իբրև զճիռ մի ողկուզաց էին մնացեալ ի մէջ ազգիս, դարձոյց բռնութեամբ ի յանհաւատութիւն»[105]։ Այդ իշխաններն էին՝ Որոտանի տեր Բուրթել Օրբելյանը՝ իր Սմբատ եղբոր հետ միասին, Եղեգիսի տեր Գորգուն Օրբելյանը, Աղցք գյուղի տեր Աղիտանը և Մակվի տեր Սորղաթմիշը[106]։

Սրանից հաջողվում է քրիստոնյա ապրելու արտոնություն ստանալ Թամուրյանների պարտությունից հետո՝ 1408 թվականին, երբ Հայաստանում հաստատվում են Ջելաիրյանները, դաշնակից ունենալով Կարա-կոյունլու թուրքմենական ցեղի առաջնորդներին։ «Եւ մարդիկ,—հայտնում է այդ մասին Թ. Մեծոփեցին,—որք յաւուրս չաղաթային ի հաւատոյ ուրացեալք էին, եկին ի հաւատս՝ Բուռթէլն Որոտնայ, Տարսայիճ՝ Եղեգեաց, Սուրղաթմիշ՝ Մակուայն, Աղիտան՝ Աղցից»[107]։

Թ. Մեծոփեցին Սորղաթմիշին ճանաչում է որպես «տէր Մակուայ»։ Ե՞րբ է Նուրադինը մահացել և ե՞րբ իշխանությունն անցել Սորղաթմիշին, ճշգրիտ որոշելու հնար չունենք. կարելի է ենթադրել, որ այդ տեղի է ունեցել շուրջ 1408—1410 թթ. հետո. երբ Մեծ Հայքի կենտրոնական նահանգների վրա իր տիրապետությունը հաստատեց Կարա-Յուսուֆ Կարա-կոյունլուն, Մակվում իշխում էր արդեն Սորղաթմիշը։ Կարելի է հավանական համարել և այն ենթադրությունը, որ Արտազի վերջին այս իշխանի գործունեության տարիներին՝ նրա հետ միասին, որպես նույն շրջանի հոգևոր առաջնորդ, իշխում էր նրա կրտսեր եղբայրը՝ անանուն այն իշխանազունը, որին Նուրադինը ցանկանում էր ուղարկել պապի մոտ Արտազի եպիսկոպոս ձեռնադրելու համար[108]։

Կարա-Յուսուֆի մահվանից հետո իշխանության գլուխ անցած Իսքանդար Կարա-կոյունլուն 1422—1427 թթ. եռանդուն քայլերի է դիմում իր պետության սահմաններում գտնվող կիսանկախ ամիրությունների վերացման,

105 Թ. Մեծոփեցի, էջ 67—68։

106 Թ. Մեծոփեցին ասում է. «...և զտէրն Մակուայ հանին ի սուտ և յերկաբնակ աղթարմայութենէն» (այսինքն՝ կաթոլիկ դավանանքից հանելով՝ դարձրին մահմեդական)։ Այս իշխանի անունը՝ «Սորղաթմիշ Մակուայն»՝ Մեծոփեցին նշում է մի այլ տեղ, երբ խոսում է բռնի ուրացված վերոհիշյալ իշխանների կրկին քրիստոնյա դառնալու մասին (տե՛ս ստորև)։

107 Թ. Մեծոփեցի, էջ 73 (հմմտ. նաև Լ. Խաչիկյան, Սյունյաց Օրբելյանների Բուրթելյան ճյուղը, «Բանբեր Մատենադարանի», № 9, 1969, էջ 180—182)։

108 Տեսանք, որ Արտազի նախկին եպիսկոպոսները՝ փոխնիփոխ կոչվում էին Տիրացու (Ա), Զաքարիա (Ա), Տիրացու (Բ), Զաքարիա (Բ)։ Ելնելով այս փաստից անանուն այս պարոնտերին կարելի է կոչել Տիրացու Գ։ Հենց այստեղ նշենք, որ Զաքարիա Ծործորեցուց կամ, թերևս, Տիրացու Բ-ից հետո Արտազի եպիսկոպոս դարձած լատինադավան այս եպիսկոպոսները, ինչպես պարզ երևում է Կլավիխոյի վերոհիշյալ տվյալներից, ձեռնադրվում էին Հռոմի եկեղեցու վեհապետից, իրենց բոլոր կապերը խզած լինելով Հայոց եկեղեցուց։

այլազգի ֆեոդալներին պատկանող տիրույթների բռնագրավման ուղղությամբ։ Նա վճռական մարտեր է մղում հատկապես Բաղեշում, Խլաթում, Ոստանում, Վանում, Խիզանում և այլ վայրերում ինքնավար իշխանություններ ստեղծած քուրդ ամիրների դեմ, որոնք հաճախ հանդես էին գալիս թշնամիների բանակում և դժկամությամբ էին ենթարկվում կենտրոնական իշխանության հրահանգներին։ Այս պայքարի ընթացքում՝ 1426 թ. վերջ է տրվում նաև Արտազի իշխանությանը, որ գոյատևել էր շուրջ մեկուկես դար, կարևոր դեր կատարելով հայ բնաշխարհի քաղաքական ու մշակութային կյանքում։

Ապավինելով բերդի անառիկ նկատվող ամրություններին Մակվի հայ իշխանները, անտարակույս, ուժեղ դիմադրություն պետք է կազմակերպած լինեին. այդ մասին, սակայն, տեղեկություններ չեն պահպանվել։

Մակվի բերդի գրավման և Արտազի իշխանության վերացման մասին անդրանիկ վկայությունը գրանցել է Ս. Թադեոս առաքյալի վանքի առաջնորդ Գրիգոր Մակվեցի Ջալալբեգյանը, որ հետագայում հաստատվեց էջմիածնի վանքում և դարձավ Ամենայն Հայոց կաթողիկոս։ Երուսաղեմի մատենադարանի № 1582 ձեռագրի 342-րդ էջի վրա նա գրել է.

«Ի յայսմ ամի թուականի՝
Յութ հարիւր ու եւթանասնի,
Հընկից թուից եւ աւելի (1426 թ.)՝
Յարեաւ հօղմն մրրկի,
Սքանդար անուն յազգէ թուրքի
Էառ զդղեակն Վանայ,
Նաև զՄակուա և զՆվանա»[109]։

Երկու տարի հետո, նույն ձեռագրի մեջ գրանցած ընդարձակ հիշատակարանում, Ս. Թադեի առաջնորդ եպիսկոպոսը ավելի հանգամանորեն է անդրադարձել Մակվի անկման և Արտազի հայկական իշխանության բարձման դեպքերին, անսքող բացահայտելով իր թշնամական դիրքը Մակվի «աղթարմա» (այսինքն դավանափոխ եղած—կաթոլիկ դարձած) տերերի նկատմամբ, որոնք Ս. Թադեի վանքից տարել էին իրենց միջոցներով կառուցել տված դուռը (հավանաբար՝ գեղեցիկ մի հորինվածք), մեծ զանգակը, ժամատան դերանները և շարժական այլ իրեր. լինելով Արտազի շրջանի իշխաններ, նրանք միաժամանակ թույլ չէին տալիս վերաշինել վանքը, և այլ դժվարություններ էին հարուցում ազգային եկեղեցու ավանդություններին հավատարիմ մնացած եկեղեցականների առջև և այլն։ Նկատի ունենալով Գր. Մակվեցու այս հիշատակարանի կարևորությունը՝ ստորև մեջ ենք բերում գրեթե ամբողջությամբ.

«Արդ՝ եղեւ գրութիւն սորա ի թվականութեանս Հայոց Մեծաց ի ՊՀԷ (1428), ի մայրաքաղաքի որ այժմ Դավրէժ կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարին, զի անդ սկսայ եւ փոքր ինչ գրեցի, եւ եկեալ առ ոտս սուրբ առաքելոյս Թադէոսի աւարտեցի՝ ի սոյն ամի, որում էառ Ըսքանդար անուն ամն բռնաւոր, որդի Ղարա-Իւսուֆին, զանառիկ ղղեակն Մակուա, եւ զերկարնակ ուրացող ազգն ախթարմայից տարագիր եւ տարաշխարհիկ արար ի վերայ երկրի, եւ կատարեցաւ բանն տեառն, զի զչարքն չարեաւ կորոյս, եւ զայգին ետ այլոց մշակաց։

109 Նորայր եպս. Պողարյան, Մայր ցուցակ սրբոց Յակոբեանց, հատոր հինգերորդ, Երուսաղեմ, 1971, էջ 368։

Որ և ես նուաստից նուաստս, և տրուպս ամենայնի Գրիգոր անձն եղկելի՝ գծող սմին, ի վաղուց հետէ փափաքէի շինութեան առաքելական սուրբ աթոռոյս մերոյ, և ոչ տային թոյլ նախատացեալ ներհակքն բնակիչքն Մակվայ, որ և կրկին վայ եկն ի վերայ նոցայ և երարձ գիշխանութիւն նոցա ի յԱրտազ գաւառէ, և ետ շխ Բայազիթ ումն այլազգոյ, և որ յառաջասացեալ չարքն բարձեալ էին ի դրանէ սուրբ առաքելոյս և տարեալ թաապութեամբ և նախանձու, սա դարձեալ ի տեղի իւր եբեր մեծաւ յօժարութեամբ և հնազանդութեան սիրով՝ զդուռն եկեղեցոյս, և զմեծ զանկակն, և զգերան ժամատանս, և այլ ամենայն կերպիւ անխաթ և ողորմութիւն, զոր ի մարդապաշտ անիծեալ յազգէն յայն ոչ տեսաք ամենևին, զոր սա արար. որ և ըստ հնազանդութեան իւրոյ զհատ[ուց]ումն ի մարմնաւորս առցէ՝ զառողջութիւն և զդաւլաթ»[110]։

Հազիվ թե հնարավոր լինի չարախինդ այս տողերը հասարակական կարծիքի բնորոշ արձագանք համարել. Ս. Թադեի վանքի առաջնորդը, ինչպես ասացինք, ուներ նաև անձնական հաշիվներ Մակվի «ախթարմա» տերերի հետ։

Արտազի հայկական իշխանության անկման տխուր փաստին անդրադարձել են նաև այլ ժամանակակիցներ, և հատկապես՝ աղթամարցի բազմաշխատ գրիչ Թովմա Մինասենցը իր ընդարձակ հիշատակարաններից մեկում, որ իրավամբ ճանաչված է որպես ժամանակագրություն. «Իսկ ի յՊԶԶ (1427) թվին,—գրել է նա,— էառ նոյն Սքանդարն զանառիկ բերթն Մակուայ ի ձեռաց քրիստո[նէ]ից... և անմխի[թ]ար կրա[կ]իծ ե[հ]աս բոլոր ազգացս քրիստոնէից, զի բոլոր աշխարհացս այն մին բերթն միայն էր մնացեալ ի ձեռս քրիստոնէից, և այն ես առաւ ի մէնջ»[111]։

Խորը կսկիծով են շաղախված այս տողերը. հայրենասեր գործիչը ողբում է կենտրոնական Հայաստանում իր գոյությունը պահպանած հայկական վերջին այս իշխանության բռնագրավումը օտար տիրակալների կողմից, հավատքի ու դավանանքի հարցերը մեկ կողմ նետելով։

Սորղաթմիշը Արտազի իշխանական գերդաստանի վերջին ներկայացուցիչն է, որ հիշատակված է սկզբնաղբյուրներում։ Մակվի բերդի անկումը և կաթոլիկ հայ տերերի իշխանության բարձումը տեղի է ունեցել, հավանաբար, հենց Սորղաթմիշի օրոք։ Մեծ հավանականությամբ սրա ազգականներն ու հաջորդները որպես գյուղատեր-կալվածատերեր, շարունակել են իրենց գոյությունը պատմա-աշխարհագրական այդ միջավայրում նաև հետագա մեկ-երկու դարերի ընթացքում։ Այդ բնաշխարհի հայկական հուշարձանների, մանավանդ վիմական արձանագրությունների մանրակրկիտ ուսումնասիրությամբ կարող են ի հայտ բերվել Արտազի հայ ավատատերերի նոր անուններ, ինչպես և նոր տվյալներ արդեն հայտնի անձնավորությունների մասին։ Այդ աշխատանքը թողնելով մեր հաջորդներին, սոսկ փորձելու ենք տոհմաբանական մի ծառ կազմել՝ ներառնելով նրա մեջ Արտազի հոգևոր և աշխարհիկ տերերի ընտանիքին պատկանող ու մեզ հայտնի բոլոր անձանց անուննե-

110 Ն. Պողարյան, նշվ. աշխ., էջ 368։ Հմմտ. նաև «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Ա, էջ 353 (այս հրատարակությունը, որ կատարված է Մ. Տեր-Մովսիսյանի ընդօրինակությունից, ունի սխալ ընթերցումներ ու բացթողումներ)։

111 «ԺԵ դարի հիշատակարաններ», մասն Ա, էջ 376։

րը. խորհում ենք, որ այն կարող է իր նպաստը բերել որպես շարադրված նյութի հակիրճ ամփոփում (տե՛ս հաջորդ՝ 166 էջը)[112]։

1426 թվականից հետո Մակվի նշանավոր բերդը դառնում է Կարա-կոյունլու թուրքմենների կարևորագույն ամրություններից մեկը։ Ջհանշահ փադիշահի (1437—1467) անհնազանդ որդիներից Հասան-Ալին երկար տարիներ արգելափակված էր անմատչելի այս բերդում։ Իր հոր սպանությունից հետո, նա, որ «ի Մակու էր ի զընդան», ազատ է արձակվում և պատրաստվում դիմագրավելու Աղ-կոյունլու Ուզուն-Հասանի հաղթականորեն առաջ շարժվող զորքերին, սակայն պարտություն է կրում և նրանով էլ վերջ է տրվում Կարա-կոյունլուների տիրապետությանը Իրանում և Անդրկովկասում։ Արտազի շրջանում բնակություն հաստատած Կարա-կոյունլու թուրքմենները այսօր էլ ամենաբազմամարդ էթնիկական տարրն են Իրանի հյուսիս-արևմտյան սահմանագլուխը դարձած այդ շրջանի։ Նրանց միջավայրում շատ տարածված է Ալի-Իլահի աղանդը, որ ինքնատիպ մի խառնուրդ է մահմեդականության, քրիստոնեության և հեթանոսական հավատալիքների[113]։

Արտազի շրջանում իրենց գոյությունը երկար պահպանեցին նաև կաթոլիկ դավանանք ընդունած հայերը, կենտրոն ունենալով Ծործորի սուրբ Աստվածածնի վանքը և Կեծուկ գյուղը, որի ճիշտ վայրը որոշելու համար նյութեր չունենք[114]։ 1654 թվականին կազմված մի վիճակագրության մեջ տվյալ է

112 Տոհմածառը բաժանել ենք երկու մայր ճյուղերի, ձախակողմյանը հատկացնելով գերդաստանի հոգևոր տերերին, աջակողմյանը՝ աշխարհիկ իշխաններին։ Ենթադրյալ ազգակցությունները՝ կետագծերով են ցույց տրված։ Յուրաքանչյուր անվան կից դրված են տվյալ անձնավորության մասին հայտնի ծայրային թվականներ։

Հոգևոր տերերին հատկացված ճյուղին առնթեր՝ ձախ կողմից, տրված է ս. Թադեոս առաքյալի թեմի հայազգի եպիսկոպոսների ցանկը։

113 Ըստ որոշ տվյալների կարելի է ենթադրել, որ Կարա-կոյունլուների իշխող դինաստիայի անդամներից ոմանք եղել են կրոնական այս վարդապետության հետևորդներ։ Իսկանդարի և Ջհանշահի գործունեության մեջ գիտված են դրվագներ, որ անբացատրելի պետք է մնային, եթե նրանց ուղղադավան մահմեդական համարեինք։ Առավել չափով նույնը կարելի է ասել Հասան-Ալու մասին, որը նորոգել է Արճեշի հայկական եկեղեցիներից մեկի գմբեթը, Մակվում կառուցել է Ս. Վարդան անունով եկեղեցի և այլն։

Ալի-Իլլահի աղանդի մասին առաջին գիտական խոսքն ասել է Ա. Թոխմախյանը, որ XIX դարի 80-ական թթ. սկզբներին եղել է Մակվի շրջանում և մի քանի օր ապրել աղանդավորների գյուղերում։ Ըստ նրա պատմածի՝ տարին մի-քանի անգամ նրանք կատարում են սրբազան կրակը լուցանելու արարողություն՝ երկսեռ բազմությամբ։ Տարին մեկ անգամ, շեյխի ձեռքով, մատաղի (ագապի) արարողություն է կատարվում. միսը բաժանում են բոլոր մեծահասակներին, ոսկորները (առանց ջարդելու)՝ թաղում են։ Ուխտ են կատարում սուրբ ծառերին, մոմ են վառում, խունկ ծխում, մատաղ անում իրենց ուխտատեղերում, որ «Ղարա-օղլան», այսինքն՝ Թուխ-մանուկ են կոչվում։ Չնայած արտաքուստ իրենց ձևացնում են մահմեդական, բայց ոչ ծոմ են պահում, ոչ նամազ անում։ Գինի և օղի գործածում են՝ առանց քաշվելու։ Երբ նրանց հարցնում են, թե Ալիին ինչու են աստծո որդի դավանում, նրանք պատասխանում են. «Նրան, որին դուք Քրիստոս եք անվանում, միևնույն է որին մենք Ալի ենք ասում, զանազանությունը անվան մեջ է միայն. մեր և ձեր (հայերի) միջև եղած տարբերությունը՝ սոխի կճեպի չափ է» (Ա. Թոխմախյան, Մասիս լեռների հարավային ստորոտները, Բ մասն, Թիֆլիս, 1882, էջ 33—38)։

Այս աղանդավորների մասին գրել են նաև Իրան այցելած եվրոպացի ու ռուս արևելագետներ (տե՛ս օրինակ, В. Минорский, Материалы для изучения персидской секты „Люди истины“ или Али-Илахи, часть I, М., 1911).

114 Ծործորի վանքից շուրջ 2 կմ հյուսիս գտնվում է Բարոն գյուղը, որ այսպես է կոչվել, հավանաբար, պարոնապատկան կալվածք լինելով։ Գուցե այդտեղ են պատսպարվել Մակվի տերերը 1426 թվականից հետո, զրկվելով իրենց իշխանանիստ բերդից։ Կարելի է ենթադրել նաև, որ Կեծուկը հենց այս Բարոն կոչված գյուղի հին անունն է։

## ԱՐՏԱԶԻ ՀՈԳԵՎՈՐ ԵՎ ԱՇԽԱՐՀԻԿ ՏԵՐԵՐԻ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

(ծյուղագրության փորձ)



եղել այս գյուղում բնակվող 9 տուն (50 շունչ) կաթոլիկների մասին[115]։ Այստեղից էր Գրիգոր Ծործորեցի կոչված վարդապետը, որ 1672 թ. գտնվում էր Վենետիկում, ուր զբաղված էր Նախիջևանի կաթոլիկ վանքերի շահի դրված դրամագլխի տոկոսներն ստանալու գործով. 1675—1676 թթ. վերադարձած լինելով Ծործորի վանք, նա ընդօրինակել է մի քարոզգիրք, կատարել է նաև թարգմանություններ՝ իտալերենից հայերեն, գրել տաղեր և կրոնական այլ գրվածքներ[116]։

Արտազի շրջանի հայ-կաթոլիկները, կտրված լինելով ազգային կենսատու ավանդություններից, Նախիջևանի շրջանի իրենց դավանակիցների հետ միասին խզեցին իրենց կապերը մայր ժողովրդից և ընդունեցին մահմեդականություն։

Փորձենք պարզել այս իրողության ժամանակը։

1732 թ. շարադրած իր «Դրախտ ցանկալի» գրվածքի մեջ Ղազար Ջահկեցին կաթոլիկ հայերի կրոնափոխության մասին խոսում է՝ որպես տարիներ առաջ կատարված փաստ. «Նմանապէս և յերկրին Նախջուանայ ախթրմայից զեղորայքն,—գրում է նա,— բազումք դարձան ի կրօնս պարսից, որպէս Սալթաղ և Քռնայ... և Կէծուկ՝ սոքա ամենեքեան. իսկ Ապրակունիս և Շահրունիս և Խոշկաշէն և Ապարաներ, որ է եպիսկոպոսարան իւրեանց՝ սոցա մեծ մասն։ Բայց ի գեօղաքաղաքին Ճահկայ եղեալ ախթարմայքն ոչ դարձան ի կրօնս պարսից վասն ազգիս միաբնակաց, որ զետեղեալք եմք ի միջի նոցա»[117]։ Ըստ այսմ կրոնափոխությունը տեղի է ունեցել 1732-ից տասնամյակներ առաջ։

1691 թ. Երնջակի շրջանի Նորաշեն գյուղում շարադրված մի հիշատակարանի մեջ ասվում է, որ արդեն 7 տարի է ինչ պարսից շահի զորավարներից մեկը, «փորև զաւաղ ծովու» զորքի գլուխ անցած, ասպատակություններ է կատարում, ավերում և ավարում է Գանձակից սկսած՝ մինչև Գողթան գավառն ընկած շրջանները։ Հիշատակագիրը այդ դեպքերի հետ է առնչում նաև շատ «սուտ քրիստոնյաների» (իմա՝ կաթոլիկ հայերի) մահմեդականություն ընդունելը. «Բազում սուտ քրիստոնեայք զուրբ և զճշմարիտ հաւատս Քրիստոսի փոխանակեցին... և միաբանեցան ընդ պարսից»—գրում է նա[118]։

Այս տեղեկությունների համադրումով հանգում ենք այն եզրակացության, որ Արտազի և Նախիջևանի հայ կաթոլիկների զանգվածային հավատափոխությունը տեղի է ունեցել 1691 թվականից մի քանի տարի առաջ, եզրափակիչ արարը հանդիսանալով Մակվի և Քռնայի հոգևոր և աշխարհիկ տերերի միջավայրում XIV դարի առաջին տասնամյակներին սկիզբ առած հռոմեական եկեղեցու հետ միաբանելու անհեռատես շարժման։

---

115 Հ. Ս. Էփրիկյան, Բնաշխարհիկ բառարան, հատոր երկրորդ, Վենետիկ, 1907, էջ 386։

116 Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Ա, Երևան, 1942, էջ 628, «Ցուցակ ձեռագրաց Մաշտոցի անվան մատենադարանի», հատոր Ա, էջ 1207, հատոր Բ, էջ 499։

117 Ղազար Ճահկեցի, Գիրք աստուածաբանական, որ կոչի Դրախտ ցանկալի, Կ. Պոլիս, 1735, էջ 333—334։

118 Գ. Զարպհանալյան, Մատենադարան հայկական թարգմանութեանց, Վենետիկ, 1889, էջ 614—615։

## II

## ԱՐՏԱԶԻ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԿԵՆՏՐՈՆ ԾՈՐԾՈՐԻ ՎԱՆՔԸ

*1. Ծործորի վանքի տեղագրությունը.*—Արտազի հայկական իշխանության մշակութային կենտրոնը Ծործորի վանքն է եղել, որ հիմնադրվել է Զաքարիա եպիսկոպոսի կողմից և ծաղկել XIV դարի առաջին հիսնամյակում, հանդիսանալով գրական ու թարգմանչական գործունեության աշխույժ միջավայր։

Ծործորի ս. Աստվածածնի վանքի մասին հնագույն վկայությունը 1314 թվականից է, և կապվում է Հովհան Երզնկացի վարդապետի գրական-մանկավարժական գործունեության հետ. հաստատվելով նորաստեղծ այդ վանքում, նա Ծործորեցի մականունն է ընդունել, և իր «Յովհաննէս Եզնկացի» անունը ճոխացրել՝ «որ այժմ կոչիմ Ծործորեցի» վերադիր բանաձևով։ Վանական այս համալիրի ճշգրիտ վայրն առ այսօր չի որոշված և, նույնիսկ, այն կարծիքն է գերիշխում, որ Ծործորի վանքը՝ նույն Ս. Թադեի վանքն է, սխալմամբ տարանջատված[1]։

Այս տեսակետն անհիմն է և անընդունելի։ Ս. Թադեի վանքում ընդօրինակված ձեռագրերի մեջ վանական այդ հաստատությունը հիշատակվում է այսպիսի բանաձևերով. «Ի գաւառիս կոչեցելումն Արտազ... ի հռչակաւոր ուխտս, ի յաթոռս և ի հանգիստս սուրբ առաքելոյս Թադէոսի, ընդ հովանեաւ ամենազաւր աջոյն Յիսուսի, առ ոտս սուրբ և աստուածային արեամբ ներկեալ նշանիս՝ սուրբ գեղարդեանս և սուրբ կուսին Սանդխտոյ, և այլ բազմահաւաք սրբոցս»[2], կամ. «Ի գաւառս որ կոչի Արտազ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Թադէոսի և աստուածամուխ սուրբ գեղարդեանս»[3]։ Ինչպես տեսնում ենք, Ս. Թադեի վանքի սրբությունների շարքում աստվածամոր անունն իսկ չկա, մինչդեռ Ծործորի վանքի կապակցությամբ ամենուրեք հիշատակվում է միայն Աստվածածինը, ակնարկ անգամ չլինելով Թադեոս առաքյալի և Սանդուխտ կույսի մասունքների, աստվածամուխ գեղարդի և «բազ-

---

[1] Հ. Ոսկյանը, հատուկ անդրադառնալով այս խնդրին, գրում է. «Հ. Ինճիճյան և Հ. Էփրիկյան երկու զանազան վանքեր կը համարին (Հմմտ. «Աշխարհագրութիւն», էջ 205, Բնաշխարհիկ բառարան, Բ, էջ 251), Հ. Չամչյան կը գրէ իր Պատմութեան ցանկին մեջ (էջ 155)՝ «Ծործորու վանք, այն է ուխտ սուրբ Աստուածածնի ի վիճակ Թադէի յԱրտազ գաւառի» (Հմմտ. և Պատ. Գ, էջ 271)։ Հ. Ջարբհանելյան (Պատ. հայ դպրութեան, էջ 757) և Հ. Գաթըրճյան (Բազմավէպ, 1906, էջ 257) կը համարին միևնույն վանքը, ինչպես նաև Հ. Ալիշան (Յուշիկք հայրենեաց, Բ, էջ 472)»։ Հ. Ոսկյանը քաղվածքներ է անում մի շարք հիշատակարաններից, որոնց մեջ գրչության վայրը մատնանշվում է այսպես. «Ի վիճակ սուրբ առաքելոյն Թադէոսի, ի վանս Ծործորու կոչեցեալ՝ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի»։ Այս բանաձևը անկողմնակալ ընթերցողի համար երկու տարբեր վանքերի գոյությունը հաստատող մի փաստ է. Ոսկյանը, սակայն, հակառակ եզրակացության է հանգել. «Այս վկայութիւններու և տեղիքներու վրա հենելով,—գրում է նա,—հավանական կը թվի թե Ս. Թադեի և Ծործորու վանքերը միևնույն վանքերն են... գուցե անոր եկեղեցիներեն մին նախապես կոչված է Ս. Աստվածածին և մյուսը Ս. Թադեոս և կամ նախապես թեմը Թադեոսի վիճակ և վանքը Ս. Աստվածածին անվանված. և ապա քանի որ առաջնորդարանը հոն էր, կոչված է՝ Ս. Թադեոսի վանք անունով» (նշվ. աշխ., էջ 467—468)։

[2] Մատենադարան, ձեռ. № 3778, էջ 464ա։

[3] «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 227։

մահաւաք» այլ սրբությունների մասին: Ըստ այդմ աներկբայելի է երկու տարբեր վանքերի գոյությունը:

Ս. Թադեի վանքը գտնվում է Մակու քաղաքից շուրջ 20 կմ հարավ, Ղարաքիլիսա գյուղի մոտակայքում: Վանքը կանգուն է առ այսօր, ունենալով XVII դարում և XIX դարի սկզբներին կառուցված հավելյալ շենքեր. ուխտագնացության սիրված վայր հանդիսանալով իրանահայության համար՝ մասնակի վերանորոգություններով ամրացվել և շենացվել է վերջին տարիներս[4]:

Ծործորի վանքի տեղը որոշելու համար բացառիկ նշանակություն ունի Մակվի շրջանի մասին առկա տեղագրական գրվածքներից ամենակարևորը՝ Ա. Թոխմախյանի «Մասիս լեռների հարավային ստորոտները» աշխատությունը: Այստեղ գրանցված խիստ արժեքավոր տվյալների հիման վրա, օգտագործելով նաև տեղագրական ու քարտեզագրական այլ նյութեր, հնարավոր է լինում պարզել, որ Ծործորի վանքը գտնվում է Ակի կոչվող ձորի բերանում, ուր միախառնվում են երեք գետակներ՝ սկիզբ տալով Զենգիմար կոչվող գետին, որ նույնանուն կիրճով հարավից հյուսիս հոսելով, Օղակ գյուղի մոտ թափվում է Մակու-չայ գետը[5]: Հայերի կողմից Զենգիմերա Ասպարածին (նաև Ասպարագին), իսկ տեղացի մահմեդականների կողմից Մայրամ-նանա կոչված այդ վանքը, որի ավերակների ուսումնասիրությունը տեղում ուշագրավ նյութեր կարող է պարգևել հայ բանասիրությանը, անտարակույս նույն այն վանական հաստատությունն է, որ հայտնի է միջնադարյան հայկական աղբյուրներում Ծործորի վանք անունով[6]:

Հանդիսանալով Արտազի հայկական իշխանության մշակութային կենտրոնը, Ծործորի վանքը ծաղկում է ապրել XIV դարի առաջին հիսնամյակում, իր անվան հետ հավերժ շաղկապելով Զաքարիա եպիսկոպոսի և նրա մերձավոր խորհրդական ու կուսակից, նշանավոր գիտնական ու մանկավարժ Հովհաննես Ծործորեցու անունները: Ստորև, առանձին հատվածներով անդրա-

---

[4] Documenti di Architettura Armena 4. S. Tadei vank. Milano, 1971.

[5] Ա. Թոխմախյանը գրում է. «Այս աշխարհի ամենամեծ գետը Մագու գետն է, որ ոռոգում է Մագուա դաշտը. նորա... երրորդ ամենամեծ ճյուղը բաժանվում է երեք գլխավոր սկիզբների. առաջինը՝ Սարիգայիր, սկսվում է Ճավարշ[ան] լեռների հյուսիս-արևելյան կողմերից և ոռոգում է Թայգարարա հովիտը, երկրորդը՝ Կուսանաց գետը, իջնում է Ավջուղի հարավային սահմաններից և բերելով Արշակավան քաղաքի ավերակները, Հարամլու ձորումը միանում է Սարիգայիրի հետ: Երրորդը բղխում է Սանասրուկ և Սահար լեռներից, անցնում է Թադեոս առաքելո վանքի տակից: Այս երեք ճյուղերը Ասպարածին վանքի ավերակների մոտ խառնվում են իրար և կազմում Զենգյումեր գետը, որ Ակի ժայռոտ և դժվարակոխ ձորից անցնելով հարավից դեպի հյուսիս՝ Օղակ գյուղի մոտ խառնվում է վերոհիշյալ ճյուղերի հետ և շրջելով ընթացքը դեպի արևելք, մտնում է Մագուա ձորը» (Մասիս լեռների հարավային ստորոտները, մասն Ա. Թիֆլիս, 1882, էջ 34):

Այս շրջանի պատմական աշխարհագրության մասին արժեքավոր տվյալներ կան նաև Հ. Օ. Աղարեկյանի «К вопросу о месте аварайрского сражения» հոդվածում (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1967, № 4, էջ 91—114):

[6] Ծործորի վանքի շատ անհաջող լուսանկարը տպագրված է Վ. Մինորսկու վերոհիշյալ „Древности Маку" աշխատության մեջ (էջ 11). Հրատարակում ենք դրա հիման վրա կատարված ճշգրիտ գծանկարը (տե՛ս նկ. 5): Վանքի մասին Մինորսկու մոտ կարդում ենք. „В Бебеджике у самого входа Зенгимар в глубокую и непроходимую щель, по которой река выбегает на макинскую долину (выше города Маку), находятся развалины часовни из тесаного камня, известной у мусульман под названием Марьям-нене, т. е. „матерь Мария" (Նույն տեղում, էջ 11—12):

դառնալու ենք նրանց գործունեությանը, հանգամանորեն ներկայացնելով հատկապես Հովհան Ծործորեցու գիտական աշխատանքի արդյունքները։



Նկ. 3. Թադեոս առաքյալի վանքի 1329 թ. կառուցված եկեղեցին (առջևի շենքը)

2. Զաքարիա եպիսկոպոս Ծործորեցի՝ մեկենաս ու մատենագիր.—Ամեն մի բարձրաստիճան եկեղեցական պաշտոնյա, մանավանդ տասնամյակներ աթոռակալած և գաղափարական թեժ պայքար մղած մեկը, իր կյանքի ընթացքում պարտավորված է լինում պաշտոնական բազմաթիվ ու բազմատեսակ գրություններ առաքել իր ժամանակի հոգևոր և աշխարհիկ տերերին, վերադաս և ստորադաս պաշտոնյաների ու այլ անձանց։ Այդպիսի գրությունների հեղինակները, սովորաբար, տեղ չեն գրավում մատենագրության պատմության մեջ։ Այլ է Առաքելոց թեմի նշանավոր առաջնորդ Զաքարիա եպիսկոպոսի պարագան։ Նրա նամակներից մեկը՝ հասցեագրված Հովհան Օրբելին, որ տպագրված է գրեթե ամբողջությամբ[7], հեղինակի ճարտար ընդդիմախոս լինելու մասին առատ վկայություններ է պարունակում. նա ոչ միայն պաշտպանում է իր որդեգրած գիծը դավանաբանական պայքարում, այլև

7 Մ. Չամչյանց, Պատմութիւն Հայոց, Գ, էջ 306—308։

*հակահարձակման անցնում, մեղադրելով Սյունյաց մետրոպոլիտին անհնազանդության և մեծամտության մեջ։ Ժողովրդական բառ ու բանով և երգիծանքի հնարանքներով Զաքարիան համեմում է իր գրության տարբեր մասերը, ներկայանալով ընթերցողին որպես բնածին տաղանդով օժտված մի անձնավորություն։ Ըստ տեղեկությունների նա շարադրել է և այլ նամակներ՝ ուղղված կաթողիկոսին ու այլ գործիչների։*

*Մործորի վանքի հիմնադիրը, վերոհիշյալ նամակներից բացի, հեղինակել է նաև այլ երկեր, որոնցից կարևորները կամ դեռևս չեն հայտնաբերվել, կամ էլ տեղ են գրավելու հայ մատենագրության ավաղելի կորուստների ցանկում։*

*Մ. Չամչյանն իսկ գիտեր, որ Զաքարիան գրել է ինչ-որ պատմություն՝ «Ի վերայ կարգի վարդապետացն Հայոց» և այլ երկեր։*

*Հավանաբար նույն այս «Պատմությունն» ի նկատի ուներ լեհահայ գործիչ Վարդան Հունանյանը 1703 թվականից հետո եվրոպեցիներին հղած իր մի նամակում, երբ կաթողիկոսի հրավիրած ժողովի մասին խոսելիս։ Նա մերժում է այն կարծիքը, թե Մաթուսաղան գիտնականագույնն է եղել այդ ժողովի 195 մասնակիցներից. նրանց մեջ եղել են Արտազի արքեպիսկոպոս Տիրատուրի, Հաղբատի արքեպիսկոպոս Վահանի նման նշանավոր մարդիկ։ Որպես աղբյուր այդ վկայությունների Հունանյանը ձեռագրի լուսանցքի վրա նշել է. «Զաքարիայ Մործորեցի, Յաղագս ժողովոց, գլ. Թ.»[8]։ Այս նույն աղբյուրի մասին հպանցիկ տեղեկություն ունի նաև լեհահայ մի այլ գործիչ՝ Ստեփանոս Ռոշկան[9]։*

*Զաքարիա Մործորեցու պատմական ինչ-որ գրվածքի հեղինակ լինելու մասին լուր է ունեցել նաև Հովհաննես Շահխաթունյանցը. 1847 թ. ապրիլի 25-ին Ներսես Աշտարակեցուն հղած իր մի գրության մեջ նա խնդրում է Աստրախան ուղարկվող Մաթևոս եպիսկոպոսին հանձնարարել նաև հետևյալը. «Ի գնալ նորա անդ հասու լիցի գրատան եկեղեցւոյն սուրբ Աստուածածնի անդ յԱստրախան, և զամենայն առեալ ի տոմար ըստ ամբողջութեան մատենիցն և ըստ հատուածոց հեղինակութեանց պարունակելոց ի նոսին, յորս, որպէս լսեմս, գտանի և պատմութիւն ի Զաքարիայէ Մործորեցւոյ, որ անգիւտ է ամենևին ցարդ»[10]։*

*Զաքարիայի պատմագրական գործունեության մասին այս տվյալները տարբերվում են միմյանցից. ըստ Չամչյանի նրա գրվածքը եղել է «Ի վերայ կարգի վարդապետացն Հայոց», ըստ Հունանյանի նա գրել է. «Յաղագս ժողովոց» խորագրով մի աշխատություն, իսկ Շահխաթունյանցի տվյալներով՝ ուղղակի «Պատմություն»։ Հակված ենք կարծելու, որ տարբեր անվանումներով հիշատակվածը՝ միևնույն պատմագրական երկն է, որի մեջ, ամենայն հավանականությամբ, մանրամասն տեղեկություններ են եղել հատկապես Հայոց եկեղեցական ժողովների մասին։ Այդ գրվածքն առ այսօր չի հայտնաբերված, բայց որոնումները պետք է շարունակել. բացառված չէ, որ աշխարհով մեկ սփռված հայերեն ձեռագրերից որևէ մեկում, գուցե առանց հեղինա-*

---

8 Ղ. Ալիշան, *Հայապատում*, Վենետիկ, 1901, մասն Ա, էջ 115, Հ. Տաշյան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա*, 1895, էջ 114 (մեզ հետաքրքրող վկայությունը գրանցված է Վիեննայի մատենադարանի № 12 ձեռագրի 52ա էջի վրա)։

9 Հ. Տաշյան, նույն տեղում, էջ 681։

10 Ա. Սեդրակյան, *Հովհաննես եպիսկոպոս Շահխաթունյանցի կենսագրությունը*, Ս. Պետերբուրգ, 1898, էջ 174—175։

կի անվան հիշատակություն, թաքնված է Զաքարիա Սործորեցու գրչի այդ արգասիքը՝ նոր տվյալներ պարունակելով Հայոց եկեղեցու պատմությանը և Արտազի հայկական իշխանությանն առնչվող անցուդարձերի մասին։

Զաքարիայի պատմագրական աշխատանքների հետ աղերսվում են նաև Արտազի և Կապադովկիայի աթոռների առաքելական ծագման ու հաջորդականության մասին հյուսված ցանկերը։ Արտազի թեմի առաքելական սկզբնավորության մասին վաղ միջնադարում կյանքի կոչված հնաբույր ավանդությունների վերարծարծումն ու գունազարդումը նոր շուք էր տալու և հեղինակություն բերելու Մակվի հայ տերերի գերդաստանին։ Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ Ս. Թադեի վանքի վերաշինումից անմիջապես հետո Զաքարիա պարոնտերը շրջանառության մեջ է դնում «Յիշատակագրութիւնք եպիսկոպոսաց առաքելական վիճակիս Արտազու» կոչված մի գրություն, որի անսքող նպատակն է անընդմեջ հաջորդականության կարծեցյալ շղթայով հարաբերության մեջ մտնել Գրիգոր Լուսավորչի և Քրիստոսի աշակերտ Թադեոս առաքյալի հետ։

Զաքարիա եպիսկոպոսը իր այս հորինվածքին պատմական ստույգ գրության տեսք տալու մտահոգությամբ հայտնում է, որ ձեռքի տակ ունեցել է Հայոց ՂԸ (այսինքն՝ մեր թվարկության 650) թվականին Մաղարթա վանքի սպասավոր ումն Հովհաննեսի գրած մի հիշատակարան։ Ուշադիր քննությունը բերում է այն համոզման, որ ցանկի մեջ թվարկված անուններն ըստ մեծի մասին հորինված են նոր ժամանակներում՝ Զաքարիայի գործակցությամբ։ Ուշագրավ են այն տողերը, որ Զաքարիայի հավաստումով պատկանում են, իբր, Մաղարթա վանքի վերոհիշյալ վանականին. «Բայց ի սոցանէ չկարացաք գտանել,—ասէ հաւաքողն յիշատակագրութեանս,—թէ ոյք և զո որ կարգեալ եղև տեսուչ այսմ վիճակիս յաղագս կործանման և աւերման քաղաքիս և վանացս ի ձեռս բռնաւորաց և շարժից»։

Դժվար չէ այս տողերը շաղկապել XIII դարի վերջերին մոնղոլ զորավար Նովրուզի կատարած խժդժությունների և 1319 թ. մեծ երկրաշարժի թարմ հիշատակների հետ, քննարկվող գրվածքի հորինման պատիվը շնորհելով Զաքարիա Սործորեցուն։ Ըստ այդմ նրան պետք է վերագրել նաև «Յաջորդութիւն սուրբ առաքելոյն Թադէոսի ի Կեսարիայ Կապադովկացոց վիճակի» կոչված ցանկի վերախմբագրման աշխատանքը։ Այս ցանկը ևս, նախորդի նման, կյանքի է կոչվել Թադեոս առաքյալի վիճակի հեղինակությունը ժամանակակիցների աչքում բարձրացնելու նպատակով։ Կեսարիայի եպիսկոպոսական հինավուրց աթոռը վաղուց ի վեր գոյություն չուներ. Արտազի հայ եպիսկոպոսը, իրեն հռչակելով Թադեոս առաքյալի հաջորդ, այս ցանկի թելադրությամբ փորձում էր պճնվել նաև Կապադովկիայի հին եկեղեցու վեհափառների՝ Ղևոնդի, Բարսեղ Կեսարացու և մյուս նշանավոր գործիչների փառավոր անուններով[11]։

---

11 Այս ցանկերն առաջին անգամ հրապարակվել են «Արարատ» ամսագրի մեջ (1868 թ., վ. 102—104), ապա արտատպվել բազմիցս (տե՛ս օրինակ, «Հանդէս ամսօրեայ», 1941, էջ 44, Սամուել Անեցու ժամանակագրության հավելված, էջ 279—281 և այլն)։ Վ. Հացունին իր «Կարևոր խնդիրներ հայ եկեղեցվո պատմութենէն» մեր կողմից վկայակոչված աշխատության մեջ, վերլուծելով վերոհիշյալ տվյալները, հանգել է ընդունելի այն եզրակացության, որ «Սործորեցվույն ցուցակին տի հին գրուցատրութենէ» և «գործակցութեամբ հոգվոյն» հավաքված անվանք՝ կրնային նպաստել յուր աթոռին փառաց, բայց ոչ և հայ եկեղեցվո պատմության» (էջ 102)։

*Զաքարիա եպիսկոպոսն ունեցել է նաև այլ գրվածքներ, մասնավորապես ինչ-որ կանոնագրություն, որի մասին ակնարկներ կան Հովհան Օրբելի մեզ ծանոթ մեղադրական թղթի մեջ։ Սյունյաց մետրոպոլիտն այստեղ նախատում է Արտազի եպիսկոպոսին Հայոց եկեղեցու ավանդությունները արհամարհելու, կաթոլիկ եկեղեցուն դավանաբանական զիջումներ կատարելու մեջ՝ վկայակոչելով վերջինիս գրած կանոնները։ Պարզվում է նաև, որ Ծործորեցու այդ կանոններն ըստ էության եղել են եկեղեցական արարողությունների ու ծեսերի փոփոխման մասին հրահանգներ, որոնք ընդառաջել են կաթոլիկ եկեղեցու պահանջներին*[12]։

*Մեծ է Զաքարիա եպիսկոպոսի դերը որպես մեկենաս. նրա նախաձեռնությամբ և օժանդակությամբ գրվել ու թարգմանվել են աստվածաբանական երկեր և մեկնություններ (դրանց մասին խոսք կլինի ստորև), ընդօրինակվել են արժեքավոր ձեռագրեր և այլն*[13]։

3. Հովհաննես Երզնկացի—Ծործորեցի.—*Միջնադարյան հայ մատենագիրները քաջ տեղյակ էին, որ XIII—XIV դարերում ապրել ու ստեղծագործել են երզնկացի երկու Հովհաննեսներ՝ Պլուզը և Ծործորեցին։ Հայ մեկնիչների մի ցանկի մեջ, օրինակ, գրված է. «Զքերականն բազումք (մեկնեցին), բայց յետոյ Յոհաննէս վարդապետն Եզնկացին, յետ նորա՝ Եսային, յետ նորա՝ Յոհաննէս Ծործորեցին»*[14]*, իսկ Ղ. Ջահկեցին ոչ միայն տարանջատում է նույնանուն այդ երզնկացիներին, այլև համառոտակի ներկայացնում դրանցից յուրաքանչյուրի գրական վաստակը, վերջինիս մասին գրելով. «Յոհաննէս Ծործորեցին, այր քաջուսումն և մտաւորն։ Սա մեկնեաց զաւետարանն Մատթէոսի պարզ և դիւրահաս ոճով, և մեկնեաց զքերականութիւնն»*[15]։

*Մ. Չամչյանն էր հավանաբար առաջինը, որ հանիրավի միաձուլելով նույնանուն այդ գործիչներին, կյանքի կոչեց անգո մի մատենագիր՝ Հովհաննես*

---

*Յավալի է, սակայն, որ աղբյուրների գիտական քննություն կատարելու անհրաժեշտության մասին գեղեցիկ դատողություններ կատարող բանասերը դառնում է ծայրահեղ դյուրահավատ, երբ խոսքը վերաբերում է կաթոլիկ եկեղեցու առաքելական սկզբնավորության մասին գոյություն ունեցող ավանդություններին։*

12 *Մեջ ենք բերում Հովհան Օրբելի նամակի համապատասխան հատվածը. «Զգիտացաք թէ ինչ պատճառաւ դու ի մէնջ բաժանեցար. թէ զհոգևոր տիրոջ հրամանքն պատճառես, նա ի բեզնէ ջուր միայն խնդրեց ի խորհուրդն առնուլ և ի դեկտեմբերի ԻԵ. (25) զծնունդն առնել. դու զպահոց լուծումն յո՞ւստ ուսար, և զառաքելական կանոնաց ջրումն կամ հեթանոսաբար զանխտիր շաղղակերութիւնդ... և ի հաւատոյն ուրացութիւն յո՞ր Քրիստոսէ ուսար, կամ զեկեղեցիս հայաստանեայց ուրանալ և յոյով նախատանօք նախատել, կամ զտարւոյն բոլոր պահքն ի Ծ. (50) օր բերել,* որպէս դու գրեալ կանոնս էր, *կամ զամուսնութիւն աշխարհի քահանայից՝ բառնալ, և զոչ արժանիսն քահանայագործութեան ի գործ սուրբ խորհրդոյն ածել, դու զքո խորհրդովդ զքեզ ի միջոյ քո եղբարցդ և ի քո գլխոյդ և յամենայն եկեղեցւոյ որոշեցեր՝ սուրբ առանձին կանոնագրութեամբքդ» («Ճռաքաղ», 1860, էջ 55, ձեռ. № 8245, էջ 183)։*

13 *Ներսես Տարոնացի վարդապետը 1332 թ. գրած իր հիշատակարանում հայտնում է, որ իր պատվերով ընդօրինակվող Աստվածաշնչի գրության համար ծախսվել է 1350 դրամ, որից 500-ը իրեն անփոխադարձ տվել է Զաքարիա եպիսկոպոսը. «Եւ ես,—գրում է նա,—յայնժամ յարեայ անտի և գնացի ի սուրբ առաքելոյն Թադէոս՝ առ տէր Զաքարէ արքեպիսկոպոս, և նա ետ ինձ Շ. (500) դր[ամ]» («ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 246)։*

14 *Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հատոր Ա, Երևան, 1959, էջ LXI։*

15 *«Գիրք աստուածաբանական, որ կոչի Դրախտ ցանկալի, շարադրեալ ի Ղազարու աստուածաբան վարդապետէ Ջահկեցւոյ», Կ. Պոլիս, 1775, էջ 638 (հմմտ. Հ. Անասյան, նշվ. աշխ., էջ XLVI)։*

*Երզնկացի—Պլուզ—Ծործորեցի եռահարկ մակդիրներով, որ ապրել է, իբր, շուրջ մեկ դար, կյանքի վերջին տասնամյակներում հրաժարվել գաղափարական իր սկզբունքներից ու կնքել իր մահկանացուն որպես կաթոլիկ եկեղեցու սպասավոր[16]։ Այսպես են պատկերացրել Հովհաննես Երզնկացու կյանքն ու գործունեությունը և Գ. Զարպհանալյանը և Ղ. Ալիշանը և նրանց հետևող բոլոր բանասերները՝ մինչև վերջին տարիները, երբ միացյալ ջանքերով լուծվեց այդ թյուրիմացությունը՝ Պլուզ և Ծործորեցի կոչված Հովհաննեսների կրկին տարանջատումով[17]։*

*Հովհաննես Պլուզ Երզնկացու մասին գրվել են արդեն լուրջ ուսումնասիրություններ, որոնց մեջ տրվել է բազմավաստակ այդ մատենագրի երկերի գրեթե ամբողջական ցանկը, հրապարակվել են նրա չափածո ստեղծագործությունների մեծ մասը և այլ գործեր։*

*Անհամեմատ քիչ աշխատանք է կատարված Ծործորեցի Հովհաննեսի կենսագրության և գիտա-մանկավարժական գործունեության կարևոր դրվագների բացահայտման ուղղությամբ։ Ա. Սրապյանը, ուսումնասիրելով XIV դարի հիշատակարանների հրապարակված ժողովածուն, նշել է, որ նրա կենսագրության հնագույն տվյալը 1302 թվականից է և որ նա Ծործորեցի մականունն է ընդունել 1314-ից հետո[18]։ Հ. Քյուրդյանը Վենետիկի Մխիթարյանց մատենադարանի № 2019 ձեռագրում գտել է «Խոստովանութիւն գաղտնեաց», «Խրատք ոգեշահք վասն զղջման և արտասուաց» և այլ խորագրերով մի քանի չափածո գործեր, որոնց հեղինակն է ոմն Հովհաննես Երզնկացի՝ «որոյ գիւղն Պարկանց կոչի»։ Նույն ձեռագրի մեջ գտնվում են նաև նույն Հովհաննեսի խնդրանքով Գեորգ վարդապետի գրած ինչ-որ մեկնություններ։ Այս Գեորգին նույնացնելով նշանավոր Գեորգ Սկևռացու հետ (մհ. 1301 թ.), Քյուրդյանը ենթադրել է, որ Պարկանցի Հովհաննեսն էլ ոչ այլ ոք է, քան ինքը՝ Ծործորեցի Հովհաննեսը, որ մինչև Արտազում հաստատվելը, իր ծննդավայր գյուղի անունով կոչվել է Պարկանցի[19]։*

*Հարկ է նշել, որ փաստական ոչ մի հիմք չունենք ի հաստատություն այս նույնացումների։ Ծործորեցին մինչև Արտազի համանուն վանք տեղափոխվելը գրել է մի շարք հիշատակարաններ, որոնցից և ոչ մեկում իրեն Պարկանցի չի կոչել, իսկ մի հիշատակարանում, ինչպես կտեսնենք ստորև, ասված է ուղղակի, որ նա «էր ի հռչակաւոր քաղաքէն Եզնկայ կոչեցեալ»։ Անընդունելի է նաև Գեորգ վարդապետին Սկևռացու հետ նույնացնելը, որը Երզնկայի կողմերում երբեք չի գործել[20]։ Կարծում ենք, ուստի, որ վերոհիշյալ ձեռագրի մեջ հիշատակված վարդապետը՝ նշանավոր Գեորգ Երզնկացին է (մհ. 1416 թ.)՝ Հովհան Որոտնեցու աշակերտն ու Գր. Տաթևացու դասընկերը, որ XIV դարի վեր-*

---

16 Մ. Չամչյանց, *Պատմութիւն Հայոց, հտ. Գ, էջ 271—274։*

17 *Այս հարցի շուրջ ժամանակագրական կարգով արտահայտվել են Լ. Խաչիկյանը, Հ. Քյուրդյանը, Ա. Սրապյանը և Է. Բաղդասարյանը։ Մանրամասնությունները տեսնել Է. Բաղդասարյանի «Նոր տվյալներ Հովհաննես Երզնկացու (Պլուզի) մասին» հոդվածի մեջ («Բանբեր Հայաստանի արխիվների», 1969, № 2, էջ 131—140)։*

18 Արմենուհի Սրապյան, *Հովհաննես Երզնկացի, Երևան, 1958, էջ 31—32։*

19 Հ. Քյուրդյան, *Հովհաննես Երզնկացի-Ծործորեցի (Նորագյուտ նյութեր Ս. Ղազարու մեկ նոր ձեռագրեն), «Բազմավէպ», 1954, էջ 242—245։*

20 Է. Բաղդասարյան, *Գեորգ Սկևռացու «Վարքը» («Բանբեր Մատենադարանի», № 7, 1964, էջ 399—434)։*

ջերին Երզնկայի մոտ գտնվող Կապոսի վանքում դպրոց էր հիմնադրել և իր շուրջ համախմբել ուսման կարոտ մի տասնյակ աշակերտների։ Հավանաբար սրանցից մեկն էր սխալմամբ Հովհաննես Ծործորեցու հետ նույնացված Հովհաննես Պարկանցին[21]։

Հովհաննես Երզնկացին, իր իսկ վկայությամբ, եղել է «երջանիկ վարժապետ» Եսայի Նչեցու աշակերտը։ Գլաձորի համալսարանում սովորելու տարիներին ընդօրինակել է մի քանի ձեռագիր, բոլորն էլ իմաստասիրական ուշագրավ նյութերի ժողովածուներ։ 1298 թվականին «ի գաւառիս Վայոց ձոր, ի վանս Գլաձոր» արտագրել է Մ. Խորենացու խմբագրած ճարտասանական գրվածքների ձեռնարկը՝ «Պիտոյից գիրքը», որի հիշատակարանում իրեն կոչում է «յոգնամեղ ծառայ... աշակերտ բանի»[22]։ Չորս տարի հետո՝ 1302 թ., նույն վայրում («ի սուրբ և ի գերահռչակ ուխտն Գլաձոր անուանեալ, որ է երկրորդ Աթէնս»)։ Հովհաննեսն ընդօրինակել է Ներսես Լամբրոնացու «Մեկնութիւն սաղմոսաց» աշխատության մի մասը. հաջորդ մասի գրիչ Մկրտիչը իր գործընկերոջը ներկայացնում է ոչ որպես «բանի աշակերտ», այլ «սպասաւոր... բանի մերձ ի կատարելութիւն», այսինքն վարդապետական աստիճան ստանալու նախադռանը կանգնած մի անձնավորություն[23]։ Մեկ տարի անց Հովհաննես Երզնկացին հիշատակվում է արդեն որպես վարդապետ. նրա աշակերտներից մեկը, որի անունը ցավոք անհայտ է մնում. նրա պատվերով ընդօրինակում է քերականագիտական, բնագիտական և իմաստասիրական արժեքավոր հոդվածների մի ժողովածու, որի հիշատակարանում գովատում է իր ուսուցչին, ընդգծելով գրչության արվեստի մեջ նրա քաջավարժ լինելը[24]։ Հաջորդ տեղեկությունը մեր գործչի մասին ստանում ենք 1306 թ. Գլաձորի վանքում իր իսկ ընդօրինակած ձեռագրի չափածո և արձակ հիշատակարաններից։ Ձեռագիրը պարունակում է ուշագրավ և հազվագյուտ բնագրեր՝ Ստեփանոս Սյունեցու և Նանա վարդապետի գրած «Յովհաննու աւետարանի մեկնութիւն»-ները, Անդրեաս Կապադովկացու «Մեկնութիւն յայտնութեանն Յովհաննու» աշխատությունը և այլ հետաքրքրական բնագրեր։ «Դարձեալ,— գրում է Հովհաննես վարդապետն իր աշխատանքի մասին,— յիշեսջիք ի Քրիստոս և զիս՝ զտարժանեալ մեղաւորս ոգիս՝ զնուաստ Յով[աննէս] Եզընկայեցի սպասաւոր բանի, որ հարեալ ցանկութեամբ սիրոյ ի փափաք սորին, գրեցի իմով իսկ տխեղծ մատամբս ի մխիթարութիւն վշտացեալ հոգւոյ իմոյ, և ի վարժ կրթութեան երկա-

21 Նորայր եպս. Պողարյանը վերջերս հրատարակած իր «Հայ գրողներ» արժեքավոր աշխատության մեջ (Երուսաղեմ, 1971, էջ 406) տալիս է այդ աշակերտների ցանկը՝ «Աբրահամ աբեղա, Արիստակես Սեբաստացի, Ավետիք կրոնավոր, Հակոբ վրդ. Ղրիմեցի, և Հովհաննես աբեղա Երզնկացի»։ Այս Հովհաննեսին նույնացնելով Պարկանցի Հովհաննեսի հետ, լրացնում ենք Նորայր եպիսկոպոսի ցանկը Խաչատուր կրոնավորի անունով. Սրանք բոլորն էլ վարժ ու ժիր գրիչներ են եղել։

22 Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 100 (այս ձեռագիրը Ղ. Փիրղամելյանի հավաքած հիշատակարանների ժողովածուն է)։

23 «Բայց առաջին սկիզբն գրութեան սորա,— գրում է նա,— եղև... ձեռամբ ուրումն սրբազան քահանայի՝ առն իմաստնոյ և ճարտարի, որ էր ամենայն աստուածաշունչ կտակարանաւքն վարժեալ՝ սպասաւոր գոլով բանի մերձ ի կատարելութիւն՝ Յովհաննէս անուն, որ էր ի հռչակաւոր քաղաքէն Եզնկայ կոչեցեալ» (Մատենադարան, ձեռ. № 6558, էջ 637բ, հմմտ. «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 5—6)։

24 Մատենադարան, ձեռ. № 598, էջ 213բ (հմմտ. ԺԴ դարի հիշատակարաններ, էջ 17—18)։

սէր անձին բանաւորի, և ի յիշատակ արձանի հոգւոյ իմոյ ամենայն նախնեաց»[25]։

Հավանաբար հենց այս տարիներին «ի դառն գաղափարաց ստուգեալ», այսինքն վերծանելով դժվարընթեռնելի ձեռագրեր ու սրբագրելով աղավաղված տեղերը, Հովհաննես Երզնկացին ընդօրինակել է ևս մի ձեռագիր, որը պարունակում է Վահրամ Րաբունու փիլիսոփայական երկերը, Գր. Նարեկացու «Ողբերգութեան մատեանի», Կյուրեղ Աղեքսանդրացու «Պարապմանց գրքի», Գրիգոր Նյուսացու և Աստվածաբանի աշխատությունների լուծմունքներ և այլ հետաքրքրական նյութեր[26]։

Սրանք են Հովհաննես Երզնկացու նախածործորյան շրջանի մասին առկա տեղեկությունները։ Դրանց համադրումով պարզվում է, որ նա, ծնվել է շուրջ 1270-ական թթ. Երզնկա քաղաքում, XIII դարի վերջին տարիներին սովորել է Գլաձորում. վարդապետական գավազան է ստացել 1302—1303 թթ. ու դարձել նշանավոր ուսումնական այդ հաստատության ուսուցիչ, Եսայի րաբունապետի օգնականներից մեկը, այդ պաշտոնում մնալով, հավանաբար, մինչև Ծործորի վանք տեղափոխվելը։

Գլաձորում սովորելու և աշխատելու տարիներին Հովհաննեսն ընդօրինակել է մի շարք ձեռագրեր. դրանցից առնվազն չորսը հասել են մեզ ու վկայում են գրչի լայն հետաքրքրությունների մասին։ Նա, մասնավորապես, ուշադրություն է դարձնում գիտական և իմաստասիրական ծանրակշիռ աշխատությունների վրա, որոնց վերծանման և ընդօրինակման համար ջանքեր չի խնայում։

Որոշակի տվյալներ չունենք պարզելու, թե երբ և ինչ պարագաներում է Հովհաննես Երզնկացին Սյունիքից Արտազ փոխադրվել և հաստատվել Ծործորի վանքում, բայց գիտենք, որ այդ տեղի է ունեցել 1314 թվականից առաջ։ Հենց այդ թվականին «Ճանճին խուղ» կոչված ինչ-որ վայրում Խաչիկ անունով մի գրիչ ընդօրինակել է իմաստասիրական ու մեկնողական նյութերի հարուստ մի ժողովածու, որի մեջ տեղ է հատկացրել նաև մեր Հովհաննեսի երեք քարոզներին, դրանցից առաջինի խորագրում՝ Երզնկացի կոչմանն առընթեր՝ գնելով նաև «որ և Ծործորեցի» որոշիչը[27]։

Ծործորյան շրջանի առաջին տարիները գիտական վաստակի առումով Հովհաննեսի համար բեղմնավոր չեն եղել։ Մեր վարդապետի կյանքում, ինչպես կտեսնենք ստորև, դարձակետային նշանակություն է ունեցել 1316 թվա-

25 Մատենադարան, ձեռ. № 2520, էջ 344ա. չափածո հիշատակարանը գտնվում է ձեռագրի 143բ էջում (հմմտ. «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 43—44)։

26 Մատենադարան, ձեռ. № 59։ Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 649։

27 Հովհաննես Երզնկացու կյանքի ծործորյան շրջանի մասին լրացուցիչ տվյալներ ձեռք բերելու ակնկալությամբ ուշադիր քննեցինք Մաշտոցի անվան մատենադարանի №№ 626, 627 և 4234 ձեռագրերը և պարզեցինք, որ դրանք ստեղծվել են XIV դարի առաջին երկու տասնամյակների ընթացքում, նույն Խաչիկ գրչի ջանքերով։ Այդ ձեռագրերից միայն № 627-ի մեջ է նշված «Ճանճին խուղ» այլուստ անհայտ տեղանունը, որ թվում է, թե ինչ-որ բնակավայրի անուն չէ, այլ հայտնի մի վանքի շրջափակում գտնվող մի նեղ խցի (խուղ՝ նշանակում է հյուղ, խուց, խցիկ) գավեշտական հորջորջում։ № 626 ձեռագրի հիշատակագրությունների մեջ Խաչիկ գրիչը տալիս է իր (էջ 94ա) և ձեռագրի պատվիրատու Վարդանի անունը, կոչելով նրան «սրբազան և երջանիկ, սուրբ և ընտրեալ եպիսկոպոս տէր Վարդան» (էջ 28ա)։ Նույնացնելով այս Վարդանին 1315 թ. Ս. Թադեի վանքում հիշվող Վարդանի հետ, որ պատվիրատուն է Մատենադարանի № 3778 ձեռագրի (որա խնդրանքով Հովհաննես Ծործորեցին 1316 թ. շարագրել իր

կանը. նրա շուրջ համախմբվել են, ինչպես ինքն է ասում, «բանասէր անձինք ի յուսումն կրթութեան աստուածաշունչ տառից լսողութեան», և նա, իրագործելով ուսումնական իր ծրագիրը և գոհացում տալով ուսումնասեր աշակերտների հարցասիրությանը, շարադրել է իր աշխատությունները՝ գիտական մեկնություններ, քարոզներ և այլ գործեր։

Ստորև, որոշ հերթականությամբ, ներկայացնում ենք Հովհաննես Սորձորեցու մեզ հայտնի բոլոր աշխատությունները, անհրաժեշտ տեղեկություններ հաղորդելով յուրաքանչյուրի բովանդակության, գրության հանգամանքների, գիտական ու ճանաչողական նշանակության և հարակից հարցերի մասին։

### ա. Համառօտ տեսութիւն Քերականի

Ամբողջական խորագիրն է «Նուաստ վարդապետի Յոհաննիսի Եզընկայեցւոյ, որ և Սորձորեցի, արարեալ համառօտ տեսութիւն քերականի»[28]։

Գրության հանգամանքների մասին ակնարկներ կան աշխատության սկզբում զետեղված փոքրիկ հիշատակագրության մեջ[29] և ընծայական-վերջաբանում. այստեղ, հավանաբար դիմելով պատվիրատու Վարդանին, հեղինակը գրում է. «Յորմէ տեղեկացեալ քո ներհուն հմտութեամբ ի սակաւ աշխատութենէս բարձող արուեստիս՝ մի անճաշակ և զմերս թողցես փափագ, այլ յիշմամբ բարոյն ի տէր և զմեզ մասնաւորեսցես յագեցումն ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է օրհնեալ ընդ Հօր և արարչակից Հոգւոյն իւրոյ, որպէս էրն ի սկզբանէ և այժմ և յանբաւ յաւիտեանս»[30]։

Քերականության այդ դասագրքի հիմքում դրված է Հովհաննես Պլուզի համահավաք «Մեկնութիւն քերականի»-ն, որ աղբյուր է հանդիսացել նաև Եսայի Նչեցու, Առաքել Սյունեցու և այլ քերականագետների համար։ Նյութի ընդգրկման առումով հետևելով իր մեծանուն հայրենակցին, Սորձորեցի դարձած վարդապետը տարբերվում է հունաբան հայերենով շարադրված նախկին քերականագետներից իր պարզ լեզվով ու հստակ ձևակերպումներով. «Եթե նույնիսկ,— գրում է այդ կապակցությամբ Լ. Խաչերյանը,— առանձին նախադասությունների բառային կազմը նրա (իմա՝ Սորձորեցու) մոտ հիմնականում նույնն է լինում Երզնկացու (իմա՝ Պլուզի) համեմատությամբ, ապա դրանց շարադասությունը ամբողջությամբ փոփոխության է ենթարկվում համապատասխանեցվելով ժամանակի լեզվամտածողությանը»[31]։

---

«Մեկնութիւն Դանիէլի» աշխատությունը), կարծում ենք, որ Խաչիկ գրիչն աշխատել է հենց Ս. Թադեի վանքում։ Այսպիսով «Ճանճին խուղ», կոչվածը մի նոր գրչավայրի անուն չէ, այլ Արտազի նշանավոր այդ վանքի խցերից մեկի ծաղրական հորջորջումը։ Սորձորի վանքում հաստատված Հովհաննես Երզնկացին, բնականաբար սերտ կապերի մեջ է եղել մի քանի կիլոմետր հեռավորության վրա գտնվող Ս. Թադեի վանքում աշխատող գրչի մշակների հետ, արդեն 1314 թ. ճանաչված լինելով նրանց կողմից որպես «տիեզերալոյս վարդապետ» և ստացած լինելով Սորձորեցի մականունը։

28 Օգտագործել ենք Մատենադարանի № 7037 (էջ 12ա—75ա) ձեռագիրը։ Քերականությունն սկսվում է այսպես. «Մինչ բաղձանք բանին բնաւորեալ է ի յոգիս բանականաց արարչական գրութեամբ, յորմէ զարթուցեալ յօժարիմք ի քննութիւն սորին, որոյ դուռն և մուտ է քերականութեանս արհեստս...»։

29 Հիշատակագրությունն այս է. «...և զնուաստ աշխատողս Յոհ[աննէս] յաղաւթս յիշեա։ Զստացող սորա զՎարդան և զծնողսն իւր յիշեցէք ի Քրիստոս» (ձեռ. № 7037, էջ 11բ)։

30 Ձեռ. № 7037, էջ 75ա։

31 Եսայի Նչեցի, Վերլուծութիւն քերականութեան, աշխատասիրությամբ Լ. Գ. Խաչերյանի, Երևան, 1966, էջ 28 և հետ.։

Այս երկի գիտական արժանիքների գնահատությունը թողնելով լեզվաբաններին, նշենք այստեղ, որ Հովհաննես Ծործորեցին մեծ ճիգ է գործադրել Դիոնիսիոս Թրակացու և նրա հայ մեկնիչների ժամանակավրեպ դատողություններից ձերբազատվելու և ժամանակի գիտական պատկերացումներին համապատասխան և ուսումնական նպատակների համար դյուրմատչելի մի ձեռնարկ ստեղծելու համար։

Աշխատությունն արժեքավոր է նաև հեղինակի փիլիսոփայական հայացքների ուսումնասիրության առումով։ Մասնավորի (անհատի) և ընդհանուրի (տեսակի) հարաբերակցության հարցը քննության նյութ դարձնելով, մեր հեղինակը մերժում է Պլատոնի իդեալիստական տեսակետը, պաշտպան կանգնելով Արիստոտելին. «Յայսմ տեղւոջ,—գրում է նա,— արուեստաւորս (իմա՛ Դիոնիսիոս Թրակացին) Արիստոտէլի կարծեացն հետեւի, որ զանհատն պատուական և առաջին գոյացութիւն վարկանի, քան զտեսակն, թէպէտ Պղատոն զառասականն[32] ասաց առաջին, իբր թէ՞ի տեսակաց սմանց միրական գաղափարեալս ըստ ժամանակի։ Բայց Արիստոտէլ զինքն տանելով, թէ տեսանելն հաստատուն է քան զլուրն, որպէս զարեգակն ոչ ոք կարէ ժխտել, որ է անհատ, իսկ զանհրեւելի ինչ՝ բազումք, վասն որոյ և սա նախադասեաց առասականին»[33]։

«Համառօտ տեսութիւն քերականին» աշխատության մեջ ուշադրավ տողեր կան հաստատապես պնդելու, որ Հովհաննես Ծործորեցի վարդապետը քաջ լեզվագետ է եղել, տիրապետել է հունարեն, լատիներեն, թերևս նաև պարսկերեն լեզուներին[34]։

## բ. Մեկնութիւն Մատթէի աւետարանին

Հեղինակային ընդարձակ խորագիրն՝ այսպես է. «Լրումն թերոյն համառօտ տեսութեամբ սրբոյ յաւետարանին որ ըստ Մատթէի, հաւաքեալ նուաստ վարդապետի Յոհաննու Եզնկայեցւոյ, որ և ասի Ծործորեցի»։

---

Տեղին է նշել, որ Գ. Ջահուկյանի «Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում» (Երևան, 1954) աշխատության մեջ Ծործորեցու քերականության մասին խոսք չկա։ Հեղինակը, հետևելով արդեն հաղթահարված ավանդույթին, մի անձնավորություն է համարել Հովհաննես Պլուզ և Հովհաննես Ծործորեցի գործիչներին, ըստ այդմ էլ բավարարվել է միայն Պլուզի քերականական հայացքների վերլուծությամբ։

32 Քիչ հետո տալիս է «առասական» տերմինի բացատրությունը. «Եւ առասական է որ զհասարակաց էութիւն ցուցանէ, որգոն՝ մարդ, ձի»։

33 Ձեռ. № 7037, էջ 45ա։

34 Պարսկերենի իմացության մասին տվյալը երաշխիք չէ. անդրադառնալով հարաբարդ բառերին, Ծործորեցին ասում է, որ այդպիսիք շատ կան «ի պարսից և ի մերս լեզու, որպէս Նիւ-Խոսրով, Ջաւան-Խոսրով, Վարազ-Տրդատ, և մերս Լեւոն, Քաջ-Լեւոն, Քաջ-Վարդան և այլ սոյնպիսիք» (Ձեռ. № 7037, էջ 42ա)։ Հունարեն և լատիներեն լեզուների իմացության մասին անհերքելի փաստեր ենք գտնում աշխատության բառերի սեռերին նվիրված բաժնում. «Մէք,— կարդում ենք այնտեղ,—ոչ ի գոյութենէ վերակոչին, զի ոչ զբնութիւնս յայտնեն, այլ զձայնն նշանակս, որք ի յունին և ի հռոմայեցին լեալ է և յատուկ անուն արական և իգական և չէզոքին, զի որք յանուանց սկզբունս ունին զով, որպէս ասելն ով ալիօս ապոստոլոս (ὁ ἅγιος ἀπόστολος), որ լսի սուրբ առաքեալք՝ արական է, իսկ ասելն իա՝ իա օզօկօս (հավանաբար՝ ἡ δοκός—գերան)՝ իգական է, իսկ տօ քսօլս (հավանաբար τὸ ξύλο(ν) —փայտ) չէզոք է, զի անուն որ ի սկիզբն տօ ունի՝ չէզոք է. այսպէս և ի վախճանս անուանց յորում պատահին՝ զնոյն վախճանս ունին։ Իսկ հռոմայեցոյն եւ յատուկ. բանզի անուն պատահական, որ ունիցի յանգի իւրում զուս՝ արական է, և որ ունի զայ՝ իգական է, իսկ զում՝ չէզոք է. այսպէս ալպուս, ալպայ, ալպում» (Ձեռ. № 7037, էջ 38բ)։

Ներսես Շնորհալին, մինչև կաթողիկոսանալը, սկսել էր մեկնել Մատթեոսի ավետարանը, հասնելով մինչև V գլխի 17-րդ համարը. կարևոր այդ աշխատանքն ինչ-ինչ պատճառներով անկատար էր մնացել. որոշ փորձեր կատարվել էին շարունակությունը լրացնելու, բայց անհաջող: Նկատի ունենալով այդ և ընդառաջելով Ծործորի վանքում իր շուրջ համախմբված աշակերտներին, Հովհաննես Երզնկացին 1316 թ. լրացնում է այդ թերին, իր կատարածի մասին գրելով ընդարձակ հիշատակարան, որի կարևոր մասը մեջ ենք բերում ստորև. «...Ես՝ նուաստս ի Քրիստոս և յետինն յորդիս Սիոնի՝ ապիկար ոգիս Յոհաննէս Եզնկայեցի սպասաւոր բանի, բնակեալ ի վիճակ սուրբ առաքելոյն Թադէոսի, ի Վանս Ծործորու կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, այլ և ժողովեալ առ մեզ բանասէր անձինք ի յուսումն կրթութեան աստուածաշունչ տառից լսողութեան, յորոց յորդորմանէ և ի փափաքելի խնդրոյ եղեալ ի մտի առնել հաւաքումն մեկնութեան սրբոյն աւետարանին Մատթէի, լնլով զթերի նորին ըստ կարողութեան իմում»[35]:

Ղ. Ալիշանի հեղինակավոր կարծիքով՝ Շնորհալու թերին լրացնողը մեծատաղանդ բանաստեղծի «անուշ գրչէն հեռու չի մնար», այսինքն՝ կարողացել է ստեղծել համահավասար մակարդակի աշխատություն[36], իսկ Ներսես Տեր-Ներսեսյանի վկայությամբ՝ նա «հմուտ է աստվածաբանական և բարոյական հարցերում»[37]. ի լրումն կարող ենք ավելացնել, որ Մատթեոսի մեկնության Ծործորեցու բաժինը, կյանքի տարբեր բնագավառներից քաղված հետաքրքրական օրինակներ պարունակելով, օգտակար նյութ է ընձեռում պատմաբաններին՝ ուսումնասիրելու ժամանակի սոցիալ-տնտեսական այլազան երևույթները: Մի առիթով նա հայտնում է, որ «գոն յաշխարհի ըստ քաղաքի-քաղաքի սովորութիւն՝ տալ զարծաթն ի սեղանաւորս շահի», մի այլ առիթով արձանագրում, որ շատերը տրտնջում են և, նույնիսկ, մեղադրում արարչին՝ տեսնելով կյանքում սոցիալական անարդարություններ, տեղեկություն է հաղորդում վարձկան հնձվորներին տրվող աշխատավարձի և կերակուրի մասին, լկիչ ու հալածիչ համարում օտարերկրյա բռնակալներին, որոնք «կեղեքեն զկեանս մեր դառնութեամբ և ապա ի հայրենեաց մերոց արտալածեալ վարեն» և այլն: Այստեղ կարելի է գտնել նաև անսպասելի բնագավառների մասին ուշագրավ տվյալներ, որոնցից է, օրինակ, մրգերի բարձրորակ տեսակներ ստանալու եղանակի նկարագրությունը, անշուշտ քաղված հայ այգեգործների կենցաղից. «Թողում ասել և զայն,—գրում է նա,—թէ և զանբան բնութիւն տնկոց կարեն մարդիկ ի հաւանութիւն ածել, որպէս զթթուութիւն նռան քաղցրացուցանեն և կամ զդառնութիւն նշի անուշացուցանեն ի ձեռն արուեստին, զի զբեեկնի եպերկես փայտ վարսեալ ուսամբ յարմատս առացեալ տնկոցն՝ փոփոխեն զբնութիւն»[38]:

---

35 Ամբողջը տե՛ս Ղ. Ալիշան, Հայապատում, Բ, էջ 512—513, Հ. Տաշյան, Մայր ցուցակ, էջ 338, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 124—125 և այլն:

36 Ղ. Ալիշան, Հայապատում, Ա, էջ 120:

37 «Բազմավէպ», 1960, էջ 115:

38 Մեկնութիւն սուրբ աւետարանին, որ ըստ Մատթէոսի, արարեալ ի սրբոյն Ներսիսէ Շնորհալւոյ մինչև ի համարն 17 հինգերորդ գլխոյն, և անտի աւարտեալ յերանելւոյն Յոհաննու Երզնկացւոյ, որ և կոչի Ծործորեցի, Կ. Պոլիս, 1825, էջ 536, 422 390, 129 և 178 (էջերը մատնացույց են արված ըստ վերոհիշյալ օրինակների հերթականության):

Մինչ «Մեկնութիւն Մատթէի աւետարանին» աշխատության մասին մեր ասելիքն ավարտելը անհրաժեշտ է անդրադառնալ Ներսես Տեր-Ներսեսյանի «Պատարագ վասն ննջեցելոց» հոդվածին, որի 12-րդ բաժինն ամբողջապես նվիրված է Հովհաննես Ծործորեցու դավանաբանական հայացքների վերլուծությանը։ Հարգելի բանասերը իրավամբ նշում է, որ խնդրո առարկա աշխատության Կ. Պոլսի տպագրության մեջ կատարվել են աղճատումներ՝ կոծկելու համար հեղինակի կաթոլիկ եկեղեցու դավանանքին հարած լինելը, բայց ինքն էլ շեղվում է ճշմարտությունից, երբ Ծործորեցուն ներկայացնում է որպես Հայոց եկեղեցու դավանաբանական սկզբունքների ջատագով[39]։ Նա հաշվի չի առնում, որ Արտազ տեղափոխվելուց և Զաքարիա եպիսկոպոսի կուսակիցը դառնալուց հետո՝ այսինքն դոմինիկյան քարոզիչների Հայաստան ներթափանցելուց շուրջ մեկ տասնամյակ առաջ, Հովհաննես վարդապետն արդեն ծառայագրվել էր ունիթորական շարժմանը, ձայնափողը դառնալով կաթոլիկ եկեղեցու։

## գ. Մեկնութիւն մարգարէութեանն Դանիէլի

Այս մեկնության մատենադարանյան բնագիրը (ձեռ. № 1187, էջ 305ա—379բ)՝ սկզբից և միջին մասերից թերի է[40], բայց վերջում ունի ընդարձակ հիշատակարան. գրության հանգամանքների մասին տվյալներ կան նաև աշխատության միջին մասերում. Նեռի գալստյան և աշխարհի կործանման կանխագուշակումների կապակցությամբ արված դատողություններից հետո։ Ըստ այդ տվյալների շարադրված է 1316 թվականին Ծործորի վանքում, Վարդան վարդապետի խնդրանոք[41], նախորդ մեկնիչների՝ Հիպողիտի, Եփրեմի և Վարդան Արևելցու աշխատությունների քննական օգտագործման ճանապարհով (ինչպես ինքն է ասում՝ «յղկեալ ըստ չափու տարազու մտաց մերոց»)։

Միջնադարյան ընթերցողի համար այս մեկնությունը զգալի հետաքրքրություն էր ներկայացնում, մանավանդ իր այն մասերով, որոնց մեջ տեղեկություններ կան գրանցված Հին Արևելքի պատմության և առասպելաբանության մասին՝ ի լրումն Հին կտակարանի մեջ առկա պատմությունների։

Աքեմենյան Իրանի մասին, օրինակ, ի թիվս այլ տվյալների ասված է նաև հետևյալը. «Յետ Կիւրոսի յարեաւ Դարեհ, ապա Արտաշէս Ուշեղ, ապա Արտաշէս Քսերքսէս, և չորրորդն մեծացի (՞) յետինն Դարեհ, որ յարեաւ ի վերայ թագաւորութեանցն Յունաց, զոր սպան Աղեքսանդր՝ որդի Փիլիպոսի, և եբարձ զթագաւորութիւնն Պարսից, որ տևեաց ամս ՄԼ. (230)[42]։ Բայց գիտել պարտ է, զի նշանաւորսն ասաց Դ. թագաւոր, ապա թէ ոչ՝ չորեքտասան թագաւոր նստան Կիւրոսիւ և վերջին Դարեհիւ աթոռն Պարսից, որ զօրաժողով եղև ի վերայ Աղեքսանդրի»[43]։

---

39 «Բազմավէպ», 1960, էջ 114—124։

40 Այդպես թերի է նաև Երուսաղեմյան օրինակը՝ ձեռ. № 207, էջ 363ա—446ա (տե՛ս Մայր ցուցակ, Ա, էջ 584—585)։

41 Նորայր եպս. Պողարյանը այս Վարդան վարդապետին, որ, ինչպես տեսցինք, պատվիրատուն է եղել նաև «Համառօտ տեսութիւն քերականի» աշխատության, հնարավոր է համարում նույնացնել Վարդան Բարձրբերդցու հետ (տե՛ս «Հայ գրողներ», էջ 35)։ Հազիվ թե ճիշտ լինի այս ենթադրությունը։

42 Մի այլ տեղ, այս նույն տվյալը հաղորդելուց հետո, ասում է, որ «այլք ՄԽԴ (243) ամ կալեալ ասեն Պարսից թագաւորութիւնն»։

43 Ձեռ. № 1187, էջ 364—365ա։

Ծործորեցին մի երկու տեղ փորձ է կատարում Հին Սրբելքի պատմության առանձին դրվագների մասին Աստվածաշնչի և Թարգմանական պատմական երկերի մեջ առկա տվյալները շաղկապելու Հայոց Հին պատմության իրեն հայտնի տվյալների հետ։ Բելի մասին խոսելիս, օրինակ, նա անհրաժեշտ է համարում հիշեցնել, որ Հայոց նախահայր Հայկն է նետահարել ու սպանել նրան և այլն։

Ասացինք, որ այս մեկնության գրության հանգամանքների մասին կարևոր տեղեկություններ կան հեղինակային հիշատակարանի և շարադրանքի մեջ։ Նախ ծանոթանանք գլխավոր հիշատակարանին.

«Ընդ որում և մեզ լիցի մասն անարժանի անձինս սակաւ ինչ վաստակոցի ի բանս սորայ՝ նուաստ Յոհաննիսի Եզընկեցւոյ, որ և Ծործորեցի կոչեցելոյ, վայելել ի փառս շնորհեաց նորա, հանդերձ կրկին ծնօղօք, ի գթութեանն հօր ամենակալին և յաւեժախաղաց պարգև որդւոյն միածնի Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ և յուխս սիրոյ մարգասէր հոգւոյն աստուծոյ, որում վայել է փառք անեզրական և պատիւ վայելչական և գոհութիւն անվախճան այժմ և միշտ։

Եղև աշխատութիւնս մեր ի նպաստաւորութենէ հոգւոյն սրբոյ և սրբոց հարցն մերոց վարդապետացն առաջնորդաց՝ Հիպոզիտեայ, Եփրեմի և Վարդան վարդապետի և այլոց, ի թիվս Հայոց ՉԿԵ[44] (1316) և ի մարդեղութենէ ամաց Յիսուսի Քրիստոսի ՌՅ. և ԺԶ ամին, գրեալ և յղկեալ ըստ չափու տարագու մտաց մերոց, և կչիռ առ բանին եդեալ զմեկնութիւնն ի գաւառս հռչակաւոր Արտազ կոչեցեալ, ի վիճակ սուրբ առաքելոյն Թադէոսի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս Ծործորու կոչեցեալ, ձեռամբ նուաստ սպասաւորի Յոհաննիսի Եզընկեցւոյ, ի խնդրոյ եղբօր մերոյ բանի աշակերտելոյ Վարդան կոչեցեալ վարդապետի, և յիշատակ ինձ՝ անարժանիս հոգւոյ և մարմնոյ, այլ և ձեզ մասն եղիցի ընդ յիշման յիշեցելոյս անմոռաց յիշումն արարչին, որում փառք յաւիտեանս, ամէն»[45]։

Հիշատակարանի բնույթ ունեն նաև Նեռի գալստյան ժամանակի կապակցությամբ արված դատողություններին հաջորդող ստորև մեջբերվող տողերը. «...Եւ դարձեալ, ոչ զնեռինն ժամանակ թուէ աստ, քանզի զայն ի վեր անդ սաաց, այլ թուէ յառաջին գալստենէն տեառն այսչափ ամ, յորում կարապետք Նեռինն ըստ վարդապետութեանն և առաքելոցն հալածեն և չարչարեն, վշտացուցանելով զեկեղեցի, կեղեքելով զկեանս քրիստոնէից հոգեպէս և մարմնապէս, որպէս տեսանեմք այսօր։ Իսկ ի լրմանց ամաց նախ քան զգալ Նեռինն անզօրրանայ եկեղեցի և խաղաղանայ առ ժամանակ մի, և բարձցի գայթակղութիւնք, և այլասեռիցն կրօնք և հերձուածողաց խափանեսցի, և աւետարանն պայծառանայ ընդ ամենայն տիեզերս, և եկեղեցի բարձրանայ, և ապա յետոյ երևի Նեռն, և լիցի լրումն աշխարհի։

Արդ՝ ի գրելս մեր զմեկնութիւն թուալս էր թիւն տեառն ըստ մեզ մարդեղութեանն ՌՅ. և ԺԶ. ամ. և յորժամ այս հասանէ յերեսուն և հինգն, զի է պակաս ԺԹ. ամ, կատարին ասացեալ երանութիւնքս ի մարգարէէն ի վերայ համբերողաց։ Եւ դու եթէ ժամանեսցես ի թիւն յայն և տեսցես զբարութիւնն

---

44 Ձեռագրում, ընդօրինակողի վրիպումով, գրված է ՉԿԷ (1318). ուղղում ենք փրկչական թվականի, մյուս հիշատակարանում առկա տվյալի, ինչպես նաև Գ. Զարպհանալյանի (Պատմութիւն հայ. դպր., էջ 765) հիման վրա։

45 Ձեռ. № 1187, էջ 379բ։

եկեղեցւոյ՝ յիշեսցես և զնուաստս Յոհան Երզնկացի, որ և Ծործորեցի, զի ես յայսպէս զթիւս գայս մտածեցի, և եթէ ոչ լիցի այս, ընկալ զառաջին ասացեալն ի սրբոցն, որ վասն ուսուց Նեափնն, և զմեզ ազատ ի պարսաւանաց արասցես»[46]։

## գ. Քարոզներ

Միջնադարյան բարձրագույն դպրոցների ծրագրերի մեջ հատուկ նշանակություն էր տրվում այն գիտելիքներին, որոնք անհրաժեշտ էին նկատվում կրոնա-բարոյախոսական ու խրատական բովանդակությամբ քարոզներ հյուսելու համար։ Վարդապետացու ուսանողը, մինչև գավազան ստանալն ու ինքնուրույն գործունեության ասպարեզ մտնելը, հրապարակավ պետք է ցույց տար իր ձեռք բերած գիտելիքներն ու շնորհքը, հավուր պատշաճի քարոզ կարդալով՝ աստվածաշնչից քաղված որևէ բնաբանի շուրջ կամ եկեղեցական որևէ տոնի կապակցությամբ։

Ըստ ձևի և բովանդակության կուռ և գեղեցիկ քարոզներ շարադրելու հմտությունը անհրաժեշտ նախապայման էր համարվում Գլաձորյան համալսարանի շրջանավարտների համար։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ պահպանվել են այդ ուսումնական հաստատության կամարների տակ ստեղծված՝ ավարտուն քարոզներ կամ քարոզների նախաբան ու վերջաբաններ պարունակող մի քանի ձեռագիր ժողովածուներ։ Դրանց մանրակրկիտ ուսումնասիրությամբ հնարավոր է լինելու ավելի հանգամանորեն բացահայտել միջնադարյան Հայաստանի ուսումնական կենտրոնների կազմակերպչական սկզբունքների, ուսանողներին հրամցվող գիտելիքների, ուսուցման եղանակների հետ առնչվող խնդիրները[47]։

Հովհաննես Երզնկացին, լինելով Գլաձորյան համալսարանի շրջանավարտ ու դասախոս, չէր կարող այս կամ այն չափով չառնչվել քարոզչական աշխատանքին։ Եվ իրոք, աշխարհասփյուռ հայերեն ձեռագրերի էջերում պահպանվել են և՛ առանձին՝ հատուկենտ քարոզներ, և՛ մի շարք քարոզներից քաղկացած փնջեր՝ մեր հեղինակի անունով։ Ձեռքի տակ չունենալով քարոզչական այդ նյութերի ամբողջական բնագրերը, հնարավորություն չունենք այսօր հանգամանալից խոսք ասելու նրանց բոլորի բովանդակության ու պատմա-գիտական նշանակության մասին։ Բավարար տվյալներ չկան նույնիսկ որոշելու քարոզներից շատերի շարադրման ժամանակը, պարզելու, թե որոնք են դրանցից հնագույնները, երբ և ում կողմից են շարադասվել կողք-կողքի՝ փոքր ու մեծ խմբերի գոյացման հիմք հանդիսանալով և այլն։ Ըստ այդմ Հովհաննես Ծործորեցու գրավոր ժառանգության այս բնագավառի համակողմանի ուսումնասիրությունը վաղաժամ համարելով, փորձելու ենք սոսկ խմբավորել առկա նյութը։

Հովհաննես վարդապետի Ծործորի վանքում հաստատվելու ժամանակը որոշելիս անդրադարձել ենք արդեն Մատենադարանի № 627 ձեռագրին, որի

46 Նույն տեղում, էջ 373ա—373բ։

47 Այս առումով որոշ բան արդեն արված է (տե՛ս մեր «Գլաձորյան համալսարանը և նրա սաների ավարտական ատենախոսությունները» հոդվածը, տպագրված Երևանի Պետ. համալսարանի գիտական աշխատությունների XXIII հատորում, 1946, էջ 423—450), սակայն ձեռագրական նորահայտ նյութերը հնարավորություն են ընձեռում հաջողությամբ շարունակելու և խորացնելու ձեռք բերված արդյունքները։



Նկ. 5. Ծործորի վանքի ավերակները

մեջ ընդօրինակված է Ծործորեցու երեք քարոզներից բաղկացած մի փունջ. դրանցից առաջինը վերնագրված է այսպես. «Յոհաննիսի Եզնկաեցո, որ և Ծործորեցի տիեզերալոյս վարդապետի ասացեալ» (սկսվում է «Յարարչական բանէ անեղական լուսոյն հաստատեալ գոյացան բոլոր և մասնաւոր արարածք...» բառերով). քարոզն ամբողջական չէ. Ձեռագրերի մեջ հաճախակի հանդիպող քարոզից նախերգանքների կամ Գլաձորյան համալսարանի սաների ավարտաճառերի ընծայական մասի տպավորություն է թողնում:

Երկրորդ քարոզը՝ «Յոհանիսի Ծործորեցո հոգացեալ գրանէս» խորագրով (սկսում է «Վստահացեալ յուսո քաջութեամբ...» բառերով)՝ պահպանվել է անվթար: Հակառակ այն բանի, որ խորագրի մեջ հեղինակն արդեն Ծործորեցի է կոչված, բովանդակությունից պարզվում է, որ շարադրված է ուսանողության տարիներին: Վերջաբանում կան տողեր՝ ուղղված այնպիսի ունկնդիրների, որոնք գիտությամբ կատարյալ են, մտքով՝ լուսափայլ. նրանցից հեղինակը ներողամտություն է հայցում[48]: Ըստ այդմ՝ այս քարոզը շարադրված

48 «Իսկ մեք,— գրում է նա,— ըստ մերում տկար զօրութեան սուղ ինչ պատճառ ավար բանիս, վստահանալով առաջի կատարելոցդ, և զկատարեալն տեսութիւն՝ հոգին շնորհաց՝ բաց է առաջի լուսափայլ մտացդ ձերոց: Եւ մեք ի լրման բանիս զօրհնեալն ամենայնի բանական սեռից անլռելի ձայնիւ բարեբանեսցուք, և անծախելի շնորհաց նորին, հանդերձ երկրպագութեամբ, գոհութիւն մատուսցուք, խնդրելով՝ խաղաղութիւն պարգևեա ամենայն աշխարհիս» (Ձեռ. № 627, էջ 37ա):

պետք է լինի Գլաձորյան համալսարանում, որպես ավարտաճառ: Զգալի հետաքրքրություն է ներկայացնում գիտական բովանդակություն ունեցող հատվածներով. օգտակար տվյալներ է պարունակում միջնադարյան բարձրագույն ուսումնական հաստատություններում դասավանդվող առարկաների բնույթն ու տարողությունը որոշելու համար: Մասնավորապես ուշագրավ է քարոզի այն հատվածը, որ նվիրված է մարդկային հոգու բնական ու ստացական կարողությունների բացահայտմանը. «Արդ,—ասված է այնտեղ,— բնական զօրութիւնք յերկուս բաժանին՝ ի գիտնականս և ի կենդանականս. և են այսոքիկ՝ տրամախոհութիւնք, միտք, կարծիք, երևակաութիւնս, զգաութիւն, կամք, ընտրողութիւն, յօժարութիւն, բարկութիւն, ցանկութիւն...: Իսկ ստացական զօրութիւնք հոգոյն այն իսկ է՝ յորժամ զխորհուրդս աճեցուցանելով ի բնին ելցէ ուսման և կամ առաքինութեան, և ստասցի իմաստասիրութիւն, որ է գիտութիւն էակաց, և զտրամաբանական հանճարս: Եւ սոքօք են մասունք ուսմանց՝ զքերականութիւն ասեմ, զճարտասանութիւն, զաստեղաբաշխութիւն, զերաժշտականութիւն, զերկրաչափութիւն, զթվականութիւն և զայլսն, որ տեսակք են տեսականին: Նմանապէս և զգործնականին մասունք՝ զօրէնսդրութիւն և զդատողութիւնն, և կամ ըստ այլոց՝ զտնտեսութիւն, զբարոյականութիւնն և զքաղաքականութիւնն, և կամ զևս բարձրագոյնն՝ զանախտութիւն վարուց, զարդարութիւն, զողջախոհութիւն, զպարզմտութիւն, զհեզութիւն, զչափաւորութիւն» և այլն[49]:

Քարոզի մեջ կան նաև հեթանոսական հավատալիքների և տիեզերագիտական պատկերացումների (մասնավորապես՝ Արամազդի մանկունք կոչվող երկնային մարմինների) մասին հետաքրքրական տեղեկություններ:

Երրորդ քարոզը, որ № 627 ձեռագրում կրում է «Նորին Յովհաննէս վարդապետի ասացեալ ի փոխումն սուրբ կուսին և ի ծնունդն» խորագիրը, միջնադարյան ձեռագրերում հանդիպում է նաև առանձին ընդօրինակություններով[50]: Այն տեղ է գրավել նաև Մորձորեցու քարոզների ժողովածուի մեջ, որին անդրադառնալու ենք քիչ հետո:

Սրանցից բացի տեղեկություն ունենք մեր հեղինակի «միայնակ» ընդօրինակված երկու այլ քարոզների մասին ևս: Մեկի միայն խորագիրն է հայտնի. «Ս. Յոհաննոյ Երզն[կացւոյ], զոր մականուն Մորձորեցի յորջորջի. մեկնութիւն աւետարանի Մարկոսի ի Ե. կիրակէին աղուհացիցն, վասն մահու և կատարածի աշխարհի, ի բանն որ ասէ. Արթուն կացէք, զի ոչ գիտէք յորում ժամու գող գայցէ» (սկսվում է «Նախախնամութիւնն աստուծոյ և բարերարութիւնն յամենայն ժամ յայտնի...» բառերով)[51]: Մյուսի մասին տեղեկություն ենք քաղում Ղ. Ալիշանի «Հուշիկք հայրենեաց Հայոց» աշխատությունից. վերնագրված է այսպես. «Յովհաննէս վարդապետի Մորձորեցւոյն արարեալ ի բանէն Եսայեայ, որ ասէ. Հոգի տեառն ի վերայ իմ». վերջաբանի մեջ, զոհա-

49 Ձեռ. № 627, էջ 35ա:

50 Դրանցից են, օրինակ, հետևյալ ձեռագրերը. № 734 (էջ 67ա—89բ), № 2178 (էջ 361ա—370բ) և № 5933 (էջ 65ա—82բ): Սրանցում հեղինակի անունը չի հիշատակված: Վերջին (№ 5933) ձեռագրի մեջ քարոզը վերնագրված է այսպես. «Յաղագս արարչագործութեանն աստուծոյ և լուսաւորացն, որ ի չորեքշաբթի արարան, և փոխման տիրամօրն, և վասն մերս հոգոյս բաժանման»:

51 Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին, հատ. Բ, «Անտոնյան հավաքածու», Վիեննա, 1971, էջ 116:

բանական խոսքեր ուղեղով ասածուն, հեղինակն անվանի մի գործչի և իր անձի մասին ուշագրավ ակնարկներ է անում. «Եւ ի մատուրն ծնունդ և ի բանին ծնողութիւն և յերկունս մտաւոր աշխատութեանցն արժանացայ տկար և ցաւագին մարմնով. և ի մէջ ծփան ալեաց ծովածուփ աշխարհիս և տրտմաբեր կրից կենցաղոյս, առաջնորդեաց ինձ հոգին և էառ առ ասս բարիոք նաւուղղելի և իմաստուն կառավարողապետի»[52]։ Ըստ Ալիշանի՝ այս խոսքերը վերաբերում են Գլաձորի րաբունապետ Եսայի Նչեցուն, ուստի քարոզը շարադրված է Հովհաննեսի ուսանող եղած տարիներին։ Կարծում ենք, սակայն, որ մեջ բերված տողերը վերաբերվում են Արտազի վեհաշուք եպիսկոպոսին. կառավարողապետ բառը, որ քահանայապետ-եպիսկոպոս է նշանակում, պատշաճ է գալիս Զաքարիա Ծործորեցուն, որն նավուղղի[53] դեր ստանձնելով՝ փորձում էր Հայոց եկեղեցին առաջնորդել հռոմեական եկեղեցու հետ համաձուլելու ազգադավ ճանապարհով։ Իր մարմնի «տկար և ցաւագին» լինելու մասին հեղինակի ակնարկը նույնպես խոսում է հօգուտ այն ենթադրության, որ այս քարոզը հորինված է Հովհաննեսի կողմից Ծործորի վանքում հաստատվելուց տարիներ հետո։

Տարբեր ժամանակներում, այլևայլ առիթներով Հովհաննես Ծործորեցու շարադրած քարոզներից առնվազն 15-ը, համախմբվել են մի ժողովածուի մեջ նրա երախտավոր աշակերտներից մեկի կողմից, որը մեծարել է իր ուսուցչին «աղբիւր իմաստից», «այր կրոնավորիտ» հորջորջումներով և օժտել ժողովածուն «Երանաշնորհ և բազմիմաստ րաբունապետի Յովհաննու Ծործորեցւոյ կրոնաւորիր մատցն տեսութիւն» խորագրով։

Քարոզների այդ ժողովածուից հայտնի է երկու ընդօրինակություն. մեկը Երուսաղեմի մատենադարանի № 1003 ձեռագիրը, մյուսը՝ Վիեննայի № 646-ը[54]։

Ն. Պողարյանն ու Գ. Զարպհանալյանը Ծործորեցուն են վերագրում իրենց ձեռքի տակ եղած ձեռագրերի մեջ առկա քարոզներից 20-ը, ըստ Հ. Ոսկյանի նկարագրության՝ մեր հեղինակին են պատկանում նրա անվան տակ շարահարված քարոզներից 15-ը։ Այս խնդիրը կարոտ է հատուկ ուսումնասիրության։ Ըստ երևույթին ճշգրիտ է դուրս գալու վերջին կարծիքը, քանի որ Զարպհանալյանն ինքը, թվարկելով իր ձեռքի տակ եղած ձեռագրի մեջ եղող 20 քարոզները, ԺԶ քարոզի կապակցությամբ նշում է, որ սրա սկզբնավորությունը նույնն է «ընդ չորեքտասաներորդ ճառին», իսկ ԺԷ քարոզի առթիվ

---

52 Ղ. Ալիշան. Հուշիկք հայրենեաց Հայոց, Ա տպագրություն, Վենետիկ, 1869, էջ 479, Բ տպագր. 1921, էջ 420—421։

53 Այսպես («նաւուղիղ» ձևով) ենք սրբագրում քարոզից մեջ բերված հատվածի «նաւուղղելի» աղճատված բառը, նրան տալով «ղեկն իր ձեռն առած նավապետ» իմաստը։

54 Այդ ձեռագրերը նկարագրված են Նորայր եպս. Պողարյանի (Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, հատոր չորրորդ, Երուսաղէմ, 1969, էջ 4—6) և Հ. Համազասպ Ոսկյանի («Ցուցակ հայերէն ձեռագրաց Մխիթարեան մատենադարանին ի Վիեննա», հատ Բ, Վիեննա, 1963, էջ 130) կողմից։ Քարոզների այդ ժողովածուն ծանոթ է եղել նաև Գ. Զարպհանալյանին (տե՛ս «Պատմութիւն հայ դպրութեան», Վենետիկ, 1897, էջ 762—763). չգիտենք, սակայն, նա ձեռքի տակ ունեցել է վերոհիշյալ ձեռագրերից որևէ մեկի նկարագրությո՞ւնը, թե՞ այդպիսի մի ձեռագիր էլ պահվում է Վենետիկի Մխիթարյանների մատենադարանում։

1966 թվականին Երուսաղեմում ուսումնասիրել ենք № 1003 ձեռագիրը, որոշ քաղվածքներ կատարել առանձին քարոզներից, բայց նրանց հեղինակային պատկանելության հարցն այն ժամանակ մեր տեսադաշտից դուրս է եղել։

տասում, որ «յամանց ի գրչագրաց՝ Տիրատուր վարդապետի կը տրուի այս ճառ»։

Քարոզգրքի առաջին միավորի խորագիրն է. «Բանն որ առ Յովբ. Զինչ երկիր բղէ յորում լոյսն ագանիցի»։ Ասել ենք արդեն, որ այս քարոզը շրջանառության մեջ է եղել նաև որպես առանձին միավոր, ինչպես և Ծործորեցուն պատկանող երկու այլ քարոզների հետ շղթայված շարքով։ Հինգերորդ քարոզի վերջում պահպանվել է հեղինակի ընծայական-վերջաբանը, հասցեագրված «Երջանիկ լուսաւորիչ տանս Արևելեան», «ջահ անշիջանելի» կոչված նշանավոր մի գործչի, որի ջանքերով նրա գերդաստանի պայազատները մեծ դիրքի են հասել և այլն։ Ծործորեցին մաղթում է, որ նա և նրա մերձավորները՝ «անսասան կենօք, հոգեկան և մարմնական ճոխութեամբ յղփացեալ՝ ժառանգեսցեն զանփական հայրենիքս մինչ ի խորին ծերութիւն»։ Այս խոսքն, անտարակույս, ուղղված է Զաքարիա եպիսկոպոսին ու Արտազի ավատատեր հայ գերդաստանի իշխանաշուք անդամներին[55]։

Այս հիշատակարանի առկայությունն իսկ ընդհանուր շարքի մեջ մտած ու հինգերորդ տեղը գրաված քարոզի վերջում ամրապնդում է մեր եզրակացությունը՝ Ծործորեցու քարոզների ժողովածուի առանձին միավորների տարբեր առիթով ու տարբեր ժամանակներում գրված լինելու և հետագայում, ուրիշ մեկի կողմից, մի կազմի տակ համախմբվելու մասին։ Այս կարծիքն ավելի է ամրապնդվում ԺԲ համարը կրող քարոզի ուսումնասիրությամբ (Վիեննայի ձեռագրում սրան համապատասխանում է ԺԳ քարոզը)։ Սրա վերջում եղող հիշատակարանից պարզվում է, որ նրա հեղինակը Ծործորեցու աշակերտներից մեկն է, ամենայն հավանականությամբ հենց այն աշակերտը,

---

55 Տասրև մեջ ենք բերում այդ վերջաբան-հիշատակարանը առանց կրճատումների, հաշվի առնելով նրա մեջ գրանցված տվյալների ու ակնարկների օգտակարությունը Արտազի հայ ավատատերերի, մանավորապես Զաքարիա Ծործորեցու գործունեության ուսումնասիրման համար. «...Նոյին և մեզ մասնաւորեսցէ Թագաւորն փառաց եկեալ յաշխարհ՝ արքայութեանն իւրոյ հաղորդս լինել, և զնշոյր վիճակ ազգիս Հայկայ զքահանայութիւն և զթագաւորութիւն պահեսցէ, և թէ ինչ ի չարէն, որում ընդ բարիս սերմանցն իցէ մշակեալ յանգաստանս եկեղեցւոյ՝ արմատաքի խլեսցէ է լոյսն ճշմարիտ Քրիստոս, որ լուսաւորէ զամենայն մարդ, որ գալոց է յաշխարհ, լուսաւորեսցէ զայս արտից մերոց և ընդ ծագման լուսոյ առաւօտու ծագեսցէ Քրիստոս զգութ անճառելի խնամոց յարարածս իւր, և ընդ զգալի լուսոյս տարածման արեգակն արդարութեան Քրիստոս ծառայեսցէ զլոյս հոգևոր գիտութեանն իւրոյ յամենայն ազգս քրիստոնէից, և լուսաւորեալս բանիւն ճշմարտութեան զերջանիկ լուսաւորիչ տանս արևելեան, լոյսն մշտնջենաւոր պահեսցէ զսա ջահ անշիջանելի ի սուրբ եկեղեցի, և զպտուղս հոգւոյ սորա պայծառացուսցէ օրըստօրէ հայել ի խորս անճառ գիտութեան նորա, և ամենայն ներհակք սորա՝ երևելիք և աներևոյթք՝ տապալեսցին ի ներքոյ ոտից սորա, և գիցէ զսա իբրև զվէմ անդամանդեայ պարսպին հաւատոյ, զի ամենայն որ որ հարցի ընդ սա՝ փշրեսցի, և յոյր վերայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Եւ որք սովաւ կարգեալ են իշխանութիւնք և ի զարմից սորին շառաւիղեալք բարեպաշտ պարոնայք՝ զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի նոցա յերս և ի մուտս, և եղիցին կարող յամենայն գործս քաջութեան, և անսասան կենօք, հոգեկան և մարմնական ճոխութեամբ յղփացեալք ժառանգեսցեն զանփական հայրենիքս մինչ ի խորին ծերութիւն, տեսանելով զորդիս և զորդիս որդւոց մինչ յերիս և չորս ազգս, որպէս զի մի պակասեսցէ ձիր օրհնութեան և զաւակ բարեպաշտութեան ի տանէն յայսմանէ՝ մինչ ի գալուստ երկնաւոր Թագաւորին Քրիստոսի» (Երուսաղեմ, ձեռ. № 1003, էջ 68)։

Քարոզի միջին մասերում ևս կան Զաքարիային հասցեագրված մեծարանքի խոսքեր. դրանցից է, օրինակ, հետևյալը. «Նոյնպէս և դու ըստ անարգամեծար չնաշխարհիկ բոյին ճոխութեանդ, ընդունելով զմերս ի գոհութիւն անկարօտին փառաց վերացուսցես։ Եւ արդ՝ ծն առեալ զաղօթս քո՝ մխեսցուք ի քննութիւն» (Նույն ձեռագիր, էջ 57)։

*որին հանձնարարված է եղել տարբեր ձեռագրերի մեջ ընդօրինակված քա-րոզչական նյութերի համախմբումով և խմբագրությամբ ստեղծել իր ուսուցչի քարոզների մի փունջ։ Անունն անհայտ խմբագիր-աշակերտը սրանց մեջ ագուցել է նաև իր հեղինակած մի քարոզը, որի վերջում փաքրի գովք է հյուսել իր ուսուցչի մասին, հայտնելով, որ նա՝ րաբունապետ Հովհաննեսը «յայսմ իրակերտութեան գործոյ եղև նպաստ և առիթ՝ յորդորական բանիւք քաջալերս տալով»*[56]*։*

*Այս նախաբանից հետո մեջ ենք բերում այստեղ Հովհաննես Մործրեցու քարոզգրքի ամբողջական ցանկը, հիշեցնելով՝ նախ, որ նրա մեջ կան նաև ուրիշ հեղինակների պատկանող միավորներ (հատկապես վերջին մասերում), և որ Մործրեցու ոչ բոլոր քարոզներն են տեղ գտել այս ժողովածուի մեջ։*

Երանաշնորհ և բազմիմաստ ռաբունապետի Յովհաննու Մործրեցւոյ կո-ռովարիր մտացն տեսութիւն.

*ա. Բանն որ առ Յովբ. «Զինչ երկիր իցէ յորում լոյսն ագանիցի».—Եթէ ոք իմաստուն խորհրդով ներակրթել զինքն կամիցի...*

*բ. «Մի երկնչիր հօտ փոքրիկ, զի հաճեցաւ հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն».—Թէպէտ և ըմբոն ուրեմն էր մեզ աստանօր...*

*գ. «Կապեսցէ զորթոյ զյաւանակ իւր».—Յաղագս խորհրդոյ լուսափայլ տօնիս...*

*դ. «Տէր զլուր քո լուայ և երկեայ».—Զոր օրինակ մշակ ոք հմուտ, որ երկրագործութեան արուեստին իցէ հրահանգեալ...*

*ե. «Այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի».—Աստուածն բան հրամայէ ուրեք յիւրում վարդապետութեանն...*

*զ. «Այլ մեզէն եղեալ ականատես նորա մեծութեանն».—Թէպէտ հրաման ի տեառնէ ընկալեալ ոչ հոգալ յորժամ յատեան կոչիցիմք...*

*է. «Ահա ես առաքեմ զհրեշտակ իմ».— Յիրաւի ի սկիզբն նախադրութեան բանիս եպերեցայ ի գերահրաշ և ի հոգիահրաւէր ժողովոյդ...*

*ը. «Լուր Իսրայէլ, տէր աստուած մեր տէր մի է».— Վստահացեալ յուսոյ քաջութեամբ...*[57]*։*

*թ. «Որպէս ջուր ցուրտ՝ ծարաւեալ անձին ախորժելի է». Ի հոգին սուրբ։— Բնադատիմ ահա և յոյժ վարանիմ յերկաքանչիւր կողմանց...*

*ժ. «Ժամանակ ծնանելոյ և ժամանակ մեռանելոյ».— Բանական բնութիւնք արարածոց յերկուս մասունս բաժանեալ են...*

*ժա. «Առ քեզ, տէր, համբարձի զաչս իմ».—Եւ ո՞րպէս համբառնալ անձն առ աստուած...*

*ժբ. «Ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ».—Յերիս բաժանի բանական բնութեանս սեռք...*

*ժգ. «Ես իմաստութիւն բնակեցայ ի խորագիտութեան».—Յարարչական բանէ անեղական լուսոյն հաստատեալ գոյացան...*

---

56 Նորայր եպս. Պողարեան, *Մայր ցուցակ..., հատոր չորրորդ, էջ 5։*

57 *Վիեննայի ձեռագրում այս քարոզից հետո՝ 9-րդ համարի տակ՝ ընդօրինակված է Երուսաղեմի ձեռագրից բացակայող հետևյալ քարոզը. «Խորհուրդն, որ ծածկեալն էր յաւիտենից. խոր[հեալ] զբարիս առ[նել և] մարդկան»—Բարի աննէն յերեք տեղ է՝ ի խորհուրդն, ի բերանն, ի գործն...* (Հ. Ոսկյան, *Ցուցակ..., էջ 130*)։

ժդ. «Զի՞ բարի և զի՞նչ վայելուչ զի բնակեն»,—Հրամայէ տէր ի սրբում աւետարանին, թէ որ խնդրէ ի քէն՝ տուր...
ժե. «Ահաւասիկ ես ածից զծառայ իմ զծագումն».—Յարեւելեաց աստի ոչինչ ըղձալի գոլ քան զսիրելեացն կատարել բաղձանս...
ժզ. «Փոքր էի ես յեղբարս իմ».—Յերիս բաժանի բանական բնութեանս սեռք...
ժէ. «Զխորհուրդ արքայի ծածկել բարւոք է».— Եթէ որ ի մարդկայինն բնութենէ մաքրեցաւ...
ժը. «Եւ ահա չորս կառք ելանէին».—Բազում ինչ առնեմք զոր ոչ կարեմք...
ժթ. «Երդուաւ տէր Դաւթի ճշմարտութեամբ».—Որպէս յաստեղս արեգակն և ի կենդանիս զիմակն...
ի. «Ի քէն է, տէր, աղբիւր կենաց».—Ի կաւոյ բանիս հայելով երիս խորհուրդս ծանուցանի մեզ...[58]:

Այս քարոզներից հինգերորդի մեջ Սործորեցին, պատասխանելով «զի՞նչ է առակ» հարցին, հայտնում է, որ սուրբ գրքի մեջ առակ բառն օրինակ բառի իմաստով է գործածված. «Իբր թէ օրինակաւ յայտնի կացուցանել զբանին իմաստ յորժամ լսողքն անկատարք իցեն, որպէս առնեն կատարեալ վարժապետք ծանրալուր ծանօթից»[59]: Ղեկավարվելով այս սկզբունքով, Սործորեցի վարդապետը, ինչպես իր քարոզներում, այնպես էլ մյուս աշխատությունների մեջ, հաճախ է կիրառում կյանքի տարբեր բնագավառներից քաղված հանրամատչելի օրինակներով «ծանրալուր» մտքեր բացահայտելու եղանակը: Այլև այլ առիթներով նա անդրադառնում է վարձկաններին, շեշտելով այն հանգամանքը, որ նրանք աշխատում են վարձ ստանալու համար միայն. «Քանզի մարդկան սովորութիւն է,—գրում է նա,—որքան ոչ են ընկալեալ զվարձս վաստակոցն՝ արագ են ի փոյթն, իսկ յորժամ ընդունին՝ ծուլանալով կասին ի գործոյն»[60]: Մեկ ուրիշ քարոզի մեջ ասում է, որ «Վարձկանն զբովանդակ զգործս տեառն կատարելով և ոչ զմիով ինչ անցանէ ի գործեացն, ապա վարձուցն արժանացի»[61]: Քանիցս նա անդրադառնում է ծառա և ազատ մարդկանց գոյավիճակի տարբերությանը. «Զոր օրինակ,— գրում է մի առիթով,— ի տան իշխանի առ որդիս սիրելի և առ ծառայս է տեսանել զանազանութիւն». Երկուսն էլ հլու հպատակ են իրենց հոր կամ տիրոջ հրամանին, բայց նրանց հնազանդության հիմքում ընկած են միանգամայն տարբեր գործոններ. ծառա «ըստ առաջի ախորժակաց», այսինքն իր ազատ վիճակի քաղցր հուշերը փայփայելով, միշտ տենչում է ազատագրվել ստրկական կապանքներից. Նա ենթարկվում է տիրոջ կամքին՝ տանջանքի երկյուղից. «Ոչ ի սիրոյ սպասաւորեալ յորդորի, բայց... պակուցեալ յերկիւղէ տանջանացն՝ ամենայն հրամանին պատկառ կայ հնազանդութեամբ»[62]: Մի այլ առիթով գրում է. «Զոր օրինակ ծառայ ապստամբ հեռացեալ ի տեառնէ իւրմէ, կցորդ լեալ գողոց և ատա-

58 Այս ցանկն արտագրել ենք Գ. Զարպհանալյանի վերոհիշյալ աշխատությունից, սրբագրելով ու ճշտելով մյուս աղբյուրներով (տե՛ս 54-րդ ծանոթագրությունը):
59 Երուսաղեմ, ձեռ. № 1003, էջ 60:
60 Նույն տեղում, էջ 31:
61 Մատենադարան, ձեռ. № 627, էջ 36ա:
62 Երուսաղեմ, ձեռ. № 1003, էջ 23:

դակաց և զժառանգութիւնս տեառն իւրոյ գերեալ՝ ի ծառայութիւն վարէ յաշխարհ հեռի» և այլն[63]։ Ավելի ուշագրավ է ծառաների և ազատ մարդկանց իրավական վիճակի մասին Տարօնեցու մի դատողությունը. «Թէ իշխանի ուրուք ծառայ հարուստ իցէ և այլ ոք ազատ և աղքատ, ոչ կարէ նախադաս լինել ծառայն ազատին։ Նոյնպէս և նախադրութիւնն իբր ազատ իմն նախադասեցաւ մակբայիս, իսկ սա վասն փարթամութեանն՝ զկնի»[64]։

Ժամանակի սոցիալ-տնտեսական կյանքի տարբեր բնագավառների, դասակարգերի, նրանց փոխհարաբերությունների ու պայքարի և հարակից հարցերի մասին Հովհաննես Տարօնեցու քարոզների մեջ առկա մեծաքանակ ու կարևոր տվյալները բարձրացնում են նրանց ճանաչողական արժեքը, նպաստելով միջնադարյան պատմության մթին ծալքերի լուսաբանման գործին։

## ե. Չափածո ստեղծագործություններ

Գլաձորյան համալսարանի սաների ընդօրինակած ձեռագրերից շատերի մեջ կան չափածո հիշատակարաններ[65]. սրանից կարելի է հետևցնել, որ միջնադարյան Հայաստանի ուսումնական բարձրագույն հաստատությունների ուսանողները ծանոթացել են նաև չափածո գրվածքներ շարահարելու տարրական հնարանքներին։ Չափ ու հանգի մասին ընդհանուր գիտելիքներ ձեռք բերած, տնակապ տառերով որևէ անուն կամ բառ հոդելու եղանակներին ծանոթացած երիտասարդները դրանով, իհարկե, բանաստեղծ չէին դառնում, բայց ավարտելով Համալսարանը և գործունեության ասպարեզ մտնելով, ըստ անհրաժեշտության՝ առավել կամ նվազ հաջողությամբ՝ շարադրում էին չափածո հիշատակարաններ, ողբեր ու գանձեր։

Ոտանավոր գրվածքներ էր հորինում նաև Հովհաննես Երզնկացին։ Դեռևս Գլաձորում գտնված տարիներին նա չափածո մի հիշատակարան էր հյուսել 1306 թ. ընդօրինակած իր ձեռագրի մեջ, գովերգելով ուսումնական այդ հաստատությունը, բացահայտելով իր աշխատանքի հետ կապված դժվարությունները։

Տալիս ենք ստորև 26 տողից բաղկացած այդ հիշատակարանը.

Կարգիս և զանձն իմ եղկելի
Եւ մեղաներկ արհեստ գրչի,
Զոր և մատամբ ծրագրեցի
Ես՝ Յոհ[աննէս] աղքատ ոգի,
Տառապանօք թանձրագունի,
Կարօտութեամբ անպատմելի.
Սակայն փափաք յոյժ տենչալի
Եւ ախորժանք անքննելի,
Զիս յորդորեաց ցայս գործ իմի՝
Զսա շարել ի քարտիսի։
Զի յայս տեղիքս յորում էի

63 Նույն տեղում, էջ 65։

64 Այս նախադասությունը քաղված է Հովհ. Տարօնեցու «Համառօտ տեսութիւն քերականին աշխատությունից (տե՛ս Մատենադարան, ձեռ. № 7037, էջ 63ա)։

65 Տե՛ս օրինակ, Մխիթար, Սանփանոս, Վարդան և Եղեկիել գրիչների հիշատակարանները («ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 103—104, 745, 165, 300, 302 և այլն)։

Էր դպրութիւն հրաշալի,
Եւ ես կարօտ այժմ տառի,
Զի յիւր տեղին սա հասանի՝
Շտապեցա յաւէտ կարի,
Բայց իւր տեղոյն ոչ հասուցի,
Զի եկն եհաս սա ի կարգի
Ընթեռնելոյ ի հանդիսի.
Տակաւ կիսով չափ է թերի,
Հանգէտ գոլով սա աւարտի։
Զոր աղաչեմք, որք հանդիպի
Աստուածախօս այս մատենի,
Յիշման գոլով զմեզ արժանի
Զենման գառինն առաջի,
Եւ մաղթանք աղերսալի
Խոշորութեանս ներելի[66]։

Հիշատակարանը, ինչպես տեսնում ենք, շարադրված է կանոնավոր չափածոյով և զուրկ չէ բանաստեղծական ներշնչումից։ Ուստի բնական է ենթադրել, որ սրան նախորդել ու հաջորդել են չափածո այլ ստեղծագործություններ։ Եվ եթե ավելի վաղ շրջանի նմուշներ չեն պահպանվել, հետագա տարիների ստեղծագործություններից հայտնի են մի քանիսը։ Դրանցից մեկը հասել է մեզ՝ մուտք գործելով XV դարի սկզբներին ստեղծված «Գանձարան» կոչվող ժողովածուի տարբեր խմբագրությունների մեջ, կոչվելով մերթ գանձ, մերթ երգ կամ քարոզ, առնչվելով ծննդյան երկրորդ կամ երրորդ օրերին և ջրօրհնեքին. բաղկացած է 12 տներից, որոնց սկզբնատառերով հոդվում են «Յոհաննեսի երգ» բառերը[67]։ Իր կառուցվածքով նմանվում է ավելի շարականային ստեղծագործությունների, ձայնագրված է հայկական հին խազերով, ուստի հորինվել է որպես երգ, վկայություն տալով նաև հեղինակի երաժշտական գիտելիքների մասին։ Տարբեր խորագրերից նախնական կարելի է համարել «Երգ ջրօրհնեաց»-ը, որ պահպանվել է № 5951 ձեռագրում (էջ 42ա—44ա)։

Սկսվում է այսպես.

Յամենայն ժամ աւրհնեմք զաւրհնեալ փրկիչդ Էմանուէլ՝
ծնեալդ ի կուսէն,
Եւ վերստին ծընընդեամբ մկրտեցար այսաւր ի Յորդանան
ի Մըկրըչէն,
Նորին բարեխաւսութեամբ ընդալ զաղաչանս քոց պաշտաւնէից,
աղաչեմք։

66 «ԺԵ դարի հիշատակարաններ», էջ 43—44։

67 Պահպանվել է բազմաթիվ ձեռագրերում, որոնցից մի մասի խորագրերից բացակայում է հեղինակ Հովհաննես Ծործորեցու անունը։ Հեղինակի մասին վկայություն պահպանել են Մաշտոցի անվան Մատենադարանի №№ 474, 5899, 5951, 6489 և այլ ձեռագրերը, ինչպես նաև Զմմառի վանքի № 510 ձեռագիրը (տե՛ս «Ցուցակ». հատ. Բ, էջ 108)։

*Որ սրբեցեր բղջուրսըն Յորդանանու՝ սրբիչդ աշխարհի,*
*Տալով ըզկընիք նորոգման որդոց Սիովնի,*
*Տուր մաքրութիւն սուրբ եկեղեցոյ և ազատութիւն քում*
*ժողովրդեանս, աղաչեմք...*[68]։

Հայ եկեղեցու երկու հակառակորդ խմբակցությունների միջև ծավալված գաղափարական գոտեմարտերի արձագանքները և մեր հեղինակի դիրքավորումն այդ պայքարում արտացոլված ենք գտնում երգի 9-րդ տան մեջ, ուր նա, ջատագովը լինելով լատինական եկեղեցու հետ միաբանելու քաղաքականության, աղաչում է աստծուն զորավիգ լինել քրիստոնեական եկեղեցիների համախմբման ու միավորման շարժմանը։ Նա գրում է.

*Ի խաղբից թըշնամոյն պարըսպեալ ամրացոյ սուրբ եկեղեցի,*
*Եւ յանուն քո ժողովելոցս շնորհեա զքաւութիւն յանցանաց*
*և թողութիւն մեղաց՝ միածին որդի աստուծոյ.*
*Ահա յիշեա և ես առաւել բամեա բզցրուեալսն ի մի*
*միաբանութիւն հաւատոյ, յուսոյ և սիրոյ, աղաչեմք*[69]։

Հովհաննես Թործորեցին հատուկ ակնածանք է ունեցել Ներսես Շնորհալու գրական ժառանգության նկատմամբ։ 1316 թ. լրացնելով Մատթեոսի ավետարանի Շնորհալու մեկնությունը և հյուսելով այդ մասին հիշատակարան, նա մեծարում է իր սիրելի հեղինակին, կոչելով նրան «գերապատիւ և գերահրաշակ հայր», «երկրորդ լուսաւորիչ սուրբ եկեղեցւոյ», և «կորովամիտ և համեղաբան կաթողիկոս»[70]։

«Կորովամիտ և համեղաբան» Շնորհալու ստեղծագործություններից մի քանիսը, և՛ իրենց բովանդակությամբ և՛ ձևով, խորապես ներգործել են Թործորեցու վրա, և նա նրանց նմանողությամբ ստեղծել է նոր գործեր։ Շնորհալին, օրինակ, Սողոմոն իմաստունի, նրան վերագրված Առակաց գրքի Ժ («Որդի իմաստուն...») և ԻԵ («Փառք աստուծոյ...») գլուխների, ինչպես նաև Ժողովողի ու Երգ-երգոցի մասին գրել է բանաստեղծություններ[71]։ Դրանց նմանողությամբ Առակաց գրքի Թ («Իմաստութիւն...») գլխի մասին մի բանաստեղծություն էլ գրել է մեր հեղինակը, որ տրվում է ստորև.

Նուաստ Յոհանիսի Թործորեցոյ
Իմաստութիւն գլխոյն

*Յիմաստութիւն կենաց վերին*
*Շարժեա և զիմ սիրտ բստորին*
*Որում բղձամ տարփմամբ կրկին*
*Դրպիր լինել Սողոմոնին.*

---

68 Մատենադարան, ձեռ. № 5899, էջ 56բ։

69 Ձեռ. № 5899, էջ 58բ, № 474, էջ 33ա—33բ.

70 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 124։

71 Տե՛ս Տեառն Ներսէսի Շնորհալւոյ Հայոց կաթողիկոսի բանք չափաւ, Բ տպագրութիւն, Վենետիկ, 1928, էջ 380—395։

Հեղցես և յիս առատ զհոգին,
Արփիաւոր զիմաստ բանին,
Առնուլ զտիպ, որ աստ քերին
Առակաւոր խորոց խրթին,
Նմանել տոհմի Իսրայէլին,
Որ այս պարգև վայելեցին.
Եկեղեցոյ սուրբ ժողովին,
Առնել և զիս հաղորդ նոցին,
Սրբել սիրով յաղտից զմարմին,
Այլ և զհոգիս իմ անմարմին՝
Ի փառս քո սուրբ տաճարին,
Երգել զերիս սուրբ սրովբէին.
Էից լուսոյ հօրդ երկնային,
Այլ և որդոյ քում միածնին
Բղխման հոգոյդ ի մի բնութիւն
Եւ կատարեալ երրեակ անձին,
Այժմ և յանցեալն, ապագային
Տալ աւրհնութիւն զյաւիտեննին,
Նման իննեակ դասուց յերկին
Որք են սկսեալ ՝ւ ոչ դադարին[72]:

Ներսես Շնորհալին ունի երեք ստեղծագործություն՝ նվիրված հայոց այբուբենի տառերին, որով փորձում է նորավարժ մանկանց սրտերում բորբոքել սեր հանդեպ եկեղեցին, ուսումն ու գիտությունը.

— Այբն անսկիզբն ասէ զաստուած,
Անեղ բնութիւն՝ ոչ արարած...
— Այբն աստուծոյ զքեզ մերձակայ
Խրատ լինել, թէ հաւատա...
— Այբն առաջին ըզքեզ, տըղայ,
Հանէ յիմաստըն գերակայ...

Ահա սրանք են միջնադարյան Հայաստանում շատ տարածված այդ գեղեցիկ ստեղծագործությունների սկզբնատողերը[73]:

Հովհաննես Մործորեցին սրանց նմանողությամբ հորինել է իր «այբբենականը», որի մեջ նույնպես կենտրոնական տեղ է գրավում խրատը, հնազանդության քարոզը, ուսման գովքը: Այս բանաստեղծության վերջում, դարձյալ Շնորհալու հետևողությամբ, գրված է չափածո հորդորակ-հիշատակարան՝ «Յոհանիսի բան» տնակապ բառերով, որից հետո ընդօրինակված է Թ. Սաղմոսի մասին գրված մեզ արդեն ծանոթ բանաստեղծությունը, և ապա՝ այս եզրափակիչ նախադասությունը.—«Տունք ԻԳ (23), այբուբենին, ԾԹ (59) ընդ ամենայն, ՉՀԳ»[74]: Եվ իրոք, չափածո հորդորակը՝ Սաղմոսի գովքի հետ միասին, պարունակում է 23 երկտող տուն, իսկ «այբբենականը»՝ 36 քառատող տուն, ընդամենը՝ իսկապես 59 տուն: Վերջում գրված ՉՀԳ-ը, անտարա-

72 Մատենադարան, ձեռ. № 2407, էջ 201ա—201բ. № 2079, էջ 143բ: Երկյակ տողերի սկզբնատառերով հյուսվում են «Յոհաննեսի է բան» բառերը:

73 Ն. Շնորհալի, Բանք չափաւ, էջ 335—345, 351—367, 369—379:

74 Ձեռ. № 2079, էջ 143բ:

կույս, միմյանց կից գրված չափածո գրությունների հորինման թվականն է՝ 1324 թ., որը Մործորեցու ձեռքով գրված ու մեզ հայտնի ամենավերջին տարեթիվն է։

Ստորև, ընդհանուրի մասին գաղափար տալու համար, մեջ ենք բերում ուշագրավ այդ բանաստեղծության բուն մասից մի քանի քառյակ, իսկ Հորդորակ-հիշատակարանն՝ ամբողջությամբ։

Յոհաննէս վարդապետի Մործորեցոյ
ոգեալ ի չափ մերոյին տաղից՝
ոտանաւոր ձեւով

*Այբն՝*

*Արարած զքեզ աւէ*
*Մահկանացու ի բնութենէ,*
*Մերկ ես եկեալ ի յարգանդէ,*
*Մերկ դառնալոց ես յաշխարհէ։*

*Բենն՝*

*Բանալ տա քեզ դաշըս հոգւոյ*
*Բնաւ չըսփրել զկամըս մարմնոյ,*
*Զի մի բողոք բառնաս յետոյ*
*Զունայնութեան զհետ երթալոյ....*

*Կենն՝*

*Կատարած քեզ և յագումն,*
*Կաթն իմաստից առ ի յարբումն,*
*Այլ և կենաց կըցորդ զուսումն,*
*Զի մի յետոյ գաս ի զղջումն....*

*Շայն՝*

*Շուրջ պատեսցես ուսման գրոց,*
*Որ զմիտս առնէ զինչ բով հալոց,*
*Մաքրագործէ ի յարքունուց,*
*Եւ արասցէ հաղորդ վերնոց....*

*Ջեն՝*

*Ջանիւ ստիցէ ըզքեզ ի խրատ,*
*Զի գիտութիւն առցես առատ,*
*Եւ մի մնասցես յուսմանց աղքատ,*
*Զի տայցես վրէժ և դատ...*

(Յորդորակ)

*Յորդորական ձայնիւ գոչեմ,*
*Նախ եկեղըցըդ բողոքեմ,*
*Որ գրեցի զբանըս պատմեմ՝*
*Ես Յոհաննէս ձեզ ծառայ եմ.*

*Հեռի եղէք, ահա ասեմ,*
*Յախտից մարմնոյ, զձեզ աղաչեմ։*
*Ահա եհաս աւուրն գրեմ*
*Եւ ժամ մահու, որ ժամանեմ,*

Նեղիմ տապով, զոր այժմ երկնեմ,
Ձանիմ ջուապ, պատասխանեմ,
Ի դատաստան ես մտանեմ
Եւ չիմ մեղացն յոյժ ամաչեմ,
Սրբոցըն փառս, զոր տեսանեմ,
Վիշտ տանջանօք զանձս կոծեմ.
Ի մեղական մարդ, զայս գիտեմ,
Բնութեան նոցին հաւասար եմ,
Բայց ի գործոցն յոյժ հեռի եմ,
Զներհակ նոցին, և մրտածեմ,
Այս ինձ կրկին / / / գործեմ
Զի զլաւն այլոց ուսուցանեմ,
Նման լխանի՝ զայլըս սրբեմ,
Ի սրոյ բանին զիս յոյժ բթեմ[75]։

Հովհաննես Մորձորեցու չափածո ստեղծագործությունների մեջ հատուկ տեղ են գրավում հանելուկները, որոնց անդրադառնում ենք առանձին պարբերությամբ։

### գ. Հանելուկներ

Ներսես Շնորհալու՝ ժողովրդական բառ ու բանով համեմված, դյուրալուր և հետաքրքրաշարժ հանելուկները սիրված ստեղծագործություններ են եղել և լայն տարածում գտել ամենուրեք։ Նրանց նմանողությամբ միջնադարում ստեղծվել են հանելուկների նոր շարքեր, որոնք, ընդօրինակվելով հետագայում Շնորհալու հանելուկներին առընթեր՝ ձուլվել են նրանց հետ, զրկվելով իրենց հեղինակացույց խորագրերից[76]։ Շնորհալուց հետո հանելուկներ են ստեղծել Հովհաննես Պլուզը, Գևորգ Երզնկացին, Գրիգոր Մերենց Խլաթեցին[77], Հովհաննես Մորձորեցին և ուրիշներ։ Մորձորեցու հանելուկների մեզ հայտնի միակ ընդօրինակությունը պահպանվել է մեր մատենադարանի № 7035 ձեռագրի մեջ, բաղկացած լինելով 20 միավորից։ Նկատի ունենալով դրանց բանաստեղծական արժեքն ու ճանաչողական նշանակությունը՝ ստորև հրապարակում ենք ամբողջությամբ.

75 Ձեռ. № 2079, էջ 142ա—143բ։

76 Հաստատապես Ն. Շնորհալուն են պատկանում շուրջ 120—140 հանելուկներ (տե՛ս «Բանք չափաւ», էջ 609—639, ձեռ. № 7035, էջ 117ա—130ա և այլ ձեռագրեր)։ Կան, սակայն, բազմաթիվ ձեռագրեր (օրինակ № 2079, էջ 278բ—283բ), որոնցում հանելուկները բազմացել են ի հաշիվ այլ հեղինակների նմանատիպ ստեղծագործությունների։ Ն. Շնորհալու հանելուկներն արժանի են մանրակրկիտ ձեռագրագիտական ուսումնասիրության, որով պարզվելու են այդ ուշագրավ ժանրի ստեղծման ու զարգացման ընթացքի հետ կապված լուսաբանության կարոտ շատ խնդիրներ։

77 Այս երեք նշանավոր մատենագիրների հորինած հանելուկների մասին տեղեկություն ենք քաղում Տրդատ վարդապետ Պալյանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Սիոն և Ս. Լուսաւորիչ եկեղեցեաց ի Մաղնիսա (Զմիւռնիոյ վիճակ), Զմիւռնիա, 1897» աշխատությունից (ձեռքի տակ ունեցել ենք նույնի հատվածաբար տպագրությունը «Արևելեան մամուլ» պարբերականի մեջ՝ 1897 թ., էջ 140—142)։ Այստեղ նկարագրված է 1526 թ. Աղթամարում ընդօրինակված մի ժողովածու, որի մեջ եղել են 6 հանելուկ Հովհաննես Պլուզից, 5 հանելուկ՝ Գևորգ Երզնկացուց և 16 հանելուկ՝ Գրիգոր Մերենցից։ Տ. Պալյանը յուրաքանչյուրից մեկական օրինակ նմուշ է բերել։

### Յոհան վարդապետէ Մորձոռեցւոյ առարեալ հանելուկս

1. Տեսի արուեստ մի զարմազան,
Զի նշարակով զերկիր բանան,
Հանեն արիւն անդի զինչ թան
Եւ գիր գրեն կայսերական: (Քարն)

2. Եկ և տես այլ սոսկալի,
Զի յատոցով երկիր բրրի,
Ելնէ կենդան 'ւ ոչ կենդանի,
Առնէ կարմիր զգոյն սպիտակի: (Որդն)

3. Ի սուլտանին մեծ քարխանայն
Կայր մին ուսթայ խիստ աննման,
Առանց հորի և մաքոքայն
Գործէր բարակ գործ անխաբան: (Սանդ)

4. Զերդ աղեղան լար է բարակ,
Հանց հնաւոր զերդ աղուեսակ,
Ի յամէն չորս եղանակ
Նա նորանա զերդ արծուակ: (Աւձ)

5. Ըստ արարչին մեծ սահմանի,
Նա բուրգն և հիմն է աշխարհի,
Աստուածայշէն տանն է տեղի,
Մարդկան ոտից անկոխելի: (Մասիս)

6. Ազի ունի զինչ առիւծու,
Կնճիթն է սուր զերդ աղուեսու,
Խաւարասէր է որպէս բու
Եւ ձայն ածէ որպէս հաւու: (Մուկն)

7. Քան ըզշուն ինքն է վազան,
Սունըրն երկայն՝ զինչ զպարան,
Է թեւատ աքլալ նըման,
Կամ հաւասար ըղտու կոզուան: (Մաքի)

8. Ի կարուակէ հանճարեղին
Կարեալ կապա զանմաշելին,
Զնիւթն ի քարէ կակղացուցին,
Ասեղն՝ սալն է զարբընին: (Զրեհ)

9. Ի յերկու կողմանց է ծուռ,
Կուշտն կապած խիստ և կուռ,
Թէ կարովի է որ և փուռ,
Ցրուէ զոսկերս մարդկան զերդ բուռ: (Աղեղն)

10. Զինչ խեչեփառ ոտուի ունի,
Ընդ որ երթայ՝ հետն երևի,

Նա ի մազէ կամուրջն անցնի,
Թէ և թրնգայ՝ հող չթափի։ (Մկրատ)

11. Ոչ է մարդ և ոչ կընիկ,
Բայց բոքասուն զերդ առեւծիկ,
Թէ պիտենայ՝ բեղ է թախտիկ,
Եւ թէ կամիս՝ լինի սայլիկ։ (Ձորի)

12. Է գովելի կտրիճ աղեկ,
Անուն կոչին իր ղարապէկ,
Զինչ ըզսև անէ զրնմէկ մէկ (՞),
Լծուի և գայ յոս և ի թէկ։ (Մրջիմն)

13. Ղարապէկիս կայր չէկ եղբայր
Զինչ թուխարիկ ձի ըրնվար (՞),
Որ գոլորշուք ցաւին յերկար,
Նա հաքմութիւն գիտէ ճարտար։ (Մեղու)

14. Ի յերկու սալի միջի,
Ինքն բնակէ զինչ ի փորի,
Եւ թէ մահու տա[ս] ըմպելի,
Նա խոտ ո[ւ]տէ ու չմեռանի։ (Կրա)

15. Անուն անեղն առել ի Գրոց,
Բայց ինքն վառի որպէս զրոց,
Անճառ փայլին առնէ զունոց
Եւ հաշտութեան նշան ամպոց։ (Ծիածան)

16. Ի հրոյ ունի նա զգոյութիւն
Վառէ և զհուր ներգործութիւն
Խոփ ցաւղնոյ յինքն միութիւն,
Բայց ոչ այրէ նա քան զրնութիւն։ (Ծ[իրանի՞] ծով)

17. Մանուկ մի կայր խիստ հրաշատես,
Անիւ սայլի և հուր ի ներս,
Ջուրս կենդանի լծեալ եռես
Եւ մարդ յաթոռն՝ նըման քեզ։ (Եզեկիէլ)

18. Զինչ պօղոսիկ գերան ի ցից,
Կառաց լծեալ գիմաց չորից,
Նա վերանայր յերկինս երկնից
Բազմեալն աստուած էր ամենից։ (Կառքն)

19. Էին հրեշտակք աթոռ եղեալ,
Մին ըզչորից երես առեալ,
Նըման կառանց յաւգըդ թռեալ՝
Յերուսաղէմ ի յօթ իջեալ։ (Այլ)[78]

20. Էր ինքն բոլոր զերդ արեգակ,
Ունէր սռնակ խաչատեսակ,

[78] «Այլ» ասելով նկատի ունի նախորդ (18-րդ) հանելուկի պատասխանը՝ «Կառքը»։ Եզեկիելի կառքի մասին է նաև վերջին հանելուկը։

Անիւ սայլի համաքատակ
Եւ կենդանիս քառադիդակ[79]։

Այս հանելուկներից մի քանիսը հետագայում վերագրվել են Ներսես Շնորհալուն և, նույնիսկ, հրատարակվել նրա անունով[80], բայց հաստատապես պատկանում են Հովհաննես Սործորեցու գրչին։ Այս ապացուցվում է նաև այն իրողությամբ, որ № 7035 ձեռագրի մեջ Սործորեցու հանելուկներին նախորդում է Շնորհալու շարքը, բաղկացած շուրջ 140 միավորից. ձեռագիրն ընդօրինակող գրչին քաջ հայտնի է եղել և՛ Շնորհալու և՛ Սործորեցու վաստակը նույնատիպ այս ստեղծագործությունների հորինման մեջ։

Սործորեցի բանաստեղծի չափածոն, վկայելով հեղինակի շնորհքի ու հմտության մասին, մտածել է տալիս, որ նա ստեղծագործած պետք է լինի նաև այլ գործեր։ Եվ կարելի է հուսալ, որ գիտական շրջանառության մեջ չդրված հայերեն ձեռագրերից որևէ մեկի ծալքերից առաջիկայում լույս աշխարհ են բերվելու մեր հեղինակի բանաստեղծություններից ուրիշ նմուշներ ևս։

## է. Գիրք խորհրդոց եկեղեցւոյ

Կաթոլիկ եկեղեցու նշանավոր գաղափարախոս Պետրոս Լոմբարդացու (մհ. 1164 թ.) «Վկայություններ» (Sententiarum) կոչվող քառահատոր աշխատությունը մինչև ռեֆորմացիայի դարաշրջանը տարածված էր ողջ Եվրոպայում և ճանաչված որպես կաթոլիկ դավանանքի համապարփակ ուղեցույց։ Այդ աշխատության մասին գրվել են տասնյակ մեկնություններ, որոնց մեջ ուրույն տեղ է գրավում Թովմա Աքվինացու համառոտ վերլուծությունը՝ «Գիրք խորհրդոց» (Liber Sacramentorum) խորագրով[81]։

Արևելյան երկրներում, մասնավորապես հայկական միջավայրում կաթոլիկ եկեղեցու ազդեցությունը տարածել ցանկացող գործիչները, բնականաբար, ձեռքի տակ պետք է ունենային դյուրալուր ոճով շարադրված համապարփակ մի ձեռնարկ՝ կաթոլիցիզմի հիմնական սկզբունքների մասին խոսել և քարոզել կարենալու համար։ Եվ ահա՝ համանման աշխատություններից լավագույնն է ճանաչվում Թովմա Աքվինացու վերոհիշյալ «Liber Sacramentorum» հատորը։ Հովհաննես Սործորեցին, լատիներեն իմանալով և կաթոլիկ դավանանքին հարած լինելով, հարմարագույն անձն է նկատվել այդ գրվածքի թարգմանությունն իրագործելու։ Եվ այդ պատասխանատու աշխատանքը հաջողությամբ նա ի կատար է ածել Հովհաննես ԻԲ պապի կարգադրությամբ («Հրամանաւ պապին Հռոմա»), Զաքարիա եպիսկոպոսի հոգածությամբ և Մարաղայում բուն դրած Բարթուղիմեոս Ֆրանկ եպիսկոպոսի օժանդակությամբ՝ 1321 թվականին, անկյունաքարը դնելով հայ ունիթորական գրականության։

Հաջորդ տասնամյակների ընթացքում, ինչպես Սործորի վանքում, այնպես էլ՝ ավելի մեծ ծավալով՝ Քռնայում և հայ ունիթորների մյուս կենտրոն-

79 Ձեռ. № 7035, էջ 130ա—132ա։

80 Այս հարցի հանգամանալից քննությունը դուրս համարելով մեր նպատակից, մատնանշում ենք № 2079 ձեռագիրը (էջ 282բ) և Հակոբ Մեղապարտի «Տաղարանը» (Վենետիկ, 1513, էջ 52—53), որոնցում զետեղված Ն. Շնորհալու հանելուկների շարքի մեջ տեղ են գտել նաև Հ. Սործորեցու հանելուկներից առանձին միավորներ։

81 Միջնադարյան հայկական ձեռագրերում կոչված է «Գիրք խորհրդոց եկեղեցւոյ» կամ «Յաղագս եւթն խորհրդոց եկեղեցւոյ»։

ներում, Հովհան և Հակոբ Քռնեցիների, Բարթուղիմեոս Մարաղացու, Պետրոս Արագոնացու և բազմաթիվ այլ հայ ու օտարազգի թարգմանիչների ջանքերով ստեղծվում է հայ-կաթոլիկական ինքնատիպ մի գրականություն. ծիսական մատյաններից բացի հայերեն լեզվով շարադրվում կամ լատիներենից թարգմանվում են փիլիսոփայական մեկնություններ, քերականագիտական երկեր, դատաստանագիրք, քարոզգիրք և բազմաթիվ այլ աշխատություններ, որոնց գիտական ուսումնասիրությունը դեռևս չի կատարված[82]։

«Գիրք խորհրդոց եկեղեցւոյ» երկի թարգմանության վերջում Հովհաննես Սործորեցին թողել է ընդարձակ հիշատակարան գրքի արժանիքների և իր կատարած աշխատանքի մասին, որ բազմիցս հրապարակվել է հայագիտական աշխատություններում[83]։ Զմմառի վանքի մատենադարանի «Անտոնյան հավաքածու» շարքի մեջ պահվում է աշխատության մի ընդօրինակություն (ձեռ. № 105), որ կարող է Սործորեցու ինքնագիրը լինել[84]։

## բ. Այլ գրվածքներ

Վերոհիշյալ աշխատություններից բացի, Հովհաննես Սործորեցին, անշուշտ, գրել է նաև այլ գործեր, որոնց մասին միջնադարյան աղբյուրներում կան ակնարկներ և ստուգման կարոտ վկայություններ։

Այսպես՝ Ամրդոլու վանքի «Վարդապետական գրեանց» ցուցակի մեջ, որ կազմել է Վարդան Բաղիշեցին XVII դարի վերջերին, ՃԻԶ (126-րդ) համարը կրող ձեռագիրը նկարագրված է այսպես. «Ա. Գիրք Յովհաննու Երզնկացւոյ Պլզոյ ասացեալ Ժամանակագրութիւնք և բազում նախերգանք և ասացուածք վարդապետաց. մանաւանդ բազում ասացուածք երկարք միւս Յովհաննու Եզնկացւոյն արարեալ, ոչ Պլզոյն, այլ Յովհաննու Սործորեցւոյն»[85]։

«Բազում ասացուածք երկարք» արտահայտության տակ ի՞նչ պետք է հասկանալ, Սործորեցու քարոզնե՞րը, մեկնողական գրվածքնե՞րը, թե՞ մեզ չհասած որևէ այլ աշխատություն. դժվար է պատասխան տալ այս հարցերին։

Երուսաղեմի մատենադարանի № 1171 ձեռագրում (էջ 335—339) ընդօրինակված է «Յոհանէս Սործորեցւոյ ընդդէմ սուրբ պատարագին» խորագրով մի բնագիր, որ սկսվում է «Տէր ամենակալ, աստուած հզօր, արարիչ ամենայնի...» բառերով[86]։ Սրա բովանդակության մասին ավելի բան չգիտենք։

---

82 Ունիթորական գրականության ցանկը, կարևոր պարզաբանումներով տվել է Markus Antonius v. d. Oudenrijn-ը՝ իր „Linguae Haicanae Scriptores" (Bern 1960)) մեծարժեք աշխատության մեջ. այդ գրականության գիտական ուսումնասիրությունը, սակայն, դեռ չի կատարված։

83 Տե՛ս օրինակ, Գ. Զարպհանալյան, Մատենադարան թարգմ. Նախնեաց, էջ 274—275, Հ. Տաշյան, Մայր ցուցակ, էջ 777, «Բազմավէպ», 1906, էջ 257, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 173—174, M. A. v. d. Oudenrijn, էջ 182—183 և այլն։

84 Նոր Ջուղայի հայերեն № 614 ձեռագրի մեջ (85ա—91բ) ընդօրինակված է «Նուաստ վարդապետի Յոհանու Եզնկացոյ, որ և Սործորեցի թարգմանեալ զխորհուրդ պսակին ի լատին լեզուէ ի հայ բարբառ» խորագրով մի փոքրիկ բնագիր (Տե՛ս Լ. Մինասյան, Ցուցակ ձեռագրաց Նոր Ջուղայի Ս. Ամենափրկչեան Վանաց թանգարանի, հտ. բ, Վիեննա, 1972, էջ 91)։ «Գիրք խորհրդոց եկեղեցւոյ» աշխատության և ձեռագրական այս հատվածի բաղդատումից հետո միայն հնարավոր կլինի որոշել ուրույն մի աշխատությու՞ն է սա, թե՞ Թովմա Արվինեցու վերոհիշյալ գործի մի բաժնի առանձնակի ընդօրինակություն։

85 «Այս են վարդապետական գրեանք ի վանքն Ամիրդոլոյ՝ համարով անցինք յիշատակ գրեալ իմովս ձեռամբ Վարդանայ վարդապետի» («Արարատ», 1903, էջ 187)։

86 Ն. Պողարյան, Մայր ցուցակ, Դ, էջ 270։

Մեր մատենադարանի № 3522 ձեռագրում (էջ 171բ—186ա) գտնում ենք Զաքարիա եպիսկոպոսի Սյունյաց մետրոպոլիտ Հովհան Օրբելին ուղղած պատասխան-նամակի մի ընդօրինակությունը՝ այսպիսի ուշագրավ խորագրով. «Թուղթ և պատասխանի առարկութեանցն ընդդէմ հակառակորդաց, արարեալ մեծի և իմաստնոյն Յոհաննու Ծործորեցւոյն»։ Հովհաննեսի անունն այստեղ կարող է բացատրվել գրչագրական վրիպակով, իսկ եթե այն գալիս է նախագաղափար օրինակից, ապա պետք է ենթադրել, որ Հովհաննես Ծործորեցին գործոն մասնակցություն է ունեցել Առաքելոց թեմի առաջնորդ Զաքարիա եպիսկոպոսի ստորագրած գրությունների շարադրման ու հարդարման աշխատանքներին։

Ծործորեցու անունը թյուրիմացաբար առնչվել է նաև Մխիթար Գոշի առակներին։ Մեր մատենադարանի № 2189 ձեռագրի մեջ ընդօրինակված են Գոշի ՃԿԱ—ՃՂ առակները, ինքնուրույն համարակալությամբ (Ա—ԻԸ)՝ «Առակք առեղծականք պիտանիք առնուլ ի զբուցատրութիւնս և յասացուածս, արարեալ Յոհաննու Ծործորեցւո» խորագրով, վերջում ունենալով այսպիսի հիշատակագրություն. «...և զվերջացեալս ի բարեաց գործոց՝ զատարատ գրիչս զՅոհ[աննէս] ծանոթ բանի և տեղեաւ Եզնկացի, իսկ այժմ Ծործորեցի, աղաչեմ չմոռանալ ի բարիս գիս և զիմսն ամենայն, ի թվականիս փրկչին ՌՅԺԶ (1316)»[87]։

Ակադեմիկոս Ն. Մառը, մանրակրկիտ ուսումնասիրելով այս ձեռագիրն ու հիշատակագրությունը, հանգել է այն ճիշտ եզրակացության, որ սխալմունքով պետք է բացատրել վերոհիշյալ խորագրի մեջ Ծործորեցու անվան ներմուծումը։ Նա, 1316 թվականին սոսկ ընդօրինակել է Մխիթար Գոշի առակների վերջին բաժինը՝ չնշելով հեղինակի անունը։ Տարիներ հետո (1394-ից առաջ) Գրիգոր անունով մեկը, տարատեսակ նյութերի հետաքրքրական մի ժողովածու կազմելով, Հովհաննես Ծործորեցու ձեռագրից արտագրել է նաև այդ առակները, բայց սխալ մեկնաբանելով Ծործորեցու հիշատակագրությունը, իրեն այլուստ անծանոթ առակների հեղինակ է համարել զաղափար հանդիսացող ձեռագրի գրիչ Ծործորեցուն[88]։

Այսպիսով ժխտվում է Հովհաննես Ծործորեցու մասնակցությունը միջնադարյան հայկական առակների ստեղծման աշխատանքներին, բայց բացահայտվում է, որ նա 1316 թ. երբ Ծործորի վանքում ծավալել էր գիտա-մանկավարժական եռանդուն գործունեություն, ժամանակ է գտել շարունակելու ձեռագրերի բազմացման իր համար սովորական աշխատանքը՝ այս անգամ ընդօրինակման նյութ դարձնելով Մխիթար Գոշի առակների «Առակք առեղծականք» բաժինը[89]։

---

87 Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 2189, էջ 424ա—434ա։ Նույնը, ուղղագրական աննշան տարբերություններով, գտնում ենք նաև Երուսաղեմյան № 1376 ձեռագրում (էջ **497—524**)։

88 *Н. Я. Марр.* Сборники притч Вардана, часть I, СПб, **1899**, էջ 73—74։ Ն. Մառի եզրակացությունն ըստ ամենայնի ճիշտ է. պետք է ավելացնել միայն, որ մեր մատենադարանի № 2189 (նախկին 2238) ձեռագրի նյութերի համախմբողն ու գրիչը ինքը՝ Գրիգոր Տաթևացին է։ Ըստ այդմ՝ բովանդակալից այդ ժողովածուն թանկագին մի մասունք է, արժանի հատուկ ուշադրության։

89 Հմմտ. Մխիթար Գոշ, Առակներ, տեքստը ձեռագրերի համեմատությամբ և ներածությունը էմ. Պիվազյանի, Երևան, 1951, էջ 119—133։

*Պետք չէ տարակուսել, որ դեռևս չուսումնասիրված հայերեն ձեռագրերի միջից հայտնաբերվելու են Հովհաննես Սործորեցու ստեղծագործություններին առնչվող նոր նյութեր, ամբողջացնելով մեր գիտելիքները նրա կյանքի ու վաստակի մասին։*

* * *

*Հովհաննես Երզնկացին մշտական բնակություն հաստատեց Սործորում՝ նորակառույց այդ վանքին կից բարձրագույն դպրոց ստեղծելու կապակցությամբ։ Նրա աշխատությունների մեծագույն մասը՝ Քերականի մեկնությունը, Մատթեոսի և Դանիելի մեկնությունները և այլն, շարադրված են հենց ուսուցողական նպատակներով, իր շուրջ համախմբված բանասեր անձանց և դրոց աշակերտների հորդորներով։ 1318 թ. Սործորի վանքում շարադրած իր մի հիշատակարանում Մխիթար գրիչը, ժամանակի նշանավոր անձանց՝ Հայոց թագավորի, կաթողիկոսի, Արտազի եպիսկոպոսի անուններից անմիջապես հետո, արձանագրում է Հովհաննես Սործորեցու անունը, մեծարելով նրան «վարժապետ և ուսուցիչ» տիտղոսով[90]։ Սործորեցու աշակերտներից մեկ ուրիշը, որի անունը չի պահպանվել, բայց արժանի է հիշատակության, որպես խմբագիր իր ուսուցչի քարոզներից կազմված ժողովածուի, վերը հիշատակված ԺԲ քարոզի ընծայական-հիշատակարանի մեջ իր բարունապետին համահավասար է համարում Հովհան Ոսկեբերանին և Գրիգոր Աստվածաբանին, հատկապես շեշտելով նրա հայրական խնամքն իր աշակերտների նկատմամբ[91]։*

*Սործորի բարձրագույն դպրոցն ավարտած և վարդապետական գավազան ստացած անձնավորություններից հայտնի է Իսրայել բարունին[92], որ հի-*

---

90 *«Յորժամ գծագրեցաւ մատեանս գայս,—գրված է այդ հիշատակարանում,—թուական Հայոց ՉԿԷ (1318) էր, և թագաւոր Օշին, և կաթողիկոս տէր Կոստընդին, և բնակութիւնս Սործորու վանք, և տեղոյս առաջնորդ տէր Զաքարիայ, և վարժապետ և ուսուցիչ Յոհաննէս՝ ստացող գրոցս, և անուն գծողիս Մխիթար» (ձեռ. № 2104, էջ 164բ)։*

91 *Այս գեղեցիկ ներբողյանը, որ պարունակում է Հովհաննես Սործորեցու մասին կենսագրական և բնութագրական տեղիներ, մեջ ենք բերում ստորև գրեթե ամբողջությամբ.*

*«Եւր այժմ ի մէջ առցուք զպզրեսցն իմաստից՝ զայրն կորովամիտ՝ զշնորհացեալն զանազան իմաստից բանականութեանն արդասեօք, զերկրորդն Ոսկեբերան, եւ կամ համարձակեցայց ասել Աստուածաբան, զհայրն մեր հոգեւոր, զբարունապետն Յոհան։ Որ զի թէպէտ եղեալ ոմանք եւ փայլեալք ի վերայ երկրի, եւ են, եւ լինին, որք համբաւեալ հռչակին ի խոհմբս աստուածեղէն տառից, սակայն ոմն այսու եւ ոմն այնու շնորհացն պայծառութեամբ յարգին ըստ տարբերոյ, եւ ըստ այնմ եւ զգովութեանն տարան մրցանակ, եւ կամ տանին։ Իսկ նա զբովանդակն ընկալեալ իմաստ, եւ բոլորին եղեւ ընդունակ հանճարոյ։ Քանզի թէպէտ մասն էր ինքն բոլորին, սակայն զհանուրցն եւ զմասանցն ստացաւ գիտութիւն, եւ ի ձեռն վարժից կրթութեան, եւ բնական շնորհացն աջողութեան, նաեւ առաքինի եւ հեզ վարուցն պարկեշտութեան։ Եթէ ըստ մտացն տեսողութեան եւ ծննդական գոլոյն ի գիտս հնարից դարձուածոց բանից՝ արագ էր քան զամենեսեան, եւ թէ ըստ առատ եւ յորդաբուղխ բանին բղխողութեան, եւ համեղ եւ ախորժ ի շահ օգտութեան ի լուր լսողաց՝ ամենեցուն էր նա ըղձալի։ Զորս զամենեսեան ի բաց թողեալ իբրեւ զլայանիս, զմին միայն եւեթ յիշեցից, զգութ հայրական խնամոցն, որ առ մեզ, զի սնոյց և վարժեաց զմեզ յոգնաբեղուն խրատութեամբ, իբրեւ զորդի սիրելի, եւ կամ զճշմարտագոյնն ասել՝ ի վեր քան զբնական սիրոյն ցուցակութիւն, վասն զի կրկնակի տածմանն եղոյց առ իս օրինակ, մանաւանդ յայնմ իրակերտութեան գործոյ եղեւ նպաստ եւ առիթ՝ յորդորական բանիւք քաջալերս տալով» («Երուսաղեմ, ձեռ. № 1003, էջ 119, հմմտ. Ն. Պողարյան, Մայր ցուցակ, Դ, էջ 5)։*

92 Մեսրոպ վրդ. Քեշիշյան, *Ցուցակ հայերեն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին, Վիեննա, 1964, էջ 579։*

շատակված է նաև Հովհան Քռնեցու հետ միասին «Փառնգայ դաւանութիւն» ընդունած 12 վարդապետների շարքում, իր հայրենակից Առաքել վարդապետի ընկերակցությամբ («Առաքել և Իսրայէլ վարդապետք՝ ի գաւառէն Արտազու»)[93]։ Սրանք ևս Ծործորեցու աշակերտներից են։ Ուրիշ տեղեկություններ մեր բարունապետի մանկավարժական աշխատանքի և սնուցած աշակերտների մասին չենք գտել։

Հովհաննես Ծործորեցու գործունեության վերաբերող բոլոր վկայությունները ամփոփելու համար նշենք այստեղ, որ նա, Զաքարիա եպիսկոպոսի հետ միասին, մասնակցել է 1317 թ. Ադանա քաղաքում գումարված եկեղեցական ժողովի աշխատանքներին. այդ մասին սկզբնաղբյուրներում կան ուղղակի վկայություններ[94]։ Բանասեր Հ. Քյուրդյանը չի հավատում դրանց արժանահավատությանը՝ նշելով, որ 1317 թվականին Ծործորեցին գտնվում էր Արտազում, զբաղված լինելով գրական աշխատանքներով[95]։ Այս պնդումը, սակայն, հիմնազուրկ է. Հովհաննես վարդապետի 1316 և 1318 ու հետագա թվականներին Ծործորի վանքում լինելը վկայված է սկզբնաղբյուրներով, մինչդեռ 1317-ի մասին ոչ մի տեղեկություն չունենք։ Ուստի հարկ չկա տարակուսելու, որ նա, Զաքարիա եպիսկոպոսի հետ միասին, մեկնել է Կիլիկիա ու մասնակցել Ադանայի ժողովի աշխատանքներին։ Հակված ենք կարծելու, որ այս ճամփորդությունը չի սահմանափակվել Կիլիկիայով։ Ծործորեցին, հավանաբար, ուղևորվել է նաև Ավինիոն ու տեսակցել Հովհան ԻԲ պապի հետ։ Քիչ առաջ ասացինք, որ Թովմա Աքվինացու «Գիրք խորհրդոց եկեղեցւոյ» երկի թարգմանությանը նա ձեռնարկել է, ինչպես ինքն է գրում, «հրամանաւ պապին Հռոմա», իսկ այդպիսի հրաման Ծործորեցի վարդապետը կարող էր ստանալ՝ անձամբ տեսակցած լինելով կաթոլիկ եկեղեցու վեհապետի հետ, հռոմեական և հայկական եկեղեցիների միավորման հետ առնչվող տեսական ու գործնական հարցերի շուրջ բանակցելու համար։ Պետք չէ մոռանալ, որ 1317 թ. կաթոլիկ եկեղեցու առաջնորդները նախապատրաստվում էին ավելի աշխույժ քարոզչական աշխատանք ծավալելու արևելյան երկրներում, այնտեղ առաքելով դոմինիկյան մի խումբ կղերականների ու ստեղծելով եպիսկոպոսական նոր թեմ։

Այս փաստերի լույսի տակ Հովհաննես Ծործորեցին ներկայանում է պատմության դատական ատյանին, որպես մի գործիչ, որ հայրենի երկրի ազատագրման ու բարգավաճման հեռանկարները շաղկապած լինելով եվրո-

93 Մատենադարան, ձեռ. № 1361, էջ 341ա։

94 Զաքարիա և Հովհաննես Ծործորեցիների անունները բացակայում են ժողովականների ցուցակից, բայց նրանց մասին տեղեկություն է հաղորդում Հովհան Քռնեցին. «Եւ ի մէջ եպիսկոպոսաց, որք եկեալ էին այն ժողովն եւ եղև արհեպիսկոպոսն Զաքարիա, որ էր իշխող եկեղեցւոյն սրբոյն Թադէոսի առաքելոյն... եւ ի մէջ նոցին էր և մեծ վարդապետն Յոհան Ծործորեցին» (Կղեմէս Գալանոս, Միաբանութիւն Հայոց սուրբ եկեղեցւոյն ընդ մեծի սուրբ եկեղեցւոյն Հռոմայ աշխարհի, Հռոմ, 1690, էջ 517—518)։ Համանման տեղեկություն գտնում ենք «Պատմիչ ժողովոցն Կիլիկիոյ» աղբյուրի մեջ. «Հինգերորդ ընդհանրական ժողով,—գրված է այնտեղ,— եղև ի մայրաքաղաքին Ատանայ Կիլիկիոյ... յամի տեառն ՌՅԺԷ-ին և ի թվ. Հայոց ՉԿԶ-ին, այսու պատճառաւ, զի ագէտք և կամապաշտք ոմանք միակեցք խռովէին զպարզամիտս իբր թէ ժողովն Սսոյ իցեր հակառակ աւանդութեանց սրբոյն Լուսաւորչին... համագումարեցին ի քաղաքն Ատանայ, ընդ որս էր և մեծ արքեպիսկոպոսն Մեծին Հայաստանի Զաքարեայ... և վարդապետն հռչակաւոր Յոհան Ծործորեցին» (Հ. Տաշյան, Մայր ցուցակ, էջ 115)։

95 Հ. Քյուրտյան, Երիզա և Եկեղեաց գավառ, հտ. Ա, Վենետիկ, 1953, էջ 195—196, 241։

պական երկրներից ակնկալվող ռազմական օգնության հետ, ընդառաջ էր գնում կաթոլիկ եկեղեցու գաղափարական և կազմակերպչական պահանջներին, հրաժարվելէր Հայոց եկեղեցու որոշ ծեսերից ու ավանդություններից, ընդունել պապի գերիշխանությունը և այլն: Անհեռատես ու վնասակար այս քաղաքականության գործունյա պաշտպաններից մեկը դառնալով, Ծործորեցի վարդապետը, սակայն, բնավ չէր մտածում լուծարքի ենթարկել Հայոց եկեղեցու հինավուրց կազմակերպությունը, դարձնելով այն սոսկ հռոմեական եկեղեցու կամազուրկ կցորդը: Նա ջատագովն էր ավելի ճկուն ու զգուշավոր քաղաքականության: Այդ մասին որոշակի տվյալներ է ունեցել Մ. Չամչյանը: Անդրադառնալով Սյունյաց մետրոպոլիտ Հովհան Օրբելի և Զաքարիա Ծործորեցու պայքարի դրվագներին, նա հայտնում է, որ Արտազի եպիսկոպոսը, հետևելով Հովհաննես Ծործորեցու հորդորներին, ի վերջո համոզվել է, որ հնարավոր չէ ընդառաջել կաթոլիկ եկեղեցու բոլոր պահանջներին, ուստի որդեգրել է ավելի զգուշավոր մի գործելակերպ. «Զայս թուղթ Որպէլի առեալ Զաքարիայ,—կարդում ենք Չամչյանի մոտ,—թէպէտ և ինչ ոչ անսաց նմա, բայց ըստ խորհրդոյ Յովհաննու վարդապետի Ծործորեցւոյ՝ որ էր առ նմա՝ սկսաւ այնուհետև զգաստութեամբ վարիլ առ արտաքս, զգուշացեալ յՈրպէլէ և յայլոց. քանզի տեսև և ինքն, թէ անհնարին իմն էր միահաղոյն յայտնի կատարել զամենայն զոր կամէր կաթողիկոսն»[96]:

1316—1325 թթ. գիտա-մանկավարժական աշխույժ գործունեությունից հետո Հովհաննես Ծործորեցին կարծես չքվում է ասպարեզից: Ոմանք ենթադրել են, թե նա կնքել է իր մահկանացուն 1326 թվականին, հավանաբար ելնելով այն փաստից, որ նրա կողմից շարադրված հիշատակարանների մեջ նշված վերջին տարեթիվը 1325-ն է[97]: Հայտնվել են նաև այլ կարծիքներ[98]: Ծործորեցու մահվան ճշգրիտ թվականն այսօր էլ անհայտ է մնում, բայց վերջերս գիտական շրջանառության մեջ դրված մի հիշատակարան հնարավորություն է ընձեռում նոր լույս սփռել նրա կյանքի վերջին շրջանի վրա: Ծործորեցու մեզ արդեն ծանոթ աշակերտներից Իսրայել րաբունին 1337 թ. Արտազի գավառում, հավանաբար հենց Ծործորի վանքում, ընդօրինակել է ավել արժեքավոր նյութերի մի ժողովածու, որի մեջ կենտրոնական տեղ է գրավում Պետրոս Արագոնացու աշխատասիրությամբ հայացված «Գիրք դատաստանաց»-ը[99]: Ձեռագրիս հիշատակարանում այս Իսրայելի մասին ասված է, որ «Սա սնեալ և վարժեալ եղև առ ոտս ամենապարկեշտ ծերունւոյն և մաքրամիտ րաբունապետին՝ որ մականուն Ծործորեցի, և որ դաստիարակեալ զսա յերկեղն աստուծոյ և ի պաշտօն եկեղեցւոյ բազում աշխատութեամբ և խնամօք փոյթ ա-

96 Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հատ. Գ, Վենետիկ, 1786, էջ 308:

97 Այս թվականին է մաքրագրվել ու շրջանառության մեջ դրվել Թ. Աքվինացու «Գիրք խորհրդոց եկեղեցւոյ» աշխատության Հ. Ծործորեցու թարգմանությունը:

98 Պատշաճ է այստեղ ծանոթանալ այս հարցի մասին Ա. Սրապյանի ուսումնասիրության մեջ առկա տողերին. «Ղ. Ալիշանը և Գ. Զարպհանալյանը (Հովհ. Երզնկացուն) համարել են մահացած 1326 թվականին, Մ. Պոտուրյանն ու Ա. Ջամինյանը՝ 1332-ին: Ա. Չոպանյանը՝ 1330-ին կամ 1340-ին և այլն: Հ. Քյուրտյանը հավանական է համարում 1325—1326 թվականները» (նշվ. աշխ., էջ 31):

99 «Գիրք դատաստանաց և կանոնաց թարգմանեալ ի լատին լեզուէ ի հայ բարբառ նպաստաւորութեամբ Ֆրա Պետրոսի ի կարգէ Դոմինիկոսի, միջնորդութեամբ Առաքել վարդապետի ի մերս գաւառ՝ նոյին դպրութեան հետևողի» (Զմմառի վանքի մատենադարան, ձեռ. № 251, էջ 290բ):

*բարեաւ վասն սորա, մինչև յարքունս կատարելութեան հասուցեալ, զոր ըստ վաստակոցն և աշխատութեան նորա տէր հատուցէ յերանաւէտ կեանսն»*[100]*։*

*Կասկած չի կարող լինել, որ «ամենապարկեշտ ծերունի» կոչված Սործորեցի բաբունապետը այս հիշատակարանի գրության ժամանակ, այսինքն 1337-ին դեռ կենդանի էր, բայց համրում էր իր կյանքի վերջին օրերը. ըստ այդմ նա կյանքից հեռացած պետք է լինի հավանաբար 1338 թվականին։*

4. Սործորի դպրոցը Հովհաննեսից հետո.— *Հովհաննես Սործորեցուց հետո խամրում է նրա ծավալած գիտա-մանկավարժական աշխատանքի շնորհիվ համբավ ձեռք բերած ուսումնական հաստատությունը։ Բայց շարունակում է իր գոյությունը ևս մի քանի տասնամյակ։ Հավանաբար դեռևս Հովհաննես բաբունապետի կենդանության օրոք Սործորի վանք էր տեղափոխվել ֆրանցիսկյան միաբանության անդամ Ֆրա Պոնցիուս կոչված վարդապետը*[101]*, որ ճանաչված էր որպես իմաստուն մի մարդ՝ «յոյժ հմուտ հայոց գրոյն»։ «Քաջ բաբունապետի» համբավ ձեռք բերած եվրոպացի այս քարոզիչը Սործորի վանքում զբաղվել է գիտա-մանկավարժական աշխատանքով, թարգմանել է մի շարք երկեր, օգնական ունենալով Իսրայել վարդապետին։*

*Նրա թարգմանած գործերից մեզ հայտնի են հետևյալները.*

Մեկնութիւն սրբոյ աւետարանին, որ ըստ Յովհաննու... արարեալ մեծ վարդապետին Նիկոլայոսի Լիւրացւոյ:

*Նշանավոր աստվածաբան ու քարոզիչ, ֆրանցիսկյան միաբանության անդամ Նիկողայոս Լյուրացին կամ Լիրան (մհ. 1340 թ.) գրավել է Սործորում գործող գրագետների սեռուն ուշադրությունը։ Սագումով հրեա այս աստվածաբանը գրել էր հին և նոր կտակարանի բոլոր գրքերի մեկնությունները՝ լայնորեն օգտագործելով հրեական գրականության տվյալները։ Նրա գրվածքները մի քանի դար շարունակ կաթոլիկ աշխարհում ճանաչված էին որպես անգերազանցելի ձեռնարկներ։ Եվ ահա 1341 թվականից մի քանի տարի առաջ, այսինքն հեղինակի կենդանության օրոք*[102] *Զաքարիա եպիսկոպոսի հանձնարարությամբ և Իսրայել վարդապետի աջակցությամբ Ֆրա Պոնցիուսը հայերեն է թարգմանում Լիրայի «Մեկնութիւն սրբոյ աւետարանին, որ ըստ Յովհաննու» ծավալուն աշխատությունը։*

*Այս թարգմանության ձեռագրերից մեզ հայտնի են երեքը. մեկը մեր մատենադարանի № 6903 ձեռագիրն է, արտագրված Նորավանքում, Ղուկաս գրչի*

---

100 Մեսրոպ վրդ. Քեշիշյան. *Ցուցակ, էջ 579։*

101 *Ֆրանցիսկյան այս վարդապետի անունը հայերեն ձեռագրերում տառադարձված ենք գտնում Պոնցիոս, Պոնցիուս, Պոնցի, Ապոնց այլազան ձևերով։ Հավանաբար* Bonifacius *անվան համառոտությունն է, կամ էլ* Boëtius*-ի աղճատ ձևը։ Պոնցիուսն ըստ երևույթին, Արտազնացի է եղել. այդպես ենք կարծում հաշվի առնելով այն փաստը, որ «Յովհաննու աւետարանի մեկնութեան» սրա կատարած թարգմանության ձեռագրերից մեկում, որ դարիս սկզբներին խիստ քայքայված վիճակում պահվելիս է եղել Տաթևի վանքում, տվյալ է եղել թարգմանչի Արտազնացի լինելու մասին* (Օ. Եգանյան, *Տաթևի գրատան ձեռագրերը, «Բանբեր Մատենադարանի», № 9, էջ 423)։*

102 *Մատենադարանի № 6903 ձեռագիրը ասացինք, որ ընդօրինակված է 1341 թ., Ղուկաս գրչի կողմից, Նորավանքում։ Այդ փաստից դժվար չէ հետևցնել, որ թարգմանությունը կատարվել է 1341-ից առնվազն 2—3 տարի առաջ։ Այդքան, գուցե և ավելի ժամանակ էր հարկավոր թարգմանության օրինակներից մեկը Արտազի ունիթորական միջավայրից դուրս բերելու, Սյունիք փոխադրելու և ընդօրինակելու համար։*

կողմից 1341 թ.[103], մյուս ձեռագիրը Մատենադարան է մուտք գործել վերջերս ու գրանցվել 10539 համարի տակ, իսկ վերջինը՝ Երուսաղեմի № 789 ձեռագիրն է, որ չնայած ուշ ժամանակի ընդօրինակություն է (1740 թ.), բայց արժեքավոր է ամբողջական ու լրիվ լինելով։ Այս երեք ձեռագրերի մեջ առկա տվյալների համադրությամբ ստորև տալիս ենք քննարկվող բնագրի խորագիրը, հիշատակարանը և միջին մասերում եղած ընծայական պարբերությունը, որի մեջ կարևոր տվյալներ կան Զաքարիա եպիսկոպոսի և նրա ազգակիցների մասին

Ամբողջական խորագիրն է.

«Մեկնութիւն սրբոյ աւետարանին որ ըստ Յովհաննու, ի խնդրոյ և ի հարկեցուցիչ հրամանէ արհիական գլխոյն և մեծ դիտապետին տէր Զաքարիայի՝ սպասաւորի սուրբ առաքելոյն Թադէոսի, թարգմանեալ ի լատին գրոց ի մերս բարբառ, արարեալ մեծ վարդապետին Նիկոլայոսի Լիւրացւոյ, որ ի կարգէ սրբոյն Ֆրանչիսկոսի»[104]։

Թարգմանության մասին պահպանվել են այսպիսի հիշատակագրություններ.

ա. «Կատարեցաւ մեկնութիւն, որ ըստ աւետարանին Յոհաննու ի վերայ բնաբանիս ի ձեռն վսեմախոհ վարդապետի Ֆրա Պօնցի և քերթելով քաջ հռետորի Իսրայէլի. որք ընթեռնուք և կամ օրինակէք յիշեցէք յաղօթս»։

բ. «Արդ, թարգմանեցաւ գիրքս այս ի լատին լեզուէ ի հայս հրամանաւ մեծ դիտապետին և արհիական գլխոյն, աթոռակալի սուրբ առաքելոյն Թադէոսի արժանաւոր եպիսկոպոսի տէր Զաքարիայի, զոր բազում ըղձիւք և սիրայեղձ փափագանօք թարգմանեալ ետ զսա ի նեղ և ի դառն ժամանակի, ի լուսաւորութիւն Հայաստանեայցս եկեղեցոյ և խրախութիւն և ի վայելումն մանկանց Սիոնի, զոր թարգմանեաց քաջ բաբունապետն Ֆրա Պօնցիուս կոչեցեալ, միջնորդելով վարդապետին Իսրայէլի»[105]։

Բուն մեկնությունը օժտված է Նախադրությամբ, որի վերջում թարգմանիչ Ֆրա Պոնցիուսը կամ նրա հայ գործակից Իսրայելը բաբունին՝ Զաքարիա Սործորեցու գովքն է հյուսում, նրա անունն ստուգաբանելով «յիշող տեառն» կամ «օգնութիւն տեառն» բառերով։ «Օգնութիւն տեառն,—գրում է նա,—վասն առատամիտ և մշտաձիր տրոցն, որ առ աղքատս և կարօտեալս, որք են անդամք Քրիստոսի և վասն պահպանութեան և խնամակալութեան իւրոցն հնազանդելոց»․ այստեղ մեծարվում է պարոնտեր Զաքարիան, շեշտվում նրա ոչ միայն հոգևոր, այլև աշխարհիկ ավատատեր լինելու հանգամանքը։ Այնուհետև ներբողյան հիշեցնող այս հատվածի հեղինակը փորձում է որոշել իր մեկենասի բացառիկ տեղը հայ եկեղեցու պատմության մեջ, նրա գործունեու-

---

103 Ձեռագիրը մինչև առաջին աշխարհամարտի դժնդակ տարիները պահվելիս է եղել Դարաշամբի Ս. Ստեփանոս Նախավկայի վանքում՝ անաղարտ վիճակում, վերջում ունենալով հիշատակարան թարգմանության և ընդօրինակության հանգամանքների մասին։ Սմբատ Տեր-Ավետիսյանը 1904 թ. նկարագրել է ձեռագիրը և արտագրել 424ա—424բ էջի վրա եղած հիշատակարանը։ Ձեռագիրը հետագայում տարվել է Թավրիզ, զրկվել սկզբի ու վերջի թերթերից և այդպես բզկտված վիճակով բերվել Մատենադարան։

104 Խորագիրը տրվում է ըստ Մատենադարանի № 10539 ձեռագրի։

105 Ս. Տեր-Ավետիսյան, Ձեռագիրք նախավկայի վանաց Դարաշամբի Ս. Ստեփանոսի, որ ի Գողթն (Ցուցակն այժմ պահվում է Մաշտոցի անվան մատենադարանի անտիպ ձեռագրացուցակների հավաքածույում)։

թյունն անմիջապես շաղկապելով Թադեոս առաքյալի և Գրիգոր Լուսավորչի հետ։ Լուսավորիչը՝ Թադեոս առաքյալի «որդիացեալը»՝ «ընդարձակեալ տարածեաց» ճշմարիտ հավատը Հայաստանում,— գրում է նա,—իսկ Զաքարիան այդ «ճշմարիտ հավատի» (այսինքն կաթոլիկ դավանանքի) պայծառացնողն է նոր ժամանակներում, ուստի որդին է հենց Գրիգոր Լուսավորչի[106]։

Այս փաստարանությունները ծլարձակում են պարարտ այն հողի վրա, որ ներբողյանի հեղինակը հակիրճ բնորոշել է այսպիսի տողերով. «Տէրս Զաքարիա զինքն նուաստ և հնազանդ ունի և հրամանակատար յաջորդին Պետրոսի»[107]։

Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում № 10539 ձեռագրի մի մանրանկարը, որի արժեքն ավելի նշանակալից կլիներ, եթե տվյալներ լինեին պարզելու, որ այն արտագրված է թարգմանական սույն բնագրի նախօրինակից։ Այստեղ, էջմիածնի մայր տաճարի ֆոնի վրա, նկարված է Թադեոս առաքյալը՝ նստած գիրքով. մեկ ձեռքին գավազան, մյուսին՝ ավետարան. Ս. սեղանի մի կողմում Գր. Լուսավորիչն է, նույնպես նստած և գավազան ու ավետարան բռնած։ Մի վեղարավոր նրա բոպիկ ոտքն է համբուրում, իսկ գահի ետնամասում կանգնած են երեք այլ հոգևորականներ. սեղանի առջև ծնրադիր աղոթում է կաթողիկոսական զգեստավորված և կարմիր վեղար ունեցող մի կղերական, որ հավանաբար Զաքարիա արքեպիսկոպոսն է, նրա մոտ կանգնած են երկու վեղարավորներ։ Նկարված է նաև լատինացի մի վարդապետ, որ երկրպագում է արքեպիսկոպոսին (սրա պատկերի վերին մասում գրված է «Պատկերս լատինացւոց վարդապետին է, որ արարեալ է գիրքս». ըստ այդմ կարող է Ֆրա Պոնցիուսի նկարը լինել)։ Բացի այդ, զանգակատնից ներքև մի խուց է նկարված, որի մեջ՝ մի վարդապետ, կից ունենալով այսպիսի մակագրություն. «վարդապետ մի տեսի ի մէջ պատուհանին, նստում է և կարդում է»[108]։

Ֆրա Պոնցիուսի ջանքերով թարգմանված է նաև Լյուրացու մեկնություններից մեկ ուրիշը՝ «Մեկնութիւն թղթոյն Պօղոսի, որ առ Եբրայեցիսն... Նիկոլայոսի Լիւրացւոյ»։ Այս աշխատության ընդարձակ խորագրի վերջում բառացի ասված է, որ թարգմանությունը կատարվել է «ի ձեռն վսեմախոհ վարդապետի Ֆրա Պօնցի, լատին լեզուէ ի հայս»[109]։

Պոնցիուսի աշխատասիրությամբ թարգմանված մյուս երկը ֆրանցիսկյանների մեծ գաղափարախոս Բոնավենտուրայի (1221—1274) գրած սուրբ Ֆրանցիսկոսի վարքն է, «Մեծի կարդինարին և անյաղթ վարդապետին սուրբ եկեղեցւոյն Հռոմա Բոնավենդուրէ վասն վարուց սրբոյն Ֆրանցիսկոսի»

---

106 Բառացի ասված է այսպես. «Զոր և զճշմարտութիւն այսմ հաւատոյս որդիացեալն նմա (Թադէոսի առաքելոյն) Լուսաւորիչն սուրբ Գրիգորիոս ընդարձակեալ տարածեաց, ընդ որս և զայն հաւատոյ ճշմարտութիւն և զամենայն բարեկարգութեան ուղղութիւն ի վերջին դարս և յետին ժամանակս տէրս մեր Զաքարիաս երկաջան վաստակօք նորոգեալ պայծառացոյց։ Եւ զի սուրբն Գրիգոր կոչի որդի սուրբ առաքելոյն Թադէոսի՝ վասն հետեւման նորին, նմանապէս և տէրս մեր Զաքարիաս առձայնի որդի սրբոյն Գրիգորի» (Երուսաղեմ, ձեռ. № 789, էջ 148)։

107 Նույն տեղում, էջ 149։

108 Տե՛ս Մատենադարան, ձեռ. № 10539, էջ 2 բ։

709 Մատենադարան, ձեռ. № 1412, էջ 2ա—75բ (Նույնն է նաև սրանից ընդօրինակված № 1411 ձեռագիրը)։

խորագրով։ Դրա հիշատակարանում կարդում ենք. «Թվ. ՉՂԸ (1339) թարգմանեցա[ւ] ձեռամբ Ապոնցի Ֆրա մնուրի»[110]։

Բացի մեկնողական երկերից, Ֆրա Պոնցիուսը թարգմանել է նաև ծիսական մատյաններ, որոնցից հայտնի է «Գիրք պատարագի» կոչվածը։ 1381 թ. Բոլոնիայում իրականացվել է այս թարգմանության մի ընդօրինակություն, որի հիշատակարանում կարևոր տվյալներ կան գրանցված թարգմանչի մասին. «Որ էր թարգմանած ի լաթին գրոյն ի հայկազեան բառս մեր, զոր բացատրեալ էր և մեկնեալ Ֆրա Պոնցիոսն՝ ի կարգէն սրբոյն Ֆրանցիսկոսի՝ իմաստուն վարդապետ և յոյժ հմուտ հայոց գրոյն»[111]։

Այսպիսով, Հովհաննես Ծործորեցու, Ֆրա Պոնցիուսի և նրանց գործընկերների ջանքերով Ծործորի բարձրագույն դպրոցը XIV դարի առաջին հիսնամյակում գիտա-մանկավարժական աշխատանքների կարևոր միջավայր դարձավ։ Հատկապես նշանակալից եղավ ուսումնա-գիտական այդ հաստատության դերը եվրոպական սքոլաստիկայի կարկառուն ներկայացուցիչների՝ Նիկողայոս Լյուրացու, Թովմա Աքվինացու, Բոնավենտուրայի և այլ հեղինակների կարևոր երկերի հայերեն թարգմանություններն իրականացնելու մարզում։

Դպրոցի մայրամուտն սկսվեց 1340-ական թվականներից. դոմինիկյան քարոզիչները, որ հաստատվել էին Քռնայում և ստեղծել իրենց բարձրագույն դպրոցը, շուտով կարողանում են իրենց շուրջ համախմբել կաթոլիկության հակված բոլոր հայ գործիչներին, որոնց թվում նաև ֆրանցիսկյանների ազդեցության տակ գտնվող ծործորեցիներին։ Ֆրա Պոնցիուսից հետո այդ դպրոցը գրեթե դադարում է գիտա-մանկավարժական մտքի կենտրոն լինելուց։ Մեծ հավանականությամբ Քռնա են տեղափոխվում Ծործորի դպրոցի վարդապետները՝ Իսրայել րաբունին և ուրիշներ, ինչպես և դպրոցի շուրջ համախմբված աշակերտների մեծ մասը։ Որոշ ժամանակ Արտազի շրջանի հայ կաթոլիկների մշակութային գործունեության կենտրոն է դառնում Մակու գյուղաքաղաքը՝ հայ իշխանների նստոցը՝ Սուրբ Աստվածածնի անվան իր մենաստանով։ Այստեղ՝ «ի մենաստանիս ի Մակու, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի» XIV դարի 80-ական թվականներին գործում է «իմաստուն հռետոր» կոչված Կարապետ րաբունապետը, օգնական ունենալով Մատթեոս անունով մի վարդապետի[112]։ Մեկ տասնամյակ հետո՝ 1392 թ., նույն Մակու գյուղաքաղաքում որպես րաբունապետ հիշատակվում է արդեն վերահիշյալ Մատթեոսը, իսկ 1406 թվականին՝ Մխիթարիչ րաբունապետը[113]։ Սրանց մանկավարժական և մատենագրական աշխատանքների մասին տեղեկությունները պակասում են։ Հայտնի է, որ նույն այս տարիներին Մակվի անառիկ բերդում ապահով պահելու համար Սսից բերում են 50 լիտր ձեռագիր մատյաններ, ըստ երևույթին դրանց մեջ կային նաև միարարական շարժման հետ առնչվող գրքեր ու դիվանական փաստաթղթեր[114]։

---

110 Մատենադարան, ձեռ. № 1736, էջ 141ա։

111 M. A. Oudenrijn, Նշվ. աշխ., էջ 256—257։

112 Սրանց հանձնարարությամբ 1383 թ. այստեղ իրեն «սպասաւոր բանի» կոչող Սարգիս ընդօրինակում է Բարթուղիմեոս Մարաղացու Քարոզգիրքը (տե՛ս Մատենադարան, ձեռ. № 2259, էջ 297բ, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 545)։

113 «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մաս Ա, Երևան, 1955, էջ 61։

114 «Հայապատում», Ա, էջ 123։

Մակվի հայ կաթոլիկների գիտա-մանկավարժական գործունեության մասին առկա տվյալներն ամբողջացնելու համար անհրաժեշտ է նշել, որ Ծործորի վանքը որպես վանական հաստատություն գոյություն է ունեցել ընդհուպ մինչև XVII դարի վերջերը։ Այլ առիթով նշել ենք արդեն, որ իրեն Ծործորեցի էր կոչում Գրիգոր անունով կաթոլիկ այն վարդապետը, որ 1670-ական թվականներին թարգմանություններ է կատարել, տաղեր ու կրոնական երգեր հորինել։ Ծործորի անվան վերջին այս հիշատակությամբ էլ ավարտվում են մեր գիտելիքները միջնադարյան Հայաստանի մշակութային այս հաստատության մասին։ Վանքի ավերակները այսօր էլ կանգուն են Մակվի շրջանի Բարոն գյուղից հարավ։

* * *

Արտազի հայկական իշխանության ու նրա մշակութային կենտրոնի պատմությանը նվիրված այս ակնարկին վերջակետ դնելուց առա՜ջ եզրափակիչ խոսքի կարիք է զգացվում։

Հայոց պատմության Արշակունյաց և մարզպանական ժամանակաշրջաններում կենտրոնական դիրք գրավող Արտազի գավառում, երկարատև ընդմիջումից հետո, XIII դարի կեսերին վերականգնվում է հայկական կիսանկախ իշխանությունը։ Արտազի հոգևոր և աշխարհիկ ավատատերերը, գլխավորությամբ Թադեոս առաքյալի նորաստեղծ եկեղեցական թեմի պարոնտեր-եպիսկոպոսների, կարողանում են ի շահ իրենց գերդաստանի օգտագործել մոնղոլների և Կիլիկյան հայկական թագավորության միջև կնքված դաշնագրով քրիստոնյա եկեղեցիների նկատմամբ մոնղոլների կողմից խոստացված բարյացակամ կեցվածքը։ Ընդառաջելով կիլիկյան հայ արքունիքի և կաթողիկոսարանի եվրոպական կողմնորոշմանն ու լատինամետ քաղաքականությանը, Արտազի հայ իշխողները դառնում են հայ ժողովրդի ազատագրական իղձերի իրականացման առումով վնասակար ու անհեռատես այդ քաղաքականության կամակատարները Մեծ Հայքում, և քայլ առ քայլ զիջումներ կատարելով, ի վերջո դավաճանում են ազգային ավանդություններին և ընդունում կաթոլիկ եկեղեցու դավանանքը։

Նրանց մշակութային կենտրոնը դարձած Ծործորի վանքում, Հովհաննես Ծործորեցի րաբունապետի ու նրա հետևորդների ջանքերով, դրվում են հայ ունիթորական գրականության հիմնաքարերը. լատիներենից հայերեն են թարգմանվում Նիկողայոս Լյուրացու, Թովմա Աքվինացու, Բոնավենտուրայի և այլ հեղինակների մի շարք երկեր, ստեղծվում են ինքնուրույն աշխատություններ՝ ի պաշտպանություն կաթոլիկ եկեղեցու դավանաբանական սկզբունքների։

Մեծ Հայքի աշխարհիկ ու հոգևոր տերերը, միասնական ճակատ ստեղծելով, անհաշտ պայքար են ծավալում ինչպես հայ ունիթորների, այնպես էլ Եվրոպայից Արևելք առաքվող կաթոլիկ քարոզիչների դեմ՝ ի դեմս ազգային հնամենի ավանդություններին կառչած հայոց եկեղեցու տեսնելով ազատագրական պայքարի դժվարին ճանապարհն ընտրած ժողովրդի համախմբմանը սատարող մի կազմակերպություն։

Արտազի հայ տերերի անհեռատես քաղաքականության դեմ ծավալված պայքարը, որ գլխավորում էին Սյունյաց հոգևոր ու աշխարհիկ առաջնորդները, տասնամյակներ է տևում։ Թադեոս առաքյալի մեծ թեմի առաջնորդական

*պաշտոնը բռնագրավվում է Արտազի կաթոլիկ տերերի գերդաստանից. նրանց հոգևոր իշխանությունը սահմանափակվում է միայն Մակվի շրջակայքով, տարածվելով միայն կաթոլիկ դավանանք ընդունած հայերի վրա։ Օտար բռնակալների դեմ մղված անհավասար մարտերում ջլատվում է նաև Արտազի հայ իշխանների ռազմական ուժը։ Ապավինելով Մակվի ամրություններին, նրանք հաջողությամբ վանում են շատ զորեղ թշնամիների ձեռնարկած գրոհներ (ի թիվս որոց նաև Լանկ-Թամուրի հրոսակներին), բայց ի վերջո, կորցնելով իրենց տիրույթի ծայրագավառները, նրանք ամփոփվում են Բերդադաշտի տարածության մեջ, և կորցնում իրենց քաղաքական իշխանության վերջին պատվար Մակվի բերդը՝ 1326 թվականին։*

*Արտազի շրջանի կաթոլիկ դարձած հայ բնակչությունը, կտրված ազգային ավանդություններից և հայրենի մշակույթի հետ ունեցած կապերից, արմատախիլ ծառի նման՝ թոշնում է ու չորանում։ Այդ համայնքի խղճուկ մնացորդները XVII դարի վերջերին մահմեդականություն են ընդունում, մի ավելորդ անգամ հաստատելով այն ճշմարտությունը, որ «ծառ արմատով է ծառ, տուն հիմամբ է տուն»։*

Л. С. ХАЧИКЯН

## АРТАЗСКОЕ АРМЯНСКОЕ КНЯЖЕСТВО И ЦОРЦОРСКАЯ ШКОЛА

### (Резюме)

В середине XIII в. в Артазской области Васпуракана восстанавливается монастырь апостола Фаддея (Тадеоса), создается новая армянская епархия, границы которой охватывают ряд районов Васпуракана и Персармении, а также столицу ильханства Тавриз. Армянскому феодальному роду, дававшему епископов для этой епархии, удается до 20-х годов XIV в. овладеть всем Артазом и, сосредоточив в своих руках как духовную, так и светскую власть над этой областью, играть видную роль в политической и культурной жизни Армении.

Автор статьи вводит в научный обиход новые материалы и на их основе показывает, что армянские епископы Артаза, в особенности архиепископ Закария (1298—1347 гг.), становятся в центральной Армении приверженцами политики сближения с латинской церковью, проводимой армянскими католикосами в Киликии и, шаг за шагом делая уступки католической церкви, в конечном итоге отступают от национальных традиций и становятся исполнителями воли латинских миссионеров, распространявших католичество в восточных странах.

В статье показано, что Артазское княжество просуществовало вплоть до 1426 года, когда Искандар Кара-коюнлу захватывает у армянских князей, уже принявших католичество, их крепость Маку.

Вторая часть статьи посвящена истории Цорцорского монастыря, ставшего культурным центром армянского Артазского княжества. Приведены данные, касающиеся научной деятельности Закария и Ованнеса

Цорцореци, и показана роль Цорцорской школы в переводе на армянский язык целого ряда произведений выдающихся представителей европейской схоластики — Фомы Аквинского, Николая Лиры, Бонавентуры и др.

L. S. KHATCHIKIAN

## LA PRINCIPAUTÉ ARMÉNIENNE D'ARTAZ ET L'ÉCOLE DE TSORTSOR

**(Résumé)**

Au milieu du XIII siècle le monastère de l'Apôtre Thaddée (Thadeos) de la région d'Artaz du Vaspourakan fut restauré et un nouvean diocèse fut créé, dont les frontières comprenaient un certain nombre de provinces du Vaspourakan et de l'Arménie Persane, ainsi que Tauris, la capitale de l'ilkhanie. Dans les années 20 du XIV siècle la maison féodale arménienne d'où sortaient les évêques de ce diocèse, réussit à s'emparer de tout l'Artaz, à concentrer dans ses mains le pouvoir spirituel et laïc et à jouer un rôle important dans la vie politique et culturelle de l'Arménie.

L'auteur de l'article fait connaître au monde scientifique des documents nouveaux et s'y appuie pour montrer que les évêques arméniens d'Artaz et surtout l'archevêque Zakharie (1298—1347) deviennent en Arménie centrale les partisans de la politique de rapprochement avec l'Eglise latine que menaient les catholicos arméniens de Cilicie et en faisant graduellement des concessions à l'Eglise latine en arrivent enfin à renoncer aux traditions nationales et deviennent les exécuteurs de la volonté des missionnaires latins qui propageaient le catholicisme dans les pays orientaux.

L'article montre que la principauté d'Artaz exista jusqu'en 1426, quand Iskandar Kara-Kouyolou conquit la forteresse de Makou des princes arméniens devenus déjà catholiques.

La seconde partie de l'article est consacrée à l'histoire du monastère de Tsortsor qui devint le centre culturel de la principauté arménienne d'Artaz. Des données concernant l'activité scientifique de Zakharie et de Hovhannes Tsortsoretsi sont citées qui montrent le rôle de l'école de Tsortsor dans la traduction en arménien des ouvrages de représentants éminents de la scholastique européenne. Thomas d'Aquin, Nicolas de Lyra, Bonaventure, etc.